ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

---

ՂԹ.

# ՄԱԿԱԲԱՅԵՑՒՈՑ Բ. ԳՐՔԻՆ ՀԱՅԵՐԷՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆԸ

## ՔՆՆԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1923

# ՄԱԿԱԲԱՅԵՑԻՈՑ Բ. ԳՐՔԻՆ ՀԱՅԵՐԷՆ

## ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆԸ

### ՔՆՆԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

---


ԳՐԵՑ

ԴԿՏ. Հ. ՍԱՀԱԿ ԿՈԳԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ





ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1923

# Ա Զ Դ

Ուսումնասիրութիւնս լոյս տեսաւ պարբերաբար 1921—1923 Հանդէսի մէջ: Արտատպութիւնս քանի մը փոփոխութիւններով ու յաւելուածներով միայն կը տարբերի Հանդէսի տուած յօդուածաշարքէն: Բառացանկի մէջ առած եմ միայն կարեւորները:

Գուցէ տարօրինակ երեւայ, որ ցատկելով Ա. գրքի վրայէն Բ. գիրքը ուսումնասիրութեան առարկայ ըրած եմ: Պատճառն է Ա. գրքին արդէն քննուած ըլլալը Դկտ. Հ. Աղեքսանդր Մատիկեանէ, որ իրմէ անկախ արգելքներով չկրցաւ ցայժմ հրատարակութեան յանձնել գործը:

ՀԵՂԻՆԱԿԸ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

—

# ՄԱԿԱԲԱՅԵՑՒՈՑ Բ. ԳՐՔԻՆ ՀԱՅԵՐԷՆ

## ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆԸ

*Քննական ուսումնասիրութիւն:*

Այն մշուշը, որով պաշարուած է Ս. Գրքի հայերէն թարգմանութեան թէ՛ հայկաբանութեան եւ թէ՛ Ս. Գրքի ընդհանուր ուսումնասիրութեան տեսակէտէ այնչափ հետաքրքրական պատմութիւնը, գոնէ մասամբ փարատելու համար, անհրաժեշտ է մէկ մի մատեան մանրակրկիտ հետազօտել: Մենախօսական հետազօտութիւններով միայն պիտի յաջողինք լոյս սփռել ժամանակին, թարգմանչին, բայց մանաւանդ Հայուն սկզբնագրին եւ անոր լեզուին վրայ. ինչպէս նաեւ Հայուն արժէքը՝ Ս. Գրքի ընդհանուր քննադատութեան եւ անոր նախնական բնագիրը վերակազմելու համար՝ այս ճամբով միայն — թէեւ անհարթ եւ տաժանելի — կարելի է ճշդել: Այս էր այն շարժառիթը, որ զմեզ մղեց մեր ուսումնասիրութեան նիւթ ընել Մակաբայեցւոց շատ կողմանէ ուշագրաւ Բ. գիրքը:

Աւելորդ ու մեր նիւթէն դուրս համարելով Յունարէն սկզբնագրին հայող խնդիրները, իսկոյն կ'անցնինք հայերէն թարգմանութեան:

## § 1. Աղբիւրներ:

Քննութեանս համար անհրաժեշտ էր ունենալ հնարաւոր կատարելութեամբ ձեռագրական ատաղձ, վասն զի թէեւ Մակաբայեցւոց Թարգմանութիւնը Ե. դարու արդիւնք է, բայց յաճախ դարերն եւ անհմուտ գրչագիրներն իրենց ազդեցութիւնն զգալի ըրած են եւ մեր վրայ պարտք կը դնեն նախնական ոսկին զտելու յետնադարեան կղկղանքէ: Դժբախտաբար մեր տրամադրութեան տակ եղող ձեռագիրները, որոնցմով պիտի ջանայինք բնագիրը վերակազմել յառաջ քան յոյն սկզբնագրի հետ ունեցած աղերսի վրայ դատաստան կտրելը, բաղձալի ամբողջութիւն չեն կազմեր: Ստիպուած ենք գոհ ըլլալ հետեւեալ ձեռագիրներով, որոնցմէ երկուքը տպագիր ունեցած ենք մեր առջեւ: Զօհրապի հրատարակութիւնը (Վենետիկ 1805), որ եղած է 1319ին գրուած Կիլիկեան ձեռագրի մը վրայէն (անդ, Նախաբանութիւն, էջ 5) եւ հայերէն ընկալեալ բնագիրը (textus receptus) կը կազմէ (= Z): Զօհրապի միջոցաւ եւ համեմատութեամբ կը ծանօթանանք նաեւ Վենետկեան ինն ձեռագիրներու, եւ կը նշանակենք զանոնք Զօհրապեան ոճով՝ Zn = ոմանք, այլք: — Տպագրուած երկրորդ ձեռագիրը կը գտնեմ Ոսկանի քով (տպ. Ամստերդամ, 1666): Գիտեմ որ վերջինս լաւ անուն չի վայելեր եւ հայ աւանդեալ բնագրին մէջ ըստ վուլգատայի փոփոխութիւններ մուծած ըլլալու

կասկածին ենթակայ է։ Սակայն հիմնուած անձնական քննութիւններուս եւ Կարապետ վարդապետի վկայութեան վրայ՝ պէտք է ազատ արձակել զինքն այս կասկածէն։ Ոսկանի տպագրած ձեռագիրը կը պատկանի Հեթմոյ, գրուած 1295ին, եւ կը գտնուի Էջմիածնի մատենադարանը (Կար. Ցուց., թ. 157), որ կը բովանդակէ նաեւ Ոսկանի դիտողութիւնները՝ մեծաւ մասամբ ուղղագրական եւ լուսանցագիր (Կարապետ վարդապետ, Արարատ 1902, էջ 1069—1071)։ Մասնաւորելով խօսքս Մակաբայեցւոց վրայ՝ ոչ մէկ կէտի մէջ, ուր Հայը վուլգատայէ կը շեղի, Ոսկան վերջնոյս կը համաձայնի։ Ըստ այսմ Ոսկան կը նկատեմ ներկայացուցիչ Հեթմոյ ձեռագրին (=o)։ — Երրորդ Ձեռագիր մ'ունի մեր Մատենադարանը (Տաշեան, Ցուցակ, թ. 71 = b) ԺԳ. դարէն, եւ չորրորդ մը Վիեննայի Ազգային Գրադարանը (թ. 11)՝ գրուած 1608ին (=h)։ Zobh միասին կ'ընթանան յաճախ, Կիլիկեան շրջանին կը պատկանին, եւ առանձին խումբ մը կը կացուցանեն՝ հակառակ մեր Մատենադարանի ուրիշ մէկ ձեռագրին (Տաշեան, Ցուցակ, թ. 55), որ թէեւ մերձաւորապէս ԺԳ. դարէն է, բայց Հայաստանի մէջ գրուած եւ ուրիշ խումբի մը ներկայացուցիչն է (=a)։ Բացի այս ձեռագիրներէն՝ նկատի առած եմ նաեւ Երուսաղէմի 15 ձեռագիրներու համեմատութիւնը՝ Սարգիս Մալեանէ, որուն ինքնագիրն ստացուածք է մեր

Մատենադարանին (Տաշեան, Ցուցակ, Թ. 244)։ կը նշանակեմ՝ J եւ առընթեր՝ համընթաց ձեռագիրներուն թիւը։

Համեմատութիւններու հիմ առած եմ հայ եւ յոյն ընկալեալ բնագիրները, առաջինն ըստ Զօհրապի, իսկ երկրորդն ըստ Նեստլէի, (Nestle, V. T. Graece, Tom. II, Leipzig 1887)։ Յունարէն ձեռագրական տարբերութեանց համար դիմած եմ Հոլմըսի աշխարհահռչակ գործին (Vetus Testamentum, ed. B. Holmes et J. Parsans, Tom. V. Oxonii 1827), որուն յունարէն ձեռագիրներուն արաբական թուանշաններն անփոփոխ կը պահեմ, միայն Cod. Al. = A եւ Cod. Venet. = V, հետեւելով Սուիտի (Swete Henry Barclay, The Old Testament in Greek, vol. III. Cambridge 1905) որուն համարաւորումն ալ նախընտրած եմ՝ շեղելով Զօհրապէ։

Ասորերէն բնագրին համեմատութեան համար նախընտրած եմ P. de Lagardeի քննական հրատարակութիւնը. Libri Veteris Testamenti apocryphi, Syriace, Lipsiae, 1861.

## § 2. Հայերէն Թարգմանութեան ժամանակը։

Կորեան սա տեղեկութիւնը, թէ հայերէն թարգմանութիւնն երկու շրջանէ անցած է (Կորիւն, Վենետիկ 1894, էջք 21—22 եւ 33) կրնայ մեր ելակէտը կազմել ժամանակի խնդրոյն

մէջ։ Առաջին շրջանը կը բացուի գրի գիւտէն անմիջապէս վերջ, ուրեմն 403—406, եւ կ՚ընծայէ Ս. Գրքի «զյանկարծագիւտ զփութանակի» թարգմանութիւնը (Կոր. 34)։ Մակաբայեցւոց գրքերն ա՛յս թարգմանութեան մասն էին։ Ճշտական պատասխանը Կորեան մէջ բաւական մեկին խօսքերով կը գտնենք։ Թարգմանութեան բովանդակութիւնը Կորիւն (էջ 22) հետեւեալ այլաբանութեան մէջ կը խտացնէ. «յորում (ժամանակի) անկարծ ուրեմն օրէնսուսոյց Մովսէս՝ մարգարէական դասուն, եւ յառաջադէմն Պաւղոս՝ բովանդակ առաքելական գնդովն, հանդերձ աշխարհակեցոյց աւետարանաւն Քրիստոսի... հայաբարբառք հայերէնախօսք գտան»։ «Ուրեմն հին կտակարանէն թարգմանուած են Մովսէս եւ Մարգարէք (հմմտ. Տէր-Մովսէսեան, История перевода Библіи на арм. языкъ, С.-Петербургъ 1902, էջ 8)։ Թէեւ այս բացատրութիւնը տարածատակ է, բայց կարելի չէ երբեք Մակաբայեցւոց գրքերը «Մովսիսի եւ Մարգարէից» մէջ զետեղել եւ պէտք է Կորեան այս խօսքին վրայ հիմնուելով արդէն զանոնք նախնական թարգմանութենէն արտաքսուած հռչակել։

Նոյն եզրակացութեան կը յանգինք, եթէ նկատի առնունք այն տեսակէտը, որմէ առաջնորդուած են Սահակ եւ Մաշտոց հապճեպով թարգմանուելիք գրքերու ընտրութեան մէջ։ Արդ թէ՛ գրի գիւտին եւ թէ՛ Ս. Գրքի թարգ-

մանութեան նպատակն էր հայացնել եկեղեցական լեզու, ծէս, արարողութիւն (Փարպեցի, Պատմութիւն Հայոց, տպ. Վենետիկ 1891, էջ 140)։ Ուրեմն հարկ էր “փութանակի” թարգմանութեամբ անուս ժողովրդեան մայրենի լեզուաւ մատչելի ընել այն գրքերը, որոնք եկեղեցւոյ մէջ ամենէն աւելի կը կարդացուէին։ Այս պարագան կը մատնանշէ նաեւ Կորիւն, էջ 33. “իսկ երանելւոյն Սահակայ զեկեղեցական գրոց գումարութիւնն՝ կանխաւ յունական բարբառոյն ի հայերէն դարձուցեալ...” Հ. Գ. Զարբանէլեան այս “եկեղեցական գրոց” մէջ կը տեսնէ իրաւամբ “զայն մասն Հին եւ Նոր կտակարանաց, զորս յեկեղեցւոյ պաշտամունսն առնուին ի կիր մերքն” (ԲԶՄ. 1851, էջ 231). Մինչ Կորիւն ամբողջական Ս. Գիրքը կը կոչէ “աստուածագիր օրէնք” (էջ 10, Տէր-Մովսէսեան, էջ 225)։ Մակաբայեցւոց գրքերն այս իմաստով “եկեղեցական” կոչել կարելի չէ, քանի որ Ա. գիրքն ամենեւին չէ կարդացուած եկեղեցւոյ մէջ, իսկ Բ. գրքէն միայն 6—7 գլուխները կը գտնենք քանի մը ճաշոցներու մէջ Մակաբայեցւոց տօնին օրը (տ. Յովհ. քհն. Մկրեան, Ս. Գրոց ընթերցուածներ Հայ Եկեղեցւոյ մէջ. “Լոյս”, 1905)։

Մինչ այսպէս Կորեան խօսքերն զմեզ Ս. Գրոց թարգմանութեան Ա. շրջանէն կը հեռացնեն, Մակաբայեցւոց գրքերուն ներքին որպիսութիւնները կը ստիպեն զմեզ Բ. շրջանին

(432) մէջ որոնել անոնց թարգմանութեան ժամանակը: Բնագրական յետագայ քննութիւնները պիտի մատնեն մեզի հետքերը Մակաբայեցւոց գրքերուն սկզբնագրին, եւ անոր մէջ պիտի նշմարենք Կորեան յիշած "ճշմարիտ օրինակ„ները (էջ 34): Արդ Բ. շրջանին մէջ հայ թարգմանիչները՝ առաջնորդութեամբ Ս. Սահակայ (Կորիւն, էջ 33) իրենց ոյժերը կեդրոնացուցին "ճշմարիտ օրինակօք բերելովք„ ի Կ. Պոլսոյ հին թարգմանութիւնները "հաստատելու„, ճշդելու, սրբագրելու եւ պակսածները լրացնելու վրայ (Տէր-Մովսէսեան, էջ 14): Եւ որովհետեւ այս տեղի կ՚ունենայ 432է վերջ եւ Մակաբայեցւոց գրքերը տակաւին չէին թարգմանուած, հարկ է անոնց թարգմանութիւնն այս շրջանին վերագրել: Ներքին այս առաջին ապացոյցն առանձինն որոշիչ չէ, քանի որ հին օրինակներէ եղած թարգմանութեան մը վրայ ալ նոր "ճշմարիտ„ օրինակներու հետքերը կրնային դրոշմուիլ սրբագրուելէ յետոյ: Բայց երբ իբրեւ երկրորդ ներքին ապացոյց աւելցնեմ, որ Մակաբայեցւոց գրքերը սրբագիր ձեռք մը չեն տեսած երբեք, այլ ինչպէս որ առաջին ու բուն թարգմանչին քովէն ելած են, այնպէս ալ — իրենց բոլոր թերութիւններով — մեզի հասած են, այն ատեն մեր առաջին ապացոյցը վճռական բնոյթ կը զգենու:

Եթէ այսօր Ս. Գրքի հայերէն թարգմանութեամբ կը պարծինք եւ Եւրոպացի գիտնականներ իրենց հիացումը կը նուիրեն անոր, այս՝

մեծաւ մասամբ արդիւնքն է սա հանգամանքին, որ գրի գիւտէն վերջ թարգմանուած գրքերը յետոյ խնամեալ վերաքննութեան ենթարկուեցան գլխաւոր թարգմանիչներու կողմէ։ Մակաբայեցւոց գրքերն այս բախտին չարժանացան, որովհետեւ գուցէ դեռ նոր սկսած թարգմանութիւնը չաւարտած կամ սրբագրութեան կարգն անոնց չհասած՝ սրբագրիչ յանձնախումբին գլուխը՝ Ս. Սահակ եւ քիչ յետոյ նաեւ Մաշտոց աշխարհքէ կը բաժնուէին։

Վերջին կէտը լոկ ենթադրութիւն է եւ ազատ նիւթ վիճաբանութեան, իսկ թէ Մակաբայեցւոց գրքերն թարգմանուած են առանց սրբագրուելու — վասն զի այս է մեզի համար էականը — ասոր ունիմ անժխտելի փաստեր։ Նախ՝ այն բազմաթիւ թանձր սխալները, զորոնք յետոյ միառմի պիտի քննենք, կը մերժեն նոյն իսկ վերիվերոյ սրբագրութեան մը կարելիութիւնը։ Երկրորդ՝ թարգմանչին կրկին թարգմանութիւնները, անձնական սրբագրութիւնները, զորոնք նա լուսանցքին վրայ գուցէ նշանակած էր եւ որոնք յետոյ գրչագիրներէ բուն մարմնոյն մէջ հիւսուած են, յայտյանդիման կը ցուցնեն, թէ Մակաբայեցւոց գրքերն իրենց սկզբնական կերպարանքը, զոր իրենց թարգմանչին կը պարտէին, անփոփոխ պահած են։ Այս նկարագրական երեւոյթն այնու ծագած է, որ հայ թարգմանիչը չէ կրցած յաճախ յունարէն բառին զանազան իմաստներէն յարմարագոյնն ընտրել եւ զամէնքը միանգամայն

յիշած է, կամ առաջին Թարգմանութենէն դժգոհ՝ երկրորդ մը կցած է իբրեւ աւելի ուղիղ եւ համաձայն սկզբնագրին։ Յիշենք այս եզական տեղերը։

2 Մկ. Ա. 2. «Յորժամ տեսանիցեն զկուռս քանդակեալս, պատկերս կերպարանեալս։» Թարգմանչին զարդասիրութեան ծնունդ վերադիր ածականներն անտեսելով, աչքի կը զարնէ հոս շաղկապի պակասութիւնը. միայն ա անիմաստ «կամ»ով մը կը զօդէ երկու գոյականները, որոնցմէ մին հաւանաբար լուսանցքէն մուտ գտած է. Յոյնն ունի ἀγάλματα, որ ըստ տեղւոյն երկու իմաստներն ալ կու տայ։ Մեր Թարգմանիչն անապա՛հով՝ կը դնէ երկուքն ալ, մինչ Եսայեայ Թարգմանիչը, ԺԹ, Ի, 9 պարզ «պատկեր»ով կը շատանայ։

Բ. 14. «Սոյնպէս եւ Յուդա զամենայն կործանեալսն ի պատերազմաց անտի եւ զցրուեալսն ի մի վայր ժողովեաց»։ Հոս խնդիր կ՚ըլլայ գրքերու մասին, որոնք թէեւ պատերազմներու հետեւութեամբ ցիրուցան կ՚ըլլան, բայց ո՛չ կործանման առարկայ։ Անշուշտ ասոր անդրադառնալով հայ Թարգմանիչն անյարմար «կործանեալսն»ը կ՚ընէ «զցրուեալսն» համեմատ Յոյնին՝ «τὰ διαπεπτωκότα — որուն կործանել» իմաստն ալ շատ հազուագիւտ է — իսկ անխորհուրդ գրչագիրը «եւ»ով կը հաշտեցնէ զանոնք։

Բ. 22. «Ամենայն քաղցրութեամբ, հեզութեամբ, խաղաղութեամբ», յուն.

ἐπιεχεία բառին զանազան իմաստները կը շարէ, մինչ Ժ, 4 արդէն կը սորվի “հեզութեամբ„ նախընտրել եւ անով գոհանալ, ինչպէս Իմ. Բ, 19, ԺԲ, 18, Բար. Բ, 27, Դան. Գ, 42։

Բ. 24. “Որ կամին մխել ի բանս մատենագրին, ի դոյն թաթաւել„։ Պարզ է որ վերջին անօսրագիր բառերը լուսանցքէն ներս առնուած են բոլորովին անյաջող կերպով, քանի որ կը մնան կղզիացեալ, անկապ։ Որչափ սիրուն է “մխել„, այնչափ ստրկական է “ի դոյն թաթաւել„ = εἰσχύχλειθαι, բայց յաւելուած ոսկեդարու թարգմանչին, որ իր ստրկական թարգմանութիւններուն մէջ իսկ հայերէն բառերուն բռնազբօսիկ մանիկներ չի լծեր. “Ներթաթաւել„ պիտի ըսէր յետնադարեան մը։

Բ. 24. “Վասն թանձրութեան հիւթոյ, խորութեան բանիցդ„ = յուն. διὰ τὸ πλῆθος τῆς ὕλης. Հայը նախ նիւթական իմաստով առած է ὕλη, բայց իսկոյն նկատելով որ իմացական իմաստով կիրարկուած է հոս, կը յարէ՝ “բան„, երկու անգամ ալ πλῆθοςի տեղ իր ընտրած բառերուն բնութեան յարմար վերացական գոյականներ յերիւրելով, մինչ հեղինակը “պատմական նիւթերու բազմութիւնը„ կ՚ակնարկէ։ Հայկ. Բառ. ի (Բ. 101) ընթերցուածը “խոշորութիւն„, զոր Ջօհրապ չի յիշատակեր, բոլորովին անճահ է։

Գ. 19. “Արգելականք կուսանաց ի կուսաստանաց„. „παρθενῶν“ ձեւն է որ

հոս թարգմանչին շփոթութիւն պատճառած ու կրկին թարգմանութիւն առթած է. παρθενῶν = կոյսերու, παρθενόν = կուսաստան — Հայը իր շփոթութեան մէջ ելք մը գտած է երկուքն իրարու միացնելով.

գ. 23. «Զ յ ա յ տ ն ու թ ե ա ն վ ճ ի ռ ն գ տ ա ն է ր»: Անցողակի դիտենք որ «գտանէր» դիւրադէպ գրչասխալ մըն է փոխանակ «կատարէր» = ἐπιτέλει (հմմտ. նաեւ Ե. եպ. Դուրեան, Սրբագրութիւններ Մակ. Ա. եւ Բ. գիրքերու թարգմանութեան վրայ. Արեւելեան Մամուլ, Իզմիր, 1908, էջ 249): Իսկ զ յ ա յ տ ն ու թ ե ա ն վ ճ ի ռ ն = «յայտնի վճիռը» կրկին թարգմանութիւն է «τὸ διεγνωσμένον»ի, զոր նախ իբրեւ γνώστος ի (դան. գ, 18 յայտնի) հոմանիշ կարծած եւ ապա սրբագրած է ուղիղ «վճիռ»:

գ. 28. «... Զչափ առեալ, զի յայտնապէս զաւրութիւնքն Աստուծոյ ի վերայ հասեալ»: Յոյնը կը դիւրացնէ աղաւաղեալ նախադասութեանս սրբագրութիւնը. φανερῶς τὴν τοῦ θεοῦ δυναστείαν ἐπεγνώκοτες = զչափ առեալ յայտնապէս զօրութեանն Աստուծոյ ի վ ե ր ա յ հ ա ս ե ա լ: Անօրատիպ բառերու դիրքը կը ցուցնէ, որ լուսանցագիր կրկին թարգմանութիւն մըն էր, որով հայ թարգմանիչն ուզած է աւելի սերտիւ կապուիլ յոյն բնագրին ἐπιγιγνώσκω բային:

գ. 31. «Ոմանք յ ե կ ե լ ո ց անտի բ ա ր ե կ ի ր ք»: Յուն. „τινες τῶν... συνήθων“ նախ

սխալմամբ կը կարդայ συνέλθων = յեկելոց, բայց ապա իսկոյն կը սրբագրէ, իմաստը քիչ մը փոխելով։

Դ. 13. “Եւ այնպէս եռանդն իմնածէին, սկիզբն արարեալ = ἦν δ᾽οὕτως ἀκμή τις... καὶ πρόσβασις„. Երկին թարգմանութիւն եւ ոչ մին յաջող։ Ինչպէս Գռիմ (Grimm C. L. W.: Kurzgefasstes Handbuch zu den Apokryphen des Alten Testamentes, IV. Leipzig 1853, 413) ուղիղ կը դիտէ, առաջին թարգմանութեամբ Հայն ուզած է ἀκμή եւ πρόσβασις մէկ գաղափարի վերածել, իսկ երկրորդին մէջ ἀκμήի “կատարծայր„ նշանակութենէն առաջնորդուած է “սկիզբն առնեմ„ ասութեան։

Դ. 40. “Սկսաւ ձեռն ի գործ առնել եւ սկիզբն առնել գործոցն չարութեան = κατήρξατο χειρῶν ἀδίκων„։ Երկրորդ թարգմանութիւնն աւելի ընտիր է եւ ուղիղ, միայն փոխ. “գործոցն„ կարդալու է “գործովք„, մինչդեռ առաջնոյն մէջ χειρῶνի նիւթական իմաստը թելադրած է “ձեռն ի գործ առնեմ„ հոս անյարմար ու աւելորդ ասութիւնը։

Ե. 8. “Պղծեալ եւ գարշեցեալ„. Յուն. βδελυσσόμενος երկու իմաստն ալ կու տայ, 1 Մկ. Ա, 48 կը թարգմանէ պարզապէս “պղծել„, զայս կը գործածէ նաեւ հոս, բայց անդրադառնալով անյարմարութեան կը սրբագրէ “գարշեցեալ„։

Ը. 27. “Խոստովան լինէին եւ փառաւորէին զՏէր„. Յուն. ἐξομολογέομαι այս կրկին նշանակութիւնները կը բովանդակէ, եւ այն 1. խոստովանիլ. 2. փառաւորել (Grimm, անդ, էջ 142)։ Կ'ենթադրենք որ Հայը առաջին բառին անտեղի ըլլալը նկատելով աւելցուցած է երկրորդը։

Թ. 16. “Զկարգս մտից պիտոյ պատարագաց յարքունուստ լինել„. Զ կը կարդայ. “Զկարգս պիտոյից մտից պատարագաց„։ Բառերու այս անյարիր կուտակումն արդիւնք է յուն. σύνταξις-ի եռապատիկ նշանակութեան. յարմարագոյնն չէ կրցած որոշել Հայը։

ԺԱ. 1. “Ծանրացեալ տրտմէր„։ Հայերէնի յատուկ ոճ մը չէ սա, այլ յուն. βαρέως φέρων-ի թանձրացեալ ու վերացական առումներուն զուգաւորումը, որուն մէջ “տրտմէր„-ը սրբագրի դեր կը կատարէ։

ԺԱ. 3. “Եւ զտաճարն սրբութեան դրամաժողով ի վարձու կացուցանել“։ Քար գայթագղութեան եղած է յուն. բարդ բառը ἀργυρολόγητον, զոր հայացուցած է տեղւոյս անյարմար “դրամաժողով„ով եւ յարակից յաջող սրբագրութեամբ մը։

ԺԲ. 24. “Եւ ինքն Տիմոթէոս դիպէր առաջի գնդին Դովսիթեայ եւ Սոսիպատրեայ։ Արդ անկեալ նոցա ի ձեռն„։ Յուն. ἐμπεσὼν բառն է, զոր սխալմամբ “դիպէր առաջի„ կը թարգմանէ, եւ ապա անյայտնի կը կարկատէ ճիշդ նշանակութիւնը։

· Ժգ. 15. "Եւ առնոյր զԱրիստիդէս (+ եւ a) ընտիր ընտիր երիտասարդ (+ -ացք a) վառելովք„: Յուն. ἀρίστων իբր յատուկ անուն թարգմանած, բայց իսկոյն ուղղած է "ընտիր ընտիր„: Ուրեմն հարկ չկայ այլ եւս Դուրեանի հետ փոխ. Արիստիդէսի ածական մը առաջարկելու (Անդ. 251), այլ պէտք է զայն բնագրէն դուրս վտարել:

Ժդ. 28. "Թէ ստութիւն ինչ մտցէ ի դաշինս անդր եւ ուխտքն եղիցին տարապարտուց:„ Անօսրատիպ վերջին բառերն ուղիղ սրբագրութիւն են, վասն զի ἀθέτεω ոչ թէ դաշինքի մէջ ստութիւն մտցնել՝ այլ դաշնելոյծ ըլլալ կը նշանակէ հոս:

Ժե. 17. "Հաստատուն զոտս ի բոյս հարկանել, յենուլ ի համբերութիւն, պնդել ի պատերազմի:„ Յայտնի է, որ γενναίως ἐμφερέσθαι ի զանազան պատիպատ մեկնութիւններն են, որոնցմէ վերջինն ամենայաջողն է: Բոլորովին անիմաստ եւ ինքնաստեղծ է առաջին նախադասութիւնը, որուն "բոյս„ ընթերցուածը գրչասխալ է անշուշտ՝ փոխ. "բոց„ի:

Ժե. 31. "Միջնաբերդին զԱկառանց:„ Յուն. ἄκρας. Նախ իբր հասարակ եւ ապա իբր յատուկ անուն համարած է:

Վերջ տանք առ այժմ այս ցանկին, որ կարծեմ կը բաւէ թարգմանութեանս սրբագրուած չըլլալուն ենթադրութիւնն արդարացնելու:

Ժամանակի մասին սա պիտի աւելցնեմ, որ մինչ իբր terminus a quo 432 կը հետեւի

մեր ըսածներէն, իբր terminus ad quem պէտք է նշանակել առ առաւելն՝ 450։ Եղիշէ կը պատմէ, թէ "Վարդան ի ձեռն առեալ զքաջ նկարագիրն Մակաբայեցւոց, ընթեռնոյր ի լսելիս ամենեցուն„ (Եղիշէ, Գործք, Վենետիկ 1859, էջ 81), խնդիր չկայ՝ Հայերէն թարգմանութեամբ. Հայ ամբողջ բանակին յունագիտութիւնն աւելի քան տարակուսական է։ Այսպէս ուրեմն 18 տարուան ժամանակաշրջանի մը մէջ կը ծփանք. զայն աւելի սեղմելու կռուան կը պակսի։ Թէեւ Բուզանդ իւր Պատմութեան մէջ սերտ աղերս կը ցուցնէ Մակաբայեցւոց գրքերուն հետ, անոնց հայերէն թարգմանութիւնը կը ճանչնայ ու կը գործածէ, բայց Բուզանդի գրութեան ժամանակն անստոյգ ըլլալով, զայն չէ կարելի հաշուի առնուլ ժամանակի խնդրոյն մէջ՝ իբր եզր։

## § 3. *Թարգմանիչը։*

Բ. Կիւլեսէրեան, Եղիշէ, Վիեննա 1907, էջ 133—134, ծն. 2. անցողակի կը դիտէ, որ "Մակաբէացւոց թարգմանիչը միակ հոգի մը չէ„։ Իբրեւ ապացոյց այս վճռոյն ճշդութեան կոչ կ'ըլլայ Գաղտնիքի հեղինակութեան։ Սարգսեան էջ 140 կ'ըսէ. "Տոհմային մատենագիրք մեր, Ագաթանգեղեայ յոյն օրինակի եւ Մակաբէացւոց գրոց թարգմանիչներէն սկսեալ„։ Յայտնի է որ խօսքս թիւրիմացութեան զոհ եղած է, վասն զի անօսրատիպ յօգնակի ձեւը

կը յարաբերի ո՛չ լոկ “Մակաբէացւոց գրոց„, այլ նաեւ “Ագաթանգեղեայ յոյն օրինակին„, որոնք կրնան, այո՛, “միակ հոգւոյ„ մը գործ ըլլալ: Իսկ թէ Մակաբայեցիք միակ ձեռքի մը արդիւնք են, առ այս երկու գրքերուն վերիվերոյ համեմատութիւնն իսկ՝ անվկանդ փաստուժով կ'օժտուի: Երկու գրքերուն մէջ ալ միեւնոյն ձայն է, որուն յունագիտութիւնը տկար է, եւ այս պատճառաւ շատ մը բառեր չի հասկնար, կը շփոթէ, սխալ կը կարդայ (հմմտ. 1 Մկ. Բ, 18. Դ, 61. Ե, 26. Զ, 35. Թ, 23. Ժ, 54. ԺԱ, 68. ԺԲ, 39. ԺԴ, 34. Բ. գրքէն յետոյ), որ աւելի հայերէնի ոյժ կու տայ, հաւատարմութիւնը կը զոհէ զարդասիրութեան, իր անձնական գաղափարները կը ներհիւսէ, դէպքերը կը մեծցնէ, այլ եւ այլ դրուագներ մտացածին մանրամասնութիւններով կ'եղանակաւորէ (հմմտ. 1 Մկ. Ա, 19. Բ, 37. Գ, 43. Դ, 36. Ե, 28. Զ, 38. Է, 35. Ը, 20. Ժ, 52. Բ. գրքէն՝ յետոյ), որ աշխարհագրական անունները բնակիչներու անունով կը հայացնէ (հմմտ. 1 Մկ. Դ, 35. Ժ, 1, 6, 7 եւն, Բ. գրքէն՝ յետոյ), մեծ նախասիրութիւն ունի ներմուծելու “սկսաւ„ (հմմտ. 1 Մկ. Ա, 31. Բ, 7, 17, 33, 34 եւն, Բ. գրքէն՝ յետոյ), “վաղվաղակի„ (հմմտ. 1 Մկ. Ը, 25, 27. Թ, 60, Բ. գրքէն՝ յետոյ), “ամենեքին, միանգամայն (հմմտ. 1 Մկ. Ա, 32, 54. Գ, 41. Ե, 10 եւն, Բ. գրքէն՝ յետոյ) եւ որ վերջապէս բայերու, ածականներու, մակբայներու պէսպիսութեամբ եւ տարապարտ աւե-

լադրութեամբ կը սիգայ (հմմտ. 1 Մկ. Գ, 2. Դ, 35. Ե, 34. Զ, 8 Է, 34. Թ, 23, Բ. գրքէն՝ յետոյ)։ Միակ տարբերութիւնը, որ երկու գրքերուն միջեւ ակնյայտնի կը նշմարուի, է՝ Բ. գրքին սխալներուն ահագին ցանկը, որ կարծես Ա. գրքին թարգմանչին — որուն սխալներն անհամեմատ նուազ են — նախատինք կը բերէ։ Այս տարբերութիւնը սակայն միակ թարգմանչի մը քով ալ մեկնելի է։ Ա. գրքին յունարէնը սկզբնագիր չէ, այլ թարգմանութիւն Եբրայեցերէնէ, եւ այս պատճառաւ վերջնոյս նման պարզ եւ դիւրաւ հասկանալի լեզու։ Ընդհակառակն Բ. գիրքը յունարէն գրուած է, հեղինակը յաճախ դասական կտորներ կ՚արտադրէ, յունաբանութիւններով, նորակազմ բարդութիւններով, հազուադէպ ասութիւններով, խրթին պարբերութիւններով, եւ ընդհանրապէս սեթեւեթեալ խրթին ոճով կը զուարճանայ։ Ի՞նչ զարմանք ուրեմն, եթէ Ա. գրքին թարգմանիչը՝ Բ. գրքին անցնելով ինք զինքը դերբուկ գետնի վրայ գտնէր եւ յաճախ գայթէր։

Ըստ այսմ Մակաբայեցւոց գրքերուն թարգմանչին միութիւնն ու նոյնութիւնը տարակոյսի տեղի չի տար. իսկ թէ Ե. դարու ծանօթ թարգմանիչներէն (ցանկը տ. Abeghian, Vorfragen zur Entstehungsgeschichte der altarmenischen Bibelübersetzung, Marburg i. H. 1906, էջ 25—34) ո՞րը պէտք է յականէ յանուանէ մատնանիշ ընել իբր թարգմանիչ Մա-

կաբայեցւոց, այդ կը մնայ վիճելի եւ դժուարա-
լոյծ հարց։

Զարբհանալեան կը վկայէ, որ զՄակաբայեցիս «Նորուն անուն Ս. Եղիշայի շարադրած բազումք ի հմտից կարծեցին» (ԲԶՄ. 1851, էջ 234)։ Անունները կը լռէ դժբախտաբար այն հմուտներուն, որոնց հմտութիւնը հայերէնի մասին ընդհանրապէս ու Մակաբայեցւոց եւ Եղիշէի լեզուներուն մասին մասնաւորաբար գթաշարժ սնանկութեան մը ապացոյցը կու տայ իրենց այս աւելի քան անյաջող եւ Եղիշէի ու Մակաբայեցւոց միջեւ եղած վիհը լեցնելու անկարող վճռով։ Բաց աստի Եղիշէի քննադատը ժամանակագրօրէն արդէն կը հերքէ «հմուտներուն» կարծիքը, նկատելով որ 451ին հրապարակաւ կարդացուած գիրք մը Զ. դարու ա. քառորդին հեղինակող Եղիշէի գրչէն չէր կրնար հոսած ըլլալ (Կիւլէսէրեան, անդ)։

Այտընեան իւր Քննական քերականութեան մէջ (էջ 54, ծն. 9) ըսած էր Կիւրեան, Ագաթանգեղոսի եւ Մակաբայեցւոց մասին թէ «կարծես մէկ գրչէ ելած են»։ Նորայր Բիւզանդացի իւր տաժանելի աշխատասիրութեամբ կը ջանայ ապացուցանել, թէ այն գրիչը Կորեան կը պատկանի եւ զԿորիւն կը հռչակէ Թարգմանիչ այն երեք գրութիւններուն եւ Եւթաղի։ Այս տեսութեան հիմերն են. 1. «Կիրարկութիւն բառից եւ ասացուածոց՝ որ դուն ուրեք կը պատահին յայլ գրութիւնս Ոսկեդա-

րու, բայց Կորիւն գոգցես թէ իւրացուցած զայնոսին՝ թէ յաճախ կը գործածէ եւ թէ պէսպէս առմամբ»։ 2. Ասացուածք եւ դարձուածք՝ որոց կէսն եւեթ կամ բառքն առանձին առանձին կը գտնուին առ այն մատենագիրս Ոսկեդարու» (Կորիւն վրդ. էջ Ը). 3. «Բառք, ածացմունք, բարդութիւնք եւ ասացուածք որ Կորեան սեպհական են եւ այլ մատենագրաց Ոսկեդարու բոլորովին անծանօթ» (էջ Ժ). 4. «Վարք Մաշտոցի, Ագաթանգեղոս, Բիւզանդ, Մակաբայեցիք, Եւթաղ զիրար կը լուսաւորեն ու կ'ուղղեն» (էջ ԺԱ)։

Ագաթանգեղոս, Բիւզանդ, Եւթաղ մեր խնդրէն դուրս են, իսկ Մակաբայեցիք Կորեան թարգմանութիւն չենք համարիր, վասն զի Նորայրեան չորս կէտերը՝ գրական աշխատութեան մը հեղինակը որոշելու աստիճան իրականացած չենք գտներ Մակաբայեցւոց մէջ։ Կորեան յաճախ գործածած բառերը չեն տեսնուիր մեր գրքին մէջ յաճախ, այլ այն ցանցառութեամբ որով նաեւ միւս դասերու մէջ կը պատահին։ «Ինքնին իշխանն» 2 Մկ. Ա, 12. Ես. ԿԳ, 9. — «Անթիւ անհամար» 2 Մկ. Ա, 13. 3 Թգ. Է, 8. Ը, 5. — «Իրքն այն» 2 Մկ. Ա. 33, Եզր. Զ, 22. Եսթեր ԺԳ, 8։ — «Ի վերայ հասանել» = իմանալ, հասկնալ, 2 Մկ. Ա, 34. Կոր. 13. Եսթ. Զ. 3. «Կացուցանել» ստորոգելիով՝ «անծանաւթ» 2 Մկ, Բ, 7. «Ծանաւթ» Կոր. 12. «Ընտիր» 2 Տիմ. Բ, 15. — «Հարցանել... քննել»

2 Մկ. Բ, 31. Կոր. 18. Երկ. Օր. ԺԳ, 14. — "Եռանդն իմ ածէին" 2 Մկ Դ, 12. Կոր. 26. Բիւզ. Դ. դ. Ես. Ա, 25. — "Զգլխով ածէին" 2 Մկ. Դ, 38. Բիւզ. Դ. ժե. Թիւք Զ. 5. Եզեկ. Ն. 1: — Կորեան սիրելի բառեր այլազգ եւ ուրիշ իմաստով կը կիրարկէ Մակաբայեցւոց Թարգմանիչը: "Բանիցդ խոստացելոց" 2 Մկ. Բ, 3. Կոր. 6. "խոստացեալն", հաւ գուցէ կը նշանակէ "պատմելի իրն" (Նորայր 140) եւ է գոյականացեալ ընդունելութիւն, իսկ Մակաբայեցւոց մէջ վերադիր ածական է եւ իւր սովորական իմաստն ունի, քանի որ պատմելի իրն բացատրուած կը գտնենք "բանիցդ" մէջ: — "Դասադաս" 2 Մկ. Գ, 18, Ագ, 252, 490, 548 (Նորայր, 307): Նախ մտադիր կ'ընենք որ միայն Z "դասադաս" ունի, իսկ միւսները կը կարդան "դաս դաս", ինչպէս Մրկ. Զ. 40. Ղկ. Թ, 14: Երկրորդ՝ Ագ. ի քով՝ իբր վերադիր ածական, իսկ Մակաբայեցւոց մէջ իբր մակբայ գործածուած է: — "Յուտեստ" 2 Մկ. Դ, 30 = ἐν δωρέα, ի պարգեւ, ի վայելս. Բիւզ. Դ. ժթ. իգ. = գղ. Ravitaillement (Նորայր, 346): — Նիզակակից՝ առ Կորեան = Գործակից, իսկ Մկ.՝ = Զինակից, մարտակից (Հմմտ. Նորայր, էջ 57—58): Շատ անգամ ալ "Կորեան՝ գոգցես իւրացուցած ասութիւնները կամ բառերը" Մակաբայեցւոց Թարգմանչին քով մօտ կը գտնեն, վասն զի բառ առ բառ կը համաձայնին յոյն սկզբնագրին եւ ամէն հայ նոյնօրինակ պիտի թարգմանէր: Հմմտ.

"Մտանէին ի... խնդրուածս„ 2 Մկ. գ, 18 = ἐξεπήδων ἐπὶ... ἱκετείαν. Բուզ. Դ. ժբ. — Հոս դուրս թողուած բառն է "համաշխարհի„ = πάνδημον, որ այլազգ կարելի չէ հայացնել նոյն վայելչութեամբ: — "Բազում շնորհս կալջիր„ 2 Մկ. գ, 33 = πολλὰς χάριτας ἔχε. Բուզ. Դ. ժզ. ծե. Ե. ե. է. — "Այցելու եւ աւգնական„ 2 Մկ. գ. 39 = ἐπόπτης καὶ βοηθός. Բուզ. Ե, խգ. — "Կրաւնս աւրինաւորս„ 2 Մկ. դ, 11 = νομίμους πολιτείας. Ագ. 116. Եւթ. Լէ, 1049 (Նորայր, 301): — "Աստուածագործ„ առ Կորեան յաճախ, իսկ 2 Մկ. միայն Զ. 23 վասն զի = θεόκτιστος, բայց կայ նաեւ "աստուածեղէն„ 2 Մկ. դ, 17, զոր Նորայր (էջ 97) Ա. Դասու կ'ընծայէ հակադրութեամբ Դ. դասու յատուկ՝ բայց սակայն միւս դասերէն ալ գործածուած "աստուածագործ„ին: — "Ցամրութիւն քաղաքին յուսացեալ էին„ 2 Մկ. ժ, 34 = τῇ ἐρυμνότητι τοῦ τόπου πεποιθότες. Բուզ. Դ ծե. — "Որ զիւրեաւն էին„ 2 Մկ. ժբ. 5 = τοῖς περὶ τοῦτον. Մկ. յաճախ. Ագ. 34 (Նորայր, 291):

Նորայրեան կարծեաց համոզիչ փաստը կրնար ընձեռել միայն Կորեան յատուկ բառերու եւ ոճի ներկայութիւնը Մակաբայեցւոց մէջ, բայց դժբախտաբար Կորեան հեղինակութիւնը հիմնաւորելու բոլորովին անբաւական քանակով ընդառաջ կ'ելլեն այնպիսի բառեր: Խոստաբուտ 2 Մկ. Ե, 29. Կոր. 22 (Նորայր 162). Ջա-

րեացապարտ 2 Մկ. Դ, 47. Բարեացապարտ կոր. 28 (Նորայր 163). Աւագանի 2 Մկ. ԺԴ, 11. կոր. 11. Բուզ յաճախ (Նորայր 93—95)։

Վերջապէս նոյնքան սակաւաթիւ են փոփոխ սրբագրութիւնները։ Նորայր ԺԷ. "Վարուք Մաշտոցի կ'ուղղուի ի Մակաբայեցիս՝ Ամբախիթ առնեմ, փոխ. Ամրախիտ։ — Մակաբայեցւովք կ'ուղղուի երկիցս ի վարս Մաշտոցի՝ հոգ ի միտ արկանէր, փոխ. ի մտի"։ Այս դոյզն օգնութիւնը դասական շրջանի ոչ մէկ գիրք կը զլանայ, թէեւ միեւնոյն անձին հեղինակութիւնը չըլլայ։

Մեր նպատակը չէ բնականաբար ժխտել ոեւէ նմանութիւն Նորայրի թուած գրութիւններու միջեւ, այլ անոնց՝ մէկ ձեռքի — Կորեան — արդիւնք ըլլալն բաւականաչափ ապացուցուած չենք համարիր։ Նորայրեան տուեալներով կարելի է միայն արդարացնել դասական շրջանի մէջ զանազան ուղղութիւններու, դպրոցներու կամ դասերու գոյութեան պաշտպան կարծիքը, բայց ոչ յականէ յանուանէ որոշել մէն մի գրոց հեղինակը կամ թարգմանիչը։ Այս նկատմամբ Նորայրի քննակերպը պէտք է Աբեղեանի հետ վախճանավրէպ կոչել։

Սակայն Նորայրի տեսութեան դէմ դիրք բռնելու կը ստիպէ զիս ոչ միայն անոր փաստերուն անբաւականութիւնը, այլ նաեւ դրական ծանրակշիռ պատճառներ։ 1. Կորիւն, համաձայն իւր իսկ վկայութեան, այն աշակերտներէն է, որոնք Յունաստան առաքուեցան, տարիներու

քրտնաջան աշխատութեամբ ձեռք բերելու յունագիտութիւն մը, որ անհրաժեշտ էր Ս. Գրոց թարգմանութեան թէեւ պատուաբեր՝ բայց ծանր ու պատասխանատու գործին համար։ Կորիւն ուրեմն քաջակիրթ յունագէտ մըն էր. Նա առանց տատամսելու եւ յաղթանակով կը-նայ իր ոյժերը Մակաբայեցւոց գիրքերուն Յունարէնով չափել — մինչդեռ Մակաբայեցւոց իրական թարգմանիչը՝ որչափ լաւ կը տիրէ իր մայրենի լեզուին, այնչափ տկար է — գուցէ իբրեւ նորուս — Յունարէնի մէջ, եւ այս պատճառաւ կարծես շլացուցիչ, ճոռոմաբան հայերէն նոր ոճով մը կ՚ուզէ իր պակասները, թիւրիմացութիւնները, սխալները, չփոթութիւնները ծածկել։ 2. Թէեւ անուրանալի է լեզուական ընդհանուր նմանութիւն մը Կորեան եւ Մակաբայեցւոց մէջ, բայց դժուար չէ ընդնշմարել տարբերութիւններ, որոնք անհատական նոյնութեան դէմ կը վկայեն։ Կորիւն ամէն մէկ գաղափար դժուարալոյծ լեզուաւ կը զգեստաւորէ, յետին աստիճանի խրթնաբան է, կը սիրէ "բացատրութիւնք եւ բարդութիւնք զորս անհնար է նոյն իսկ աշխարհաբար հայերէնի դարձնել, թող թէ օտար լեզուի„ (Նորայր 11), երբեմն պարբերութիւններ կ՚ընծայէ, որոնց մէջ մարդ դիւրաւ կը մոլորի քերականական կապերը կորսնցնելով։ Իսկ Մակաբայեցւոց թարգմանչին համար այս ամէնը սովորական, յաճախեալ, նկարագրական չեն։ Կարելի է առարկել, որ Կորիւն ինքնագրութիւն է, իսկ

Մակաբայեցիք թարգմանութիւն եւ այսու հասկանալի կ'ըլլայ ոճի տարբերութիւնը։ Այս պարագան յարգելի է, բայց դիտենք որ Բ. Գրքի յունարէն լեզուին հաւատարիմ թարգման՝ Կորիւն կրնար ըլլալ խրթնաբանութիւններով, եզական բարդութիւններով ու անդնդապտոյտ պարբերութիւններով։ Հակառակ իւր իսկութիւնը յերեւան հանելու ամէն յարմարութեան՝ կարելի՞ է ենթադրել որ Կորիւն ինք զինքն ուրացած ըլլայ. այսպիսի ենթադրութիւն մը Կորեան թարգմանչութեան շատ խախուտ հիմ պիտի հայթայթէր։

Մեր կարծիքն ու քննութեանս արդիւնքն արդէն վերը բանաձեւեցինք։

## § 4. Ո՞ր լեզուէ եղած է Հայերէն թարգմանութիւնը:

Ժամանակի մասին վերը ըսուածները բաւական լոյս կը սփռեն ներկայ խնդրոյս վրայ։ Որ լեզուաւ ալ եղած ըլլայ գրի գիւտէն անմիջապէս վերջ ձեռնարկուած թարգմանութեան սկզբնագիրը, հայ մատենագրութենէն յայտնի է, որ երկրորդ շրջանին սրբագրութիւններն ու թարգմանութիւնները յոյն աղբիւրէ բղխած են։ Հետեւաբար նաեւ հայերէն Մակաբայեցիք — իբր այս շրջանին ծնունդ — յունական ծագում պէտք է որ ունեցած ըլլան։

Զուտ ժամանակագրական ճամբով ստացուած այս եզրակացութիւնը՝ լեզուական ան-

հերքելի փաստերով կ՚ամրապնդուի։ Դասական մատենագրութեան մէջ չկայ թարգմանութիւն մը, որ այնչափ հաւատարմութեամբ մատնէ իւր սկզբնագրին լեզուն ինչպէս Մակաբայեցւոց թարգմանութիւնը։ Ամէն քայլափոխի հայ թարգմանիչը անջնջելի հետքեր դրոշմած է իւր յունարէն բնագրէն։ Մեծաւ մասամբ սխալներ կամ ստրկական թարգմանութիւններ են, որոնք յունարէն ընթերցուածներով շատ դիւրաւ կը մեկնուին։ Առիթ ունեցանք արդէն ներկայացնելու կրկին թարգմանութիւնները, եւ տեսանք նաեւ յունարէնի մատուցած ծառայութիւնը զանոնք լուսաբանելու համար։ Այժմ մեր տրամադրութեան տակ եղած նիւթը շատ աւելի առատ է։

Մեր թարգմանութեան սխալներուն մէկ ստուար մասը յունարէն իրարու նման եւ ձեռագիրներու մէջ դիւրաշփոթ բառերու մէջ կը գտնէ իւր լուծումը։ Այսպիսի սխալներ կը պարունակեն 2 Մկ. Ա, 4, 5, 13, 21. Բ, 13, 21, 25, 27, 29. Գ, 19, 25, 28, 39. Դ, 4, 9, 23, 38. Ե, 16, 24. Է, 8. Ը, 30. Թ. 4, 21, 25. Ժ, 10, 28. ԺԱ, 14, 15, 30, ԺԲ, 13, 24, 43. ԺԴ, 15, 25. ԺԵ, 2. Այս տեղիքներէն կը տեսնուի, թէ ինչպէս հայ թարգմանիչը առանց իմաստին թափանցելու անյարիր խօսքեր կը տողէ եւ մեքենականօրէն կը կատարէ իւր պաշտօնը, մինչդեռ սխալ ընթերցման տուած անհեթեթ իմաստը բաւական էր խորհող թարգմանիչը սթափեցնելու։ Հայ թարգմանչին

զուտ նիւթական աշխատութիւնը աւելի դուրս
կը ցայտէ կարգ մը ուրիշ սխալներու մէջ, որոնք
յունարէն բազմանիշ բառերու պտուղ են։
Այսպիսի բառերու վրայէն Հայն առանց տա-
տամսելու կը սահի կ'անցնի արագ, խուսափելով
բազմանիշ բառերուն յունարէն սկզբնագրի
հեղինակէն դիտուած իմաստը տեղւոյն համա-
ձայն ճշդելու աշխատութենէն, եւ կ'առնու սո-
վորաբար բառին մերձաւոր նշանակութիւնը,
մինչդեռ հեռաւորը, վերացականը զինքը գայ-
թելէ պիտի փրկէր։ Այսպէս կը մեկնուին.
Ա, 12, 14, 34. Բ, 12, 13. Գ, 21. Դ, 3,
28, 34, 39, 40. Ե, 1, 8, 14, 24. Է, 6,
36. Ը, 9. Թ, 14, 24, 29. Ժ, 8, 15, 16.
ԺԱ, 14, 16, 26, 34. ԺԲ, 5, 39, ԺԳ, 1, 8.
ԺԴ, 17, 19, 30, 44, 46. ԺԵ, 33. — կան
նաեւ սխալներ, որոնք յառաջ եկած են յու-
նարէն խօսքի մը մասերն անյաջող կերպո
իրարու միացնելով կամ իրարմէ բաժնելով։ Այ
կէտիս մէջ մոլորեցուցիչ դեր խաղացած են
նաեւ հեղինակին լեզուի եւ ոճի առանձնայատ-
կութիւնները (Ա, 3. Դ, 19. Զ. 30. Ը. 31,
32. ԺԳ, 22. ԺԴ, 38)։ Քանի մը դէպքի մէջ
Հայն արտադրած է յունարէնի յատուկ հա-
մաձայնական ասութիւններ (Գ, 1, 30. Դ, 38.
ԺԴ, 23), կամ յունարէն յատուկ անուններ
իբր հասարակ անուն թարգմանած է (Բ, 20.
Ժ, 10, 12. ԺԲ, 2. ԺԴ, 1)։ Հայ թարգ-
մանչին համար որոգայթ եղած են վերջապէս
յունարէն բարդութիւններ, զորոնք կամ

ստուգաբանօրէն անճիշդ տարրալուծած եւ կամ անոնց կազմիչ մասունքներուն իմաստին կառչելով բարդութեան բուն նշանակութենէն վրիպած է (Ա, 13, 22. Բ, 13. Գ, 6. Դ, 21. Ե, 14)։

Տեսնենք այժմ միառմի այս սխալները՝ յունարէն սկզբնագրի մը մատնիչ հետքերը։ Հետեւեալ համեմատութեանց մէջ յունարէն շեշտերն երբեմն զանց կ'առնունք բառերու նմանութիւնն աւելի ցայտուն ընելու համար։ Տարակոյս չկայ որ Հայուն օրինակն ալ արդէն չունէր շեշտ։

2 Մ՛. Ա, 3. “Եւ տացէ ձեզ սիրտ յամենայնի պաշտել զնա”. καὶ δῴη ὑμῖν καρδίαν πᾶσιν εἰς τὸ σέβεσθαι αὐτόν. Յունարէն տարօրինակ շարադասութենէն խաբուելով Հայը πᾶσιν կը միացնէ σέβεσθαι-ի, մինչդեռ նա ὑμῖν-ի կը պատկանի. “ձեզ ամենեցուն” փոխ. յամենայնի պաշտել։ — Համ. 4. “Բանալ զաչս... առնել խաղաղութիւն” Հ. 5. “Եւ լսել”։ Եթէ Հայն իւր առջեւ διανοίξει... ποιήσει... ἐπακούσει ձեւերը ունեցած ըլլար, աներեւոյթ պիտի չգործածէր, բայց հաւանօրէն Աղեքսանդրեան խմբագրութեան ուղղագրութեամբ էր իւր օրինակը. διανοίξαι... ποιήσαι... ἐπακούσαι. Այս ձեւերը կը ներկայացնեն Ըղձական (optativ) կատարեալ (aorist) 3. դէմք “բանայցէ... առնիցէ... լուիցէ”։ Հայը շփոթած է զանոնք նոյնայանգ կատարեալ աներեւոյթի հետ։ — Հ. 12. “Եռացոյց եւ

եհեղ զայնուիկ,,: Հասկնալու համար թէ որչափ տարօրինակ են այս բառերը, կը բաւէ յաւելուլ որ Երուսաղէմի վրայ եկող թշնամիներն Աստուած "եռացոյց եւ եհեղ,,: Հայը ἐξέβρασε բառը բոլորովին նիւթական ու հոս անիմաստ կերպով հայացուցած է, քանի որ յուն. բառը "եփել, եռացնել, արտաղեղուլ" բայց փոխաբերաբար նաեւ "վանել, վկանդել" կը նշանակէ: Մինչ մեր թարգմանիչը նոյն սխալը կը կրկնէ նաեւ Ե, 8, Նեհեմեայ թարգմանիչը ուղիղը կ'ընտրէ. "մերժեալ հալածեցի,, Նե. ԺԳ, 28: "Եռացուցանեմ,, գործածուած է նաեւ 1 Թգ. Ե, 6. Զ, 1. Յոբ ԽԱ, 22. բայց "բազմացնել,, ἀνάγω, ἔχζω, ἀναφύω իմաստով, զոր եթէ հոս եւս պնդել ուզենք, պիտի հակասենք սրբագիր հեղինակին: Աստուծոյ՝ Հրէից ըրած դրական շնորհքները, օգնութիւնները կը թուէ նա, մինչդեռ թշնամիներու բազմացումն անոնց կարգէն չէ: — Հ. 13, "Խորհուրդ յիմարութեան խորհեցան նոքա զՆեեմեայ տաճարաւն,,: "Նեեմեայ, իբր գրչագրական վրիպակ ուղղելի փխ. "Նանեայ.," = περὶ τ. Ναναίαν. "Տաճար., արդիւնք է սխալ ընթերցման մը. փխ. ἱερεών, ուղղական՝ ἱερεύς = "քահանայ" կարդացած է ἱερῶν, ուղղական՝ ἱερός (հմմտ. նաեւ Դուրեան, Անդ, էջ 249): "Խորհուրդ յիմ. խորհ.,, կը համապատասխանէ յուն. "παραλογισμῷ χρησαμένων,, = "Խորագիտութեամբ վարեցան քահանայք Նանեայ:,, Հայը παραλογισμός, որ Ս. Գրոց մէջ

այլուր չէ գործածուած, կը ստուգաբանէ. παρα + λόγον = հակառակ մտաց, անմիտ = խորհուրդ յիմարութեան։ — Հ. 14. «Զի իբր բնակութեամբ իմն». Յոյնն ունի. „ώς γάρ συνοικήσων αὐτῇ" = Որպէս թէ կամէր նմա (նանեայ) բնակակից լինել իբրեւ ամուսին = ամուսնանալ։ Այս է յուն. բառին իմաստը. բայց որովհետեւ Հայը երբեւի չէր գիտեր հեթանոսական այն տեսութիւնը — սրբագիր հեղինակն հեթանոսներու կարծիքով կը խօսի, ώς — որով աստուածուհիներու եւ մարդկան ամուսնութիւնը հնարաւոր ու իրական կը հըռչակուէր, այս պատճառաւ կ'անտեսէ αὐτῇ եւ συνοικήσωνի οἰκέω, οἰκία գաղափարին կառչելով կը թարգմանէ սովորական մտօք բնակիլ, բնակութիւն։ Ուրիշ նշանակութիւն կը վերագրէ բառիս Նորայր։ Ագաթանգեղոսէ, Բիւզանդէ, Մակաբայեցւոց Բ. գրքէն տեղիքներ (որոնցմէ է զմեզ զբաղցնողն ու ԺԳ, 8. Զի մի՛ հողոյ եւ մի՛ պատանաց յիւրում բնակութեան աշխարհին մի՛ արժանի լիցի) մէջ բերելէ վերջ, էջ 187 կը գրէ. «Յօրինակսդ Բնակութիւն չնշանակեր բնակելն կամ բնակարան, գղ. Habitation, այլ Որ ինչ բնակ կամ բնիկ է. ումեք, Սեպհականութիւն, գղ. Propriété, որով եւ Աշխարհ բնակութեան, բնակութեան երկիր կամ աշխարհ՝ նոյն է ընդ բնակ կամ բնիկ աշխարհ, երկիր, գղ. (son) propre pays, զոր Ագաթ. կը կոչէ նաեւ բուն աշխարհ»։ Թէեւ այս դիտողութիւնը Ագաթանգեղոսի եւ

Բիւզանդի քանի մը տեղիքներուն մասին իրաւացի է, սակայն տարակուսական, մինչեւ իսկ սխալ է Մակաբայեցւոց Բ. գրքէն առնուած բառերուն նկատմամբ։ Երբ թարգմանիչը այն ամէն բառերու տեղ, որոնց հիմն է οἰχέω, միշտ ՝բնակութիւն, կը դնէ, այս ՝բնակութեան, այլեւս οἰχέω է օտար նշանակութիւն չէ կարող պատշաճիլ։ Արդ ոչ միայն 1 Մկ. Ա, 40. Թ, 58. 2 Մկ. ԺԱ, 2. այլ Ա, 14. կը պարունակեն οἰχέω ի բարդութիւնները, զորոնք Հայը ՝բնակութիւն, կը թարգմանէ։ Մի՞թէ ՝Սեպհականութիւն, իմաստը բռնազբօսիկ եւ օտարամուտ պիտի չհնչէ՞։ Իսկ ԺԳ, 88. "բնակութեան„ թէեւ Հայուն յաւելուածն է, բայց իմաստը կը ստուգուի հակառակ Նորայրի անով, որ թարգմանիչը — հոգ չէ թէ հեղինակին ըսածը լաւ չհասկնալով — օտարութեան, ուր մեռաւ Սիմոն, կը հակադրէ այն աշխարհը, որ անոր բնակավայրն եղած էր եւ պէտք էր ըլլալ նաեւ հանգստավայր մահուընէ վերջ։ Բաց աստի նմանութեան օրէնքն ալ կը ստիպէ զմեզ "բնակութեան„ այս սովորական եւ համաձայն թարգմանչին միւս տեղիքներուն, ուր յունարէնը մեզի մեկնակէտ կը հանդիսանայ, իմաստը հաստատուն բռնելու։ — Հ. 21. "Հրաման ետ քահանայապետն ՙնեեմի„ փխ. քահանայից։ Սխալը ծագած է ἱερεῖς ը ἱερεύς ի հետ շփոթելէն։ Փոխանակ այս մեկնութեան կարելի է Գուիմ (Անգ, 121) հետ յուն. սկզբնագրին սխալագրութեան եւս ընծայել։ — Հ. 15. "Եւ

արեգակն շող ամպագոյն ի վերայ ծագեաց , . — աւելի հարազատ կը թուի ինձ Զի ընթերցուածը. “Եւ արեգական շող՝ ամպոյն ի վերայ ծագեաց,,, թէեւ եւ ոչ մին ճիշդ է։ Բնագիրը կ՚ըսէ. ὅτε ἥλιος ἀνέλαμψε πρότερον ἐπινεφὴς ὤν = իբրեւ ծագեաց արեգակն, որ յառաջն ամպովք մածեալ էր։ Հայը ἐπι + νεφής բառական թարգմանած է “ամպոյն ի վերայ,,։ Անցողակի յիշենք, որ πρότερον կը պակսի Նաեւ Աղեքսանդրեան խմբագրութեան մէջ։ — Հ. 34։ “Եւ տաճար շինեցին։,, Յուն. ἱερὸν ἐποίησε երկդիմի է, եւ որպէս զի երկդիմութիւնը վերնայ Ղուկեանեան 22. 19, 52, 64, 93 τόπον կը յաւելուն. “Սուրբ արար ղտեղին,, բայց որովհետեւ Հայուն օրինակին մէջ այդ բացայայտիչ τόπονը կը պակսէր, սխալմամբ ἱερόν իբր գոյական նկատած է։

Բ, 1. “Հրաման ետ... յետոյ Նոյա. Հ. 2. զաւակի Նոյա որ յետ Նոյայն էին,,։ “Յետոյ Նոյա,, ուղղելու է ՙյետնոց, ինչպէս ունին Znbh։ Բոլոր մեկնիչները յուն. τοὺς μεταγινομένους... τοῖς μεταγενομένοις կը թարգմանեն transferri, deportari, մտադիր ընելով միանգամայն որ բառս այս իմաստով այլուր կիրարկուած չէ։ Ուստի Հայը կապուած է սովորական իմաստին. μετὰ + γίνεσθαι = յետոյ լինել = յետնոց, մինչդեռ Հեղինակին քով Երեմիա մարգարէն Հրաման կու տայ “Նոյա, որք տարագիր (Սղ. ՀԲ, 18. Եր. ԻԲ. 28, 30) եղեալ էին,,։ — Հ. 13. ,,Եւ խնդրէին“. ΕΞΗ-

ΓΟΥΝΤΟ = ‘պատմէր, շփոթած է ΕΖΗΤΟΥΝ-ΤΟի հետ։ — Հ. 13. “Որ առ ամաւքն Նեեմեայ եղեալ” = τοῖς κατὰ τὸν Νεεμίαν. κατὰ հայցականով կը նշանակէ ոչ միայն ժամանակ, այլ նաեւ, ինչպէս հոս, գրութեան մը հեղինակը, հմմտ. ἡ καθ᾽ Ἡρόδοτον ἱστορία, այս իմաստը կը ստանանք եթէ “առ ամաւքն” մակբայը ՚ի, նախադրութեամբ փոխանակենք։ — Հ. 13. “Եւ իբրեւ զիւրեաւ եդեալ” = καὶ ὡς καταβαλλόμενος βιβλιοθήκην։ Մոռադիր ըլլալով որ ὡς զօդիչ շաղկապն է ἐξηγοῦντοի = “պատմէր... եւ թէ զիարդ”, զայն իբր համեմատական շաղկապ կը թարգմանէ։ Բայց բուն տարօրինակն է “զիւրեաւ եդեալ”, մինչ Յոյնը կ՚ըսէ. “եւ թէ զիարդ հիմն դնէր մատենադարանի”։ Հայը կամ յունարէն այս սովորական բացատրութիւնը չէ հասկցած եւ կամ իւր օրինակը միայն καταβαλλόμενος կը կարդար, բայց երկու դէպքի մէջ ալ “զիւրեաւ եդեալ”, ստրկական նմանողութիւնն է κατα+βαλλόμενοςի։ — Հ. 20. “Քաջահայր որդի նորա” = τὸν τούτου υἱὸν Εὐπάτορα։ — Հ. 21. “Այն որ ինչ վասն քաջութեան պնդութեան աւրինացն, եւ կամ որ զքաջութիւնս ի մտի դնել”։ Հակառակ ազատ թարգմանութեան յայտնի է տակաւին, որ կախում ունի յունարէն սա խօսքէն. “τοῖς ὑπὲρ τοῦ Ἰουδαϊσμοῦ φιλοτίμως ἀνδραγήσασιν” = (որ ինչ յերկնից յայտնութիւնք եղեն) նոցա՛ ոյք ի վերայ Հրէութեան քաջութեամբ փառօք

մարտ եղեալ կռուէին,․ ὑπὲρ կը թարգմանէ իբր περὶ. φιλοτίμως կը կարդայ φιλοτιμίας (քաջութեան պնդութեան), իսկ ἀνδραγαθήσασιν, զոր առանձիննախադասութեան մը վերածած է, կը համարի հաւանօրէն յոգնակի 3․ դէմք մինչդեռ կատ․ ընդ․ ներկ․ յոգն․ տրկ․ է։ — չ․ 25․ "ամենեցուն անեղծ անարատութիւն"։ Դուրեան (էջ 249) կ'առաջարկէ սրբագրել "յօգուտ ամենեցուն", աւելի ուղիղ եւ վայելուչ կ'ըլլար "եւ ամենեցուն շահ աւգտի", վասն զի խօսքս խնդիրն է "հոգացուք մեք առնել ի։ Սխալին ծագումը պարզ է․ ὠφέλειαν կարդացած է ἀφέλειαν։ — չ․ 27․ "Ջընկերացն"։ Յուն․ ἑτέρων ≠ զայլոց։ Շփոթած է ἑταίρων ի հետ։ — չ․ 29․ "հասարակաց" փխ․ "նորոյ" = καινῆς, զոր սխալմամբ կարդացած է κοινῆς։

գ․ 1․ "Սրբոյ քաղաքին ամենայն խաղաղութեամբ բնակելոյ. եւ աւրինացն ճշմարտութեան իբրեւ զի գեղեցիկ իմն պարհեցելոյ", Բացատիպ բառերը կը ներկայացնեն բացարձակ սեռական, որուն մէջ անուն բայի եւ ընդունելութիւն անցեալ՝ սեռական հոլով կը դրուին փոխ․ "իբրեւ" ով դիմաւորի․ բացարձակ սեռականը ցանցառադէպ է, եւ իբր յունաձեւ ոճ՝ յունարէնէ թարգմանուած գրութիւններու մէջ կը տեսնուի երբեմն (Այտընեան, Քեր․ Հայկ․ Լեզուի, Վիեննա, 1885, էջ 427—428)։ Յայտնի է որ հոս Հայը սկզբնագրէն ազդուած է․ τῆς ἁγίας τοίνυν πό-

λεως κατοικουμένης μετὰ πάσης εἰρήνης, καὶ τῶν νόμων ἔτι κάλλιστο συντηρουμένων. — Հ. 6. «Որով լցեալ պահեն զտուն գանձին Յերուսաղէմ»։ Կը թուի ինձ, թէ յուն. γαζοφυλάκιον = «տուն գանձի» բառին կազմիչ երկրորդ մասը φυλακία-φυλάττω առիթ եղած է Հայուն «պահեն» յաւելուածին։ — Հ. 19. «Ընդ հրապարակս աշխարհին», յուն. τὰς ὅδους ἐπλήθυον = լնուին զհրապարակս։ Լալու ողբալու գաղափարը, որ տեղւոյն ալ անյարմար չէ, յղացած է Հայը խաբուելով ΕΠΛΗΘΥΟΝի եւ ΕΠΕΝΘΕΟΝի ձեւական ու հնչական նմանութենէն։ — Հ. 21. «Զմեծապէս սքանչելի շտապ տագնապի ըստ քահանայապետին կարծեաց»։ Անիմաստ նախադասութեանս փոխարէն Յոյնն ունի (ἐλεεῖν δ'ἦν ...) τήν τε τοῦ μεγάλως διαγωνιῶντος ἀρχιερέως προσδοκίαν = (էր ողորմել...) եւ ընդ սպասումն ակնկալութեան քահանայապետին, որ տագնապէր տառապէր մեծապէս։ Προσδοκία կը նշանակէ 1. Սպասում, ակնկալութիւն, 2. Ենթադրութիւն, կարծիք՝ Վերջինս ընտրած է Հայը առանց անտեղի ըլլալուն գիտակցութեան։ — Հ. 25. «Մեծաշուք» մինչդեռ Յոյնը կ'ընծայէ φοβερός, որ Ս. Գրոց մէջ յաճախ եւ Ա, 24. կը թարգմանուի ուղիղ՝ «ահաւոր, ահեղ»։ Հոս ստորագրուած տեսլեան պարագաները եւ φανερός-ի ձայնական նմանութիւնը խնդրոյ առարկայ յուն. բառին հետ՝ Հայուն վրիպակը հասկնալի կ'ընեն։ — Հ. 28. «Յանգգայ» յուն. ἀβοήθητον

= «անոք անօգնական»։ Հաւանօրէն Հայն ἀναίσθητονէ ներշնչուած է։ — Հ. 30. «Եւ զայն որ փոքր մի յառաջ խռովութեամբ լցեալ էր զտաճարն» փոխ. «եւ զտաճարին զայն որ ...»։ Ցուցական ածականին իր գոյականէն այս արտասովոր բաժանումը բառական նմանութիւնն է յունարէն շարադասութեան. καὶ τό μικρῷ πρότερον δέους καὶ ταραχῆς γέμον ἱερόν. «Զայն» թարգմանութիւնը ոչ այնչափ յուն. τὸ-ի սկզբնաբար ունեցած ցուցական նշանակութեան, զոր հազիւ թէ չէր անգիտանար Հայը, որչափ τὸ-ի նման հայերէն առաձին յօդի մը պակասութեան հետեւութիւն կրնայ ըլլալ։ Սակայն ուրիշ մեկնութիւն մը եւս հնարաւոր է։ Գուցէ Հայը՝ գոյականէն այնչափ հեռու որոշեալ յօդը (τὸ) շփոթած ըլլայ յարաբերական դերանուան (ὅ) հետ։ Առաջին մեկնութիւնը աւելի ուղիղ կը թուի, վասն զի վերջին առժամբ (զայն որ = այն Անտիոքոսը որ...) խօսքը պակասաւոր կը մնայ։ — Հ. 39. «Եթէ արձակեսցէ եւեթ» փխ. «հարեալ կորուսանէ»։ Հայը ἀπόλλυμι = ‘ջնջել’, եւ ἀπολύω = ‘լուծել արձակել’, իրարու խառնած է (հմմտ. նաեւ Դուրեան, 249)։ Նոյնպէս սրբագրելու է Յովհ. ԺԲ. 25 ծանօթ տեղիքը. «Որ սիրէ զանձն իւր արձակէ զնա»։

Դ. 3. «զոր ի գործ կացուցեալ էր Սիմոնի՝» Յուն. τῶν ὑπὸ τοῦ Σίμωνος δεδοκιμασμένων = ի մտերիմ բարեկամաց Սիմոնի։ Հայուն տարօրինակ թարգմանութեան

Պտղոմեայ Փիղոմետորայ, զգացեալ Անտիո-
քայ եթէ օտարացեալ իցէ նորա (Ապողոնեայ
Սենեսթեանց) ի գործոցն արքունի„: Իրեն ան-
ծանօթ πρωτοχλίσια բառը Հայը թարգմանած
է “անց„ մեռնիլ իմաստով անշուշտ, քանի որ
իսկոյն թագին՝ յաջորդն, ալ կը նշանակէ. Հաւա-
նօրէն բառին երկրորդ կազմիչ մասը χλιςία
ածանցած է χλίνω է = միտիմ, խոնարհիմ,
անցանել: Յաջորդող բառը μεταλαβών, որ իրեն
այլուր ծանօթ է, հոս տարօրինակ ստուգա-
բանութեան կ'ենթարկէ. μετα + λαμβάνω =
փոխանակ այլոյ ուրուք առնուլ, խնդիր
սեռին իւքնին կը հետեւէր նկատմամբ Անտիո-
քոսի՝ “թագ„, եւ այսպէս Անտիոքոս եղած է
յաջորդ Պտղոմեայ: Վերջապէս αὐτὸν նկատած
է իբր փոխադարձ դերանուն (= ἑαυτόν, սղեալ՝
αὑτον), մինչդեռ հոս անձնական դերանուն է
գ. դէմքի. Համտ. Նաեւ 14. 46: — Հ. 23.
“Սիմոնի մոլեկանի„ փոխ. “Սիմոնի նշանա-
կելոյ„. Յուն. προσημαινομένου = նշանա-
կելոյ, իսկ՝ μαινομένου = մոլելոյ, մոլեկանի: —
Հ. 28. “Իբրեւ ստիպել պահանջել տագնապել
սկսաւ„ = ποιουμένου δὲ τὴν ἀπαίτησιν =
թէպէտ եւ պահանջէր: Յունարէն ընդունելու-
թիւնը ժամանակական, պատճառական ու վախ-
ճանական, հաստատական ու թէական իմաստ
կրնայ տալ: Հայը չէ կրցած ուղիղն ընտրել: —
Հ. 34. “Իբրեւ իւր արարեալ„ փոխ. “առ
(զԱ.) մեկուսի„: Շփոթութիւն ἰδίως = ἰδίᾳ
մակբայի եւ նմանաձեւ բայց այլիմաստ ածականի:

— Հ. 34. ՙՁեռամբ արկանել, = χειρώσασθαι = 1. Ձեռամբ արկանել. 2. Սպանանել, եւ այս է տեղւոյս իմաստը: Ասորին առանց երկդիմութեան ունի. Զի սպանցէ: — Հ. 38. “Զգլխով ածել„ յուն. περιελόμενος: Հայը բառս յառաջ բերած է περιείλειν է, մինչ այն ընդունելութիւնն է περιαίρειν ի = “ի բաց առնուլ„: — Հ. 38. “Ի Տեառնէ զարժանի տանջանս ի վերայ չարագործին հասուցելոյ„: Անճիշդ բացառականը՝ — ի Տեառնէ — սեռականի՝ — Տեառն — փոխելէ վերջ կ'ունենանք յունաձեւ բացարձակ սեռական. τοῦ κυρίου τὴν ἀξίαν αὐτῷ κόλασιν ἀποδόντος, տես գ. 1. — Հ. 39. “Զաւրքն„: Որովհետեւ πλῆθος բառը զանազան իմաստներով — ամբոխ՝ զօրք, ժողովուրդ — կը գործածէ յունագիր հեղինակը, թարգմանիչը միշտ չէ յաջողած ճշդել (հմմտ. Թ. 2. ԺԱ, 16). հոս ինչպէս ԺԱ, 10. ժողովրդեան վրայ է խօսքը եւ ոչ կանոնաւոր զօրքի — Հ. 40. “Զաւրքն„ փխ. ՙամբոխն, . վերի դիտողութիւնը կ'արժէ նաեւ. հոս գործածուած τῶν ὄχλων բառին. ὄχλος = ժողովուրդ, ամբոխ. ԺԱ, 6. ԺԴ, 45. զաւրք ԺԴ. 23. 43: — Հ. 40. “Արամբ միով, որ խուժդուժ եւս էր տեսանելով քան զմտաւքն թանձրութեամբ„: Յուն. Προηγγησαμένου τινὸς τυράννου προβεβηκότος τὴν ἡλικίαν, οὐδὲν δὲ ἧττον καὶ τὴν ἄνοιαν = “Առաջնորդութեամբ առն, որ խուժդուժ էր եւ առաւելեալ հասակաւ (ամօք) եւ ոչ նուազեալ չարութեամբ„: Յուն.

ἡλικία (հասակ) = 1. Տարիք. 2. Արտաքին կերպարանք. ἄνοια = 1. Անմտութիւն, Թանձրամտութիւն. 2. Չարութիւն։

Ե, 1. «Եւ ժամանակաւ երկրորդ գալստեան՝ Անտիոքոս յերկիրն Եգիպտացւոց առաքէր» փխ. «Եւ ընդ ժամանակսն ընդ այնոսիկ կատարէր Անտ. զերկրորդ արշաւանսն յԵգիպտոս» = Περὶ δὲ τὸν καιρὸν τοῦτον τὴν δευτέραν ἔφοδον ὁ Ἀντίοχος εἰς Αἴγυπτον ἐστείλατο. Հայ թարգմանիչը περὶ նախադրութեան կը կապէ նաեւ δευτ. ἐφ., որով «առաքէ» կը մնայ առանց խնդրի, անշուշտ վասն զի չէր գիտեր, որ թէեւ στέλλω = առաքեմ, բայց στέλλεσθαι ἔφοδον = արշաւանս դնեմ։ — Հ. 8. «Եռացեալ թաքեալ». a կ'ուղղէ. «Հեռացեալ»։ Բայց «եռացեալ»ի առաջնութեան վկայ է Ա. 12, որուն վրայ խօսեցանք։ Յուն. բնագիրը հոս բարդութիւններ կը ներկայացնէ. συνεξεβράσθη 62, 64, 93. ἐξεβράσθη 44, 55, 71, 74, 106, 243. Compl. Al. — Հ. 14. «Եւ չորս բիւրս ի վաճառի ոչինչ պակաս լաւութեամբ քան զսպանեալսն վաճառեցին». փխ. «չորս բիւրք մարդախողխող ձեռօք անկան, եւ թուով ոչ նուազագոյնք քան զսպանեալսն վաճառեցան» = τέσσαρες μὲν ἐν χειρῶν νομαῖς, οὐχ ἧττον δὲ τῶν ἐσφαγμένων ἐπράθησαν. Հայուն «ի վաճառի»ն պիտի համապատասխանէ ἐν χειρῶν νομαῖςի, զոր սխալմամբ νόμοις կը կարդայ եւ կը մեկնէ՝ օրէնք ձեռաց = վաճառ... ἧττον կը համարի բաղդատական χαχόςի (ոչինչ պա-

կաս լաւութեամբ) մինչդեռ հոս բաղդատականն է πλειων ի: — Հ. 16. "Բաշխէին" փխ. "բաշխէր", Յուն. ἐπεδίδου կարդացած է ἐπέδιδον: — Հ. 20. "Ուղղութեամբ" անյարիր թարգմանութիւն, որ ծագած է ἐπανωρθώθη = կանգնեսցի, ἐπανωρθώσει կարդալէ: — Հ. 24. "ԶՄաշուէ". Գուրեան, էջ 249. "կ'երեւի "μυσάρχην" բառը յատուկ անուն մը կարծուած է. ուղղելի՝ զեղեռնագործն": փոխանակ վերջին բառիս պիտի առաջարկէի "զգլուխ չարեացն":

Զ. 30. "Սկսաւ խաւսել ի Տէր" յուն. εἶπε τῷ κυρίῳ = ասէ Տեառն (յայտնի է եւն): Թարգմանիչը τῷ κυρ. կը կապէ εἶπε իբր անձնական հեռաւոր խնդիր, մինչ յիրականին այդ տրականը φανερόνէ կախուած է:

Է. 6. "Ի ծառայս իւր մխիթարի". Յուն. παρακαλεῖται այս իմաստն ունի, բայց հոս, քիչ մը վարը եւ Եր. Օր. ԼԲ, 36. per metonymiam consequentis pro antecedente կը նշանակէ "գթալ": — Հ. 8. "Ի նոյն տանջանս տանջեալ վախճանէր", փոխ. "զտանջանսն, որ զկնի գային, ընդունէր" կամ "ի տանջանս, որ զկնի գային, տանջէր", յուն. "τὴν ἑξῆς ἔλαβε βάσανον": Հայուն "վախճանէր"ը կը ցուցնէ, որ նա ἑξῆςի ներկան կարծած է ἔξειμι, փոխ. ἔχω. — Հ. 36. "Վասն կենացն յաւիտենից եւ ի վերայ ուխտի կտակարանացն Աստուծոյ անկեալ կան մահու տարածեալ", Յուն. "ἀενναίου ζωῆς ὑπὸ διαθήκην θεοῦ πεπτώκασι" = "ընդ աւրինաւք (կամ ընդ ուխտիւ կտակարանացն) Աստուծոյ յա-

ւիտենիցն կենաց բաժանորդ եղեն„: “Անկեալ կան„, սովորական իմաստն է πίπτωի, որ հոմ փոխաբերաբար գործածուած եւ արտասովոր կերպով սեռական խնդիր առած է (ἀεν. ζωῆς)։

Ը. 9. “Նա վաղվաղակի իբրեւ առնոյր զհրովարտակն, զՆիկանովր Պատրոկղեանց„. վերջին հայցականը կը մնայ օդոյ վրայ. aboZn զայս զգալով սեռականի վերածած են իբրեւ յատկացուցիչ. “զհրովարտակն զՆիկանովրայ„, այսու սակայն յաջորդ “ի ձեռն գումարէր„ը կը զրկուի բոլորովին անձնական տրականէ։ Յոյնն ունի. ὁ δὲ ταχέως προχειρισάμενος Νικάνορα τὸν τοῦ Πατρόκλου = “Իսկ Նա (Անտիոքոս) ընտրեալ զՆիկանովր Պատրոկղեանց... ի ձեռն գումարէր նմա ...„: Շփոթութեան պատճառ եղած է προχειρ. = 1. առնուլ ի ձեռն. 2. ընտրել։ Անյաջողութեամբ առաջին իմաստին յարելէ վերջ՝ Հայը պէտք տեսած է զայն լրացնելու, եւ առ այս կռուան եղած են Հ. 8. յիշուած “Հրովարտակք„: — “Զառաջին սիրելի յաւագաց իւրոց„ փոխ. “զմին յաւագ բարեկամաց իւրոց„ = τῶν πρώτων φίλων ὄντα. πρῶτος = 1. առաջին. 2. աւագ. φίλος ած. = սիրելի. գոյական՝ = բարեկամ։ — “Յանդիման արար նմա„. փոխ. “Եդ նմա առընթեր„. յուն. συνέστησε = 1. կարգել, քովը դնել. 2. ներկայացնել։ — Հ. 30. “Տիմոթէոս եւ Բագիդէս յոր գործ հասեալ էին„ փոխ. “ի մարտին ընդ արսն Տիմոթեայ եւ Բաքիդեայ„ = καὶ τῶν περὶ Τιμό-

θεον καὶ Βακχίδην συνεριζόντων (Հմմտ. Դուբեան 250). Հայուն սխալը կը մեկնեմ ենթադրելով συνέρξαντες թիւրընթերցումը։ — Հ. 31. "Ինքեանք աւարաւ յԵրուսաղէմ առ Նահապետ ազգացն դառնային„. Հ. 32. "Անդ սպանեալ լինէր Նոցա զՏիմոթէոս„ փոխ. "զմնացեալ աւարն բերէին յԵմ.„։ Հ. 32. "Իսկ զՓիւղարքոս, զմի ոմն յարանցն Տիմոթեայ, սպանանէին„ = τὰ δὲ λοιπὰ τῶν σκύλων ἤνεγκαν εἰς Ἱεροσόλυμα. τὸν δὲ Φυλάρχην τῶν περὶ Τιμόθεον ἀνεῖλον. Հայը Φυλ. իբր հասարակ անուն թարգմանելով (φυλή = ցեղ, ազգ. ἄρχος = գլուխ, Նահապետ) միացուցած է ἤνεγκαν ի (բերէին առ...) որով ἀνεῖλον ի խնդիր սեռի եղած է Տիմ.։

Թ, 4. "Միտ եդեալ ճանապարհին„ փոխ. "ի գլուխ հանել զճանապարհն„։ Յուն. բնագրին κατανύειν բառը կարդացած է κατανοεῖν. — Հ. 14. "Ազատ ցուցանել„։ Ստրուկ թարգմանութիւն յունարէն ասութեան. ἐλευθέραν ἀναδεῖξαι, փխ. "յազատութիւն հանել„։ — Հ. 21. "Ի մտի իմում վասն հասարակաց աւգտի եւ շինութեան„։ Խօսքս պակասաւոր եւ բայազուրկ մնացած է, վասն զի թարգմանիչը յուն. φροντῖσαι աներեւոյթը (հոգալ) շփոթած է φρόντις ի յոգնակի տրականին հետ (φρόντισι)։ — Հ. 24. "Գիտասցեն ում պահեալ կայ եւ յանձն է տեղին„ փոխ. "գիտասցեն որք ի տէրութեանս արք՝ ում պահեալ կան եւ յանձն են արքունի իրք„ = εἰδότες οἱ κατὰ τὴν χώραν ὧ καταλελείπται τὰ

πράγματα. Հայը պարզապէս χώρα թարգմանած է փոխ. οἱ κατὰ τ. χ., եւ այսու πράγματα, որ քերականական ենթական է καταλελείπταιի, դուրս ինկած է։ — Հ. 25. "ի տեղի թագաւորութեան„ փոխ. իբրեւ թագաւոր = βασιλέα, զոր Հայը βασιλεία կարդացած կը թուի։ — Հ. 49. "Առեալ տանէր„։ Այս է սովորական իմաստը παραχομίζετοի, որ հոս սակայն "թաղել„ կը նշանակէ։

Ժ, 8. "Ածել զաւուրս զայս„։ Անիմաստ "ածել„ը տառ առ տառ համաձայն է ἀγεῖνի, որ քովը ունենալով "τὰς δὲ τὰς ἡμέρας = զաւուրսս զայսոսիկ„ հայերէն "տօնել„ պէտք է թարգմանուի։ — Հ. 10. "Վասն հաւրամոյն Անտիոքայ, անաւրէն զաւակին„։ Յատուկ անուան իբր հասարակ անուն թարգմանութենէն զատ (Εὔπατορα = հաւրամոյն, Բ, 22 = քաջահայր) մասնաւորապէս աչքի կը զարնէ "զաւակին„, որ հաւանօրէն բացայայտիչ է եւ ոչ յատկացեալ Անտիոքայ՝ վերադիր "անաւրէն„ ածականով՝ — վասն զի յառաջ եկած է ἀσεβοῦςը ἀσεβοῦν կարդալէ։ Ուղղելի է՝ "վասն Եւպատորին Անտիոքայ՝ որդւոյ Անօրինին„։ — Հ. 12. "Որում բարձրանձն ասէին„. դարձեալ թարգմանութիւն Μάκρων յատուկ անուան։ — Հ. 15. "Ընդելանէին ընդելուզանէին փախուցանել զնոսա յԵրուսաղէմէ„։ "Ընդելուզանէին„ ուղղելի է 'ընդելուցանէին, ինչպէս ունին Zn. բնական է այսու խօսքն անիմաստ

ըլլալէ չի դադրիր, քանի որ Հայը ἐγύμναζον ի անտեղի ստրկական թարգմանութիւնը կ՚ընծայէ եւ ամբողջ նախադասութիւնը կը յեղաշրջէ, մինչդեռ ամէն բան ի կարգի կ՚ըլլայ, եթէ ἐγύμν. 'Նեղել, թարգմանենք. ἐγύμναζον τοὺς Ἰουδαίους, καὶ τοὺς φυγαδευθέντας ἀπὸ Ἱεροσολύμων προσλαβόμενοι = "Նեղէին զՀրեայս եւ զփախուցեալս յԵրուսաղէմէ ընդունէին": — Հ. 16. "Զի ինքեանք կանխեսցեն հարկանել զամուրսն Եդովմայեցւոց": Յուն. ἐπὶ τὰ τῶν Ἰδουμαίων ὀχυρώματα ὥρμησαν = "յարձակէին ի վերայ ամրոցացն Եդովմայեցւոց": Հայուն սխալը յայնմ է, որ ἐπὶ հայցականով՝ վախճանական (final, որպէս զի) շաղկապ նկատած է, մինչդեռ հոս իբր նախադրութիւն գործածուած է եւ կախում ունի ὥρμησαν է: — Հ. 22. "Արշաւեցին", փոխ. "էառ գրաւեաց": Դիւրաւ կը շփոթուին κατελάβετο = էառ եւ κατεβάλετο = յարձակէր: — Հ. 28. "Եւ նոքա կողմանքն երկոքին ընդ միմեանս խառնէին", փոխ. "ոմանք յերաշխի կալեալ": Յունարէն բնագրին ἔγγυον բառը կարդացած է ἐγγύς = մերձ. եւ այս գաղափարը բացատրած է "ընդ միմեանս խառնէին" խօսքով: Այս սրբագրութեան հետ պէտք է ջնջել նաեւ "կողմանքն երկոքին", վասն զի հեղինակը Հրեաներն ու հեթանոսներն իրարու կը հակադրէ այն իրարու հակառակ պատճառներուն տեսակէտէ (οἱ μὲν — οἱ δὲ), որով երկու կողմերն ալ յաղթութեան յոյս ունէին:

ԺԱ, 11. «Հազար հեծեալ ի վերայ հազարացն». լաւագոյն է a. «վեց հարիւր հեծեալ ի վերայ հազարացն», յունաբան ասութիւն մը, զոր թարգմանիչն հայացուցած է նմանելով նոյն իսկ χίλιοι անեզական ձեւին. փխ. «իսկ հեծեալս՝ հազար վեց հարիւր» = ἱππεῖς δὲ ἑξακοσίους πρὸς τοῖς χιλίοις: — Հ. 14. «Ցղեաց զկնի նորա» փխ. «Հաւանեցոյց» = ἔπεισε. Հայը կարդացած է ἔπεμψε. — Հ. 14. «Ի վերայ ամենայն իրաւանցն». բառական թարգմանութիւն յունարէն ἐπὶ τοῖς δικαίοις (հմմտ. Նաեւ ԺԳ 23) ասութեան փխ. «արդար դաշամբք»: — Հ. 15. «Վասն աւգտի ուխտի խորհրդոցն հասարակաց» Յուն. τοῦ συμφέροντος φροντίζων = «զմտաւ ածեալ զաւգուտն»: Աւելորդ է «ուխտի» եւ արդէն bo չունին. իսկ «խորհուրդ» թարգմանութիւնը ծագած է φροντίζωի ընդունելութիւնը՝ φροντίςի յոգնակի սեռականին հետ շփոթելով, թէեւ վերջինս պիտի ըլլար *φροντίδων, հմմտ. վերը Թ, 21. — Հ. 16. «Առ գունդն», τῷ πλήθει σου = «Առ ժողովուրդն», հմմտ. վերը՝ Թ, 39. — Հ. 26. «Մտադիւրագոյնս շրջեսցին, աւգնականութիւն գտեալ զիւրեանց աւրինացն». յուն. ἡδέως διαγίνωνται πρὸς τὴν τῶν ἰδίων ἀντίληψιν. Հայն առանց միտ դնելու տիրող յունաբանութեան բառական կը թարգմանէ. διά + γίγνομαι = շրջիմ. ἀντίληψις = 1. Գրաւումն: 2. Հոգ: 3. Աւգնականութիւն, իսկ

διαγίγνομαι πρός τι = գալ զկնի։ Ուրեմն
«մտադիւրագոյնս տացեն զանձինս ի խնամս գոր-
ծոց իւրեանց»։ — Հ. 30. «Չեռն տուեալ
լերի. դաշինս հաստատեալ թողութեան,
դիւրութեան, քաղցրութեան»։ Խօսք-
կրնայ նաեւ իբր կրկին թարգմանութիւն նկա-
տուիլ, վասն զի «ձեռն տուեալ լերի» բառա-
կան թարգմանութիւն է ὑπάρξει δεξίαι, զոր
ապա ըստ իմաստին կը հայացնէ. «դաշինս (խա-
ղաղութեան) հաստատել»։ Իսկ բացատրիչ երեք
գոյականները Հայը դրած է բնագրին ἀδείας ը
շփոթելով ἡδύς-ἡδεῖαι հետ եւ վերջնոյս պա-
նազան նշանակութիւնները թուելով։ Տեղւոյս
ուղիղ թարգմանութիւնն է. «Դաշինս խաղա-
ղութեան հաստատեալ լերի յապահովս արա-
րեալ...» = ὑπάρξει δεξία μετὰ τῆς ἀδείας. —
Հ. 34. «Գլխաւորք» փոխ. «Հրեշտակք», վասն
զի այս իմաստով գործածուած է հոս πρέσβυται.
ԺԲ, 2. «Քաջեանն» ὁ τοῦ Γενναίου, յա-
տուկ անուան թարգմանութիւն։ — Հ. 5.
«Վասն անարէն խակութեան վնասին», փխ.
«վասն անագորոյնութեանն». ὠμότητα = 1.
խակութիւն նիւթական. 2. փոխաբերաբար
կարծրութիւն, անագորոյնութիւն։ — Հ. 8.
«Հաս նա ի վերայ Յամնէացւոցն» փոխ. «Զգա-
ցեալ եթէ Յամնէացիք եւս...»։ Ժ, 22. Մի-
շուած սխալն է։ — Հ. 13. «Դեկասպ անուն»
= ὄνομα δὲ Κάσπιν. Յունարէն δὲ շաղկապը
անուան մաս համարած է թարգմանիչը։ —
Հ. 24. «Զամենեսին զնոսա ողջս բովանդակս

փոխանակ միոյ գլխոյս իմոյ ի ձեզ արձակեցից„: կը թուի ինձ թէ Հայը յուն. ἀλαγηθῆναι բառին մէջ տեսած է ὅλος (= ողջ բովանդակ) մինչդեռ Հեղինակը կ՚ըսէ. "Ամենեւին իսկ անողջք գտանիցին ի նոսա, եթէ մեռայց„, յուն. καὶ τούτους ἀλογηθῆναι συμβήσεται, εἰ ἀποθάνοι. — Հ. 27. "Հռովսաղեցիք բա-զումք„: Յատուկ անուն կարծած է յուն. νεα-νίαι... ῥωμάλεοι = "երիտասարդք կորովիք„: — Հ. 38. "Սոդոմ„. Հայը εἰς Նախադրու-թեան վերջին բաղաձայնը կցած է անմիջապէս յաջորդող Ὀμολλαμ անուան. իսկ Սոդոմ ձեւը կրնայ թէ թարգմանչին եւ թէ գրչագիրներու գերզգօնութեան կամ անմտադրութեան ըն-ծայուիլ: — Հ. 39. "Գային ընդ կողմն Հրէաստանի„, յուն. ἦλθον οἱ περὶ τὸν Ἰούδαν = "որ շուրջ զՅուդայիւն էին„: Ἰούδα եւ Ἰου-δαία անուններուն նմանութիւնը եւ ἐπὶ տար-բերակը (19, 62, 64, 93, ald) փխ. περὶ կրնան շփոթութեան պատճառ եղած ըլլալ: — Հ. 43. "Քաջութեամբ խորհրդով„, յուն. κατ᾽ ἀνδρολογίαν. Հայը շատ անյաջող ստու-գաբանած է. ἀνδρία = քաջութիւն + λόγος = խորհուրդ. փխ. առն առն, viritim:

ԺԴ, 1. "Դէպ եղեւ առ ժամանա-կաւքն Յուդայ„, յուն. προσέπεσε τοῖς περὶ τὸν Ἰούδαν = "Լուր եղեւ առ Յուդայեանս„: Սխալը շատ դիւրաւ կը մեկնուի. προσπίπτειν = 1. Դէպ լինել. 2. Լուր լինել. իսկ περὶ Հայցականով կը ցուցնէ նաեւ անորոշ ժամա-

նակ. հմմտ. περὶ τὰ Μηδικά, Thuc. 3, 89. — Հ. 8. "Ուր հուրն սրբութեան կայր եւ աճիւնն„ փխ. "որոյ հուրն սուրբ էր եւ աճիւնն„. յուն. οὗ τὸ πῦρ ἁγνὸν ἦν καὶ ἡ σπόδος. Հայն հոս ալ բազմիմաստ բառերու զոհ եղած է. οὗ = ուր, որոյ. ἦν = էր, կայր։ — Հ. 22. "Դաշինս կռէր, եւ յառնուլ առնոյր զամուրսն„։ Անշուշտ չգիտնալով որ յուն. δεξιὰν ἔδωκεν, ἔλαβεν = "ետ զաջն եւ էառ„ բացատրութիւն մըն է անբաժան "դաշինք կռել„ իմաստով՝ կ'անջատէ ἔλαβεν եւ այսու ինքնահնար ու հակապատմական իրողութեան մը կը յանգի։

ԺԴ, 1. "Դէպ եղեւ„, յուն. προσέπεσε. հմմտ. ԺԳ, 1. — Յունարէն բառն սխալ թարգմանելով նաեւ անոր անուղղակի խնդիրը՝ τοῖς περὶ τὸν Ἰούδαν բոլորովին այլափոխած է. "Ի վերայ Եբրայեցւոցն" փխ. "Լու եղեւ առ Յուդայեանս„։ — "Ընդ երեքքաղաքեան նաւահանգիստ„ թարգմանութիւն յուն անուանս διὰ τοῦ κατὰ Τρίπολιν λιμένος։ — Հ. 5. "Ի սկզբանէ յաւիտենից„, փխ. "յաւիտեանս„, յուն. ἄχρι (մինչեւ) շփոթուած է ἀρχή հետ (սկիզբն)։ — Հ. 17. "Նիզակակցաց յանզգաստութենէ„, յուն. διὰ τὴν αἰφνίδιον τῶν ἀντιπάλων ἀφασίαν = "վասն յանկարծակի խռովութեան պատճառելոյ ի թշնամեացն„՝ Յուն. ἀντι + πάλων մեկնած է Հայը՝ "որ ընդդէմ թշնամեաց կռուին„ = Նիզակակից մինչդեռ բարդութեան իմաստն է "որ ընդդէմ մեր կռուին„ = թշնամի։ Իսկ անզգաստու-

թիւն„, որ ուղղելի է անզգայութիւն (այսպէս ունի a), չափազանց ստրկօրէն կը ներկայացնէ “ἀφασίαν„ = անխօս, անզգայ, շփոթութիւն, խռովութիւն: — Հ. 19. “Տալ եւ առնուլ եւ կռել դաշինս„. Յունաձեւ ոճ, Համմտ. ԺԳ, 22: — Հ. 23. “Զայն որ զխառնիճաղանճ զաւրն յինքն կուտեալ էր„: Նմանողութիւն յունարէն բաժնուած յօդին. τοὺς δὲ συναχθέντας ἀγελαίους ὄχλους: — Հ. 23. “Հաստատեաց„. յուն. εὐστάθησεν = “բարւոք կայր„ կը կարդայ ἐστάθησεν. — Հ. 25. “Ընտանեցաւ„ (ընդ Նիկանովրայ). յուն. ἐκοινώνησε βίου. Կը կարծեմ որ Հայն այսպէս տրամաբանած է. “բաժանորդ լինէր կենաց (Նիկանովրայ՝ Յուդա) = ընտանենայր„ փխ. “վայելէր կենաւք„: — Հ. 30. “Շատ զոք ընդ իրեարս (ab միմեանս) շփոթեաց„ փխ. “ոչ սակաւս յիւրոցն հաւաքեաց„: Յուն. συστρέφω = 1. Շփոթեմ, խռովեմ. 2. Հաւաքեմ: — Հ. 38. “Զի յառաջ (boZn յառաջին) ժամանակի անդ զանխառն զանապական աւրէնսն՝ աւրինադիր լինէր հրէութեան„. յուն. “ἦν γὰρ ἐν τοῖς ἔμπροσθεν χρόνοις τῆς ἀμιξίας κρίσιν εἰς ἐνηνεγμένος Ἰουδαϊσμοῦ„: Կնճռոտ յունաբանութիւն մըն է, զոր Հայն ի զուր աշխատած է լուծել. τῆς ἀμιξίας սեռականը (genetivus qualitatis) բաժնելով χρόνοις է կը լծէ κρίσινի (զանխառն աւրէնս), եւ զայս εἰς + φέρωի հետ կը թարգմանէ. աւրինադիր լինէր. փխ. “Զի յառաջին ժամանակս

անկմանն (անմիաբանութեանն) ձեռն եդեալ էր պաշտպանել հրէութեան„: — Հ. 44. "Եդ զսուսերն եւ չոգաւ զիւրովին„. Դուրեան, էջ 251 կը դիտէ. "Սխալ թարգմանութիւն. յուն. "անկաւ ի միջի անդ ի դատարկ տեղւոջն„: Հաւանաբար շփոթութիւն իմաստից, զի κενέων = 1. պարապ տեղ. 2. սնակուշտ, կող„: Աւելցնենք միայն, որ աւելի ուղիղ պիտի ըլլար. "անկաւ ի մէջ անդր ի դատարկ տեղին„: — Հ. 46. "Զնոյն հատուցումն հատուսջիր դու նմա„. յուն. "ταῦτα αὐτῷ πάλιν ἀποδοῦναι„. Դուրեան, էջ 251. "Չէ հասկցուած. ուղղելի "զսոյնս (= զաղխս իմ) հատուսջիր դու ինձ„: Հայն մտադիր չէ եղած, որ խօսքն անուղղակի է եւ αὐτῷ առաջին դէմքը կը յարաբերէ:

ԺԵ, 2. "Մի այդպէս... կատարեր զկամս քո„. յուն. "μηδαμῶς οὕτως... ἀπολέσῃς = մի այդպէս սպանցես զմեզ„: Շփոթութիւն ἀπολέσῃς-ի (ἀπόλλυμι) եւ ἀποτελέσῃς-ի (կատարել): — Հ. 20. "Այլ իբրեւ կողմանք զաւրացն երկոցունց ի միմեանս հասանէին„, փխ. "իբրեւ կուռնդք թշնամեացն առ միմեանս գային„: Յուն. "καὶ ἤδη συμμιξὲντων τῶν πολεμίων„ երկդիմի է, բայց Հ. 26. համարէն կը ճշդուի, ուր Հրեայք եւ թշնամիք (կողմանք զօրացն երկոցունց) չէ որ "ի միմեանս հասանեն„, այլ թշնամիներու գնդերն: — Հ. 33. "Զանմտութեան բազուկն„. յուն. τὰ δὲ ἐπίχειρα τῆς ἀνοίας.

Այլաբանօրէն կիրարկուած այս բառերուն ստրկական թարգմանութիւնը կ՚ընծայէ Հայը միւս. «զվարձս անիրաւութեանն»: —

Յունարէն բնագրի մը նպաստաւոր ապացոյցներուս ճնշիչ ծանրութիւնը կարելի չէ հակակշռել այնպիսի ընթերցուածներով, որոնք ասորի կամ լատին աղբիւր մատնանշէին, վասն զի հայերէն թարգմանութեան մէջ ոչ մէկ առեղծուածային կամ սխալ ընթերցուած Ասորի կամ Լատին նախաբնագրով կը մեկնուի: Իսկ բնագրաքննական տեսակէտէ չափազանց դոյզն կռուան կը մատուցանէ Հայը, զինքն Ասորւոյն եւ Լատինին հետ աղերսի մէջ դնելու: Կան, այո՛, տեղիքներ ուր թէ Հայը եւ թէ Ասորին միեւնոյն կերպով հասկցած ու թարգմանած են իրենց յունարէն երկդիմի բնագիրը: Այսպէս, Ա, 18. ἄγειν ... τὸν καθαρισμὸν τοῦ ἱεροῦ կը թարգմանեն Հայ եւ Ասորի. «Սրբել զտաճարն», որ յինքեան ճիշդ է (հմմտ. Laqueur R. Kritische Untersuchungen zum 2. Makkabäerbuche 1904, էջ 56—57), բայց տեղւոյն աւելի համաձայն իմաստն է. «կատարել զտաւն սրբութեան տաճարին»: — Ա, 34. ἱερὸν ἐποίησε = Հայ եւ Ասորի՝ «տաճար շինեցին»: — Գ, 13. ուր թէ Հայը եւ թէ Ասորին «Եռանդ» գաղափարին կը ձուլեն՝ ἀκμή τις ... καὶ πρόσβασις: — Թ, 29. παρακομίζετο = Հայ. «առեալ տանէր», Ասորի. «առնոյր զի տարցէ ընդ իւր»: Բայց այս եւ նման քանի մը տեղիքներ արդէն առանց բռնազբօսութեան

յունարէն աղբիւրի կ՚առաջնորդեն զմեզ, նմանապէս երբ Հայը Վուլգատայի հետ Ա, 21. "Քահանայ„ կը թարգմանէ, չի նշանակեր որ Վուլգատայ ունի առջեւը. երկուքն ալ յունարէնով կը մեկնուին։ Իսկ երբ Հայը, Ասորին եւ Վուլգատայ Դ, 45. Ը, 20. ԺԲ, 39 իրարու կը համաձայնին հակառակ մեր ձեռքը հասած յունարէն բոլոր ձեռագիրներու, ոչինչ ընդդէմ է, որ առանց երեքին մէջ փոփոխակի կախում հուշակելու, ընդունինք հասարակաց ընթերցուածները պարունակող յունարէն օրինակին կորուստը։ Մեր ապացոյցները հերքելու կամ մեր հանած եզրակացութիւնը՝ Ասորւոյն կամ Լատինին նպաստաւոր կերպով եղանակաւորելու համար հարկ էր նոյնքան թուով ընթերցուածներ մէջ բերել, որոնք Հայուն եւ՝ կամ Ասորւոյն կամ Վուլգատայի մէջ միայն գտնուին։ Արդ մէկ տեղիք (Դ, 8. Հայ եւ Ասորի զանց կ՚առնուն δὲ ἐντεύξεως) միայն Ասորւոյն, երկու տեղիք ալ (Ժ, 18. "ոմանք„. Վուլգ. quidam. Յուն. οὐχ ἐλάττον τῶν ἐννοχιςχιλίων = ոչ նուազ քան զինն հազար։ — ԺԳ, 4. Վուլգ. եւ Հայ զանց կ՚առնուն՝ ἀγαγόντες αὐτὸν εἰς Βέροιαν = ածեալ զնա ի Բերոյա) միայն Վուլգատայի հետ հասարակաց ունի Հայը։ Գուցէ հոս առարկուի Ծուրացիք, Շմաւոն անուններու ասորաձեւ կիրարկումը։ Բայց երբ մտածենք, որ Ս. Գրքի անունները ազգին մէջ ասորական ձեւով մուտ գտած էին ի հնուց, երբ Ս. Գրքի ընթերցուածները ասորերէն կը կատա-

րուէին, պիտի չզարմանանք որ Հայ Թարգմանիչը յունարէն բնագիր ունենալով հանդերձ իր առջեւ՝ անուններու ընդհանրացած ձեւերն ալ երբեմն գործածէ:

Այսպէս ուրեմն հակառակ-ապացոյցներու գրեթէ բացարձակ պակասութեամբը մեր ապացոյցներուն ոյժը կը կրկնապատկուի: Բաց աստի կրնայինք բնագրաքննական համեմատութիւններու անծայր տողանով մը դրականօրէն զգալի ընել Հայուն անաղերս անկախութիւնը թէ Ասորիէն եւ թէ Լատինէն, բայց հայերէն բնագրին ո՛չ լուսաբանութեան եւ ո՛չ ալ սրբագրութեան ծառայող աւելորդ ծանրաբեռնում պիտի ըլլար ուսումնասիրութեանս, քանի որ մեր պաշտպանած կարծիքը առանց անոր ալ անսասան ամրութիւն ունի:

## § 5. Հայերէն Թարգմանութեան Սկզբնագիրը:

Լեզուէն վերջ ամէնէն աւելի վիճաբանուած հարցն է Սկզբնագրի հարցը: Քանի որ Ս. Գրքի յունարէն թարգմանութիւնը այլ եւ այլ խմբագրութեանց ենթարկուած է, ինքնին կը ծագի քննելի հետաքրքրական նիւթ մը. այն խմբագրութիւններէն ո՞րը Ս. Գրքի հայերէն թարգմանութեան հիմ եղած է: Այս մասին կարծիքներ չեն պակսիր եւ այն՝ ի հարկէ իրարամերժ կարծիքներ, որովհետեւ քննիչները

աւելցնել նաեւ Հայուն այն տեղիքները՝ որոնք Աղեքսանդրեան խումբին պատկանող թիւ 52, 55, 56, 62, 106 ձեռագիրներէն միոյն կամ միւսին կը համաձայնին։ Հայ եւ թիւ 52՝ Գ, 27. չունին πρὸς τὴν γῆν։ — ԺԲ, 15. կը յաւելուն “Որդւոյ Նաւեայ„։ — Հ, 17. “Հինգհարիւր„ = πενταχοσίους, այլ՝ “Եւթն հարիւր„ ἑπταχοσίους։ — ԺԵ, 19. չունին՝ “κατειδημμένους։ — Հայ եւ թիւ 55՝ “առաքեցին„ = ἐξέπεμψαν, մինչ թիւ 19, 62, 64, 93 ἐξεπέμψεν. Ճիշդը՝ ἐξέπεσεν։ — ԺԲ, 22. չունին՝ βλάπτεσθαι։ — ԺԳ, 24. “Գերարայ„ = Γεραρήνων, փոխ. Γερρήνων։ — Հայ եւ թիւ 56՝ Գ, 6. “գանձուցն„ = χρημάτων։ — Ե, 14. “կոտորեցին„ = κατεσφάγησαν, փոխ. κατεφθάρησαν։ — Հայ եւ թիւ 62՝ Ա, 23. չունին οἶτε ἱετεῖς։ — Հայ եւ թիւ 106՝ Ե, 26. տարածեալ դիաթաւալ կացուցանէին„ = κατέστρωσαν, փոխ. κατέστρωσε։ — Թ, 18. “աւրինակաւս այսուիկ„ = τὸν τρόπον τοῦτον։ — Ժ, 7. չունին ὕμνους ἀνέφερον։ — Ժ, 10. “ընդ քաղաքսն„ = τὰ τῶν πόλεων, փոխ. πολέμων։ — ԺԲ, 33. “չորս հազարաւք„ = τετρακισχιλίους, այլ՝ τετραχοσίων։ — Այս տեղիքները սակայն Լա Կրոզեան կարծիքն ստուգութեան բարձրացնելու համար տկար են, վասն զի անհամեմատ աւելի բազմաթիւ են այնպիսի տեղիքներ, ուր Հայը Աղեքսանդրեան խումբէն շեղելով կը մերձենայ ուրիշ օրինակներու։

Աւելի կողմնակից ունի եւ, կարելի է ըսել՝ ընդհանրացած է սա կարծիքը, թէ Հայուն սկզբնագիրը Վեցիչեան խմբագրութեան կը պատկանի: Տարակոյս չկայ, որ Վեցիչեան երանգաւորում մը ունեցած է նա, եւ ասոր հետեւութեամբ Հայը՝ Cod. Ven. ի, որ Վեցիչեանի խմբագրութիւնը կը բովանդակէ, կը համընթանայ տեղիս տեղիս. Բ, 5 “ի տեղի անդր„ = εἰς τὸν τόπον V, այլք զանց կ'առնուն: — Գ, 29. Հայը կը կարդայ. “Սուտրատաւ (ուղղելի ըստ aի. Սուստրատոս) կայր ի վերայ„, եւ այս կը համաձայնի V ի վրիպակին. Σώστρατος δὲ κρατήσας, մինչ այլք ունին. Σώστρατος δὲ Κρατήτα = “իսկ Սոստրատոս զԿրատէս...:„ — Ե, 13. Հայ եւ V. զանց կ'առնուն ἀνδρῶν, բայց անհրաժեշտ է, վասն զի հեղինակը զուգահեռաբար կիներ եւ այրեր կը յիշէ: — Ը, 19. “Զսատակումն„ = τὴν... ἀπόλειαν. այլք աւելի ուղիղ՝ ὡς ἀπώλοντο = “զիարդ սատակէին„: — Ը, 28. Հայ եւ V. զանց կ'առնուն καὶ τὰ παιδία: — Թ, 9. “յաչաց = ἐκ τῶν ὀφθαλμῶν V, այլք “ἐκ τοῦ σώματος = ի մարմնոյ„: — ԺԳ, 40. Հայ եւ V “ասաց„ = ἔλεγεν այլք՝ “ἔδοξε = համարեցաւ„: — Այս համեմատութիւններն եթէ մէկ կողմանէ կ'առաջնորդեն զմեզ Վեցիչեանին ընտանի սկզբնագրի մը, միւս կողմանէ անոնց թիւը կը ցուցնէ, թէ ճշմարտութենէ հեռու չափազանցութիւն մըն է Դր. Կարլ Շտայէրնագլի խօսքը. ‘Մեզի հասած Հայե-

րէն թարգմանութիւնը ստրկօրէն կը հետեւի վեցիջեանի„ (Dr. Karl Steuernagel, Lehıbuch der Einleitung in das Alte Testament, Tübingen 1912, էջ 58)։

Ամէնէն աւելի աչառու է Հայուն՝ Ղուկիանեան խմբագրութեան (22. 19, 62, 64, 93) հետ ցուցուցած աղերսը։ Հասարակաց տեղիքներն գրեթէ այնչափ բազմաթիւ են որչափ Աղիքսանդրեան եւ վեցիջեան ընթերցուածներն ի միասին առեալ. Ա, 9. “Քասղեւ„ = χασλεῦ 19, 93, այլք՝ χασελεῦ։ — Ա, 13. “Անանեայ„ = τῆς Ἀναναίας 19, 55, 93, այլք՝ τῆς Ναναίας։ Գ, 15. εἰς οὐρανὸν (յերկինս) չունին՝ Հայը, 19, 62, 93։ — Դ, 22. “Սքանչելեօք„ = θαυμασθείς 19, 62, 64, 93, այլք՝ παραδεχθείς = “ընկալեալ եղեւ„։ — Դ. 31. “զնոսա„ = τούτους 19, 62, 64, 93, այլք՝ τὰ πράγματα = “զիրսն„ — Դ, 34. “Իբրեւ եհան„ = ἐξέλθοντα 19, 52, 62, 64, 93, այլք չունին։ — Ե, 8։ “Ընդունէր„ = ἔλαβεν 55, 64, այլք՝ ἔτυχεν, որ թէեւ նոյն իմաստը կու տայ, բայց հայը դժուարաւ թէ զայս ունէր աչքին առջեւ, վասն զի τυγχάνειν արտասովոր հայցական խնդրով փոխ. սեռականի (genetivus rei) զինքն անշուշտ պիտի մոլորցնէր։ — Ե, 16. “եւ յայլոց քաղաքաց„ = καὶ πόλεων 64 եւ Ասորին, մինչ այլք զանց կ՚առնուն. զարմանալի չէ, որովհետեւ Ասորին՝ 19, 64, 93 ձեռագիրներու պարունակած Ղուկիանեան բնագրէն բխած է.

(E. Kautzsch, Die Apokryphen und Pseudepigraphen des Alten Testamentes, I, Tübingen 1900, էջ 33). Հայուն եւ Ասորւոյն զուգադիպութիւնը ապահովապէս միջնորդական է եւ ոչ ուղղակի։ Այս կ'արժէ նաեւ յաջորդ դէպքերու մէջ։ — Զ, 20. δὲ = «իսկ» զանց կ'առնուն Հայը, 62, 93։ — Է, 8. ὡς ὁ πρῶτος = «իբրեւ զառաջինն» զանց կ'առնուն Հայը, 19, 62, 64, 93. — Է, 34. ἐπαιρόμενος χεῖρα = «դու որ զձեռսդ եդեր» զանց կ'առնուն Հայը, 19, 62, 93։ — Ը, 10. «Հարիւր» = ἑκατόν 19, 62, այլք՝ δισχιλίων = «երկու հազար»։ — Ը, 18. «Ի մի շունչ ոգւոյ» = ἐν πνεύματι 19, 64, 93, այլք՝ ἑνὶ νεύματι = «ի քթթել ական»։ — Ը, 28. «եւ» (ապա) = καὶ 62, 64, 93. այլք չունին։ — Թ, 28. «յօտար լերինս» = ἐπὶ ξένους ἐν τοῖς ὄρεσιν 19, այլք՝ ἐπὶ ξένης ἐν τ. ὄ. = «յօտարութեան, ի լերինս»։ — Ժ, 5. «որ անուանեալ կոչի» = λεγομένου 19, 62, 64, 93, այլք զանց կ'առնուն։ — ԺԱ, 29. «Իջանել առ Հրեայսն» = γίνεσθαι πρὸς τοῖς Ἰουδαίοις 19, 62, 93. այլք՝ γίνεσθαι πρὸς τοῖς ἰδίοις = «գալ զսեպհական գործովք»։ — ԺԱ, 31. δαπανήμασι = «պիտոյս» զանց կ'առնուն Հայը, 19, 62, 64, 93։ — ԺԲ, 10. «իբրեւ» = ὥσει 19, 62, 64, 93, այլք՝ οὐκ ἐλάττους = «ոչ նուազ»։ — ԺԲ, 18. οὐ զանց կ'առնուն 62, 93, հաւանաբար նաեւ Հայը չէ ունեցած վասն

զի կը թարգմանէ, "աւելի քան" փոխ. "ոչ նուազ քան" = οὐχ ἐλάττους ինչպէս ունին այլք: — ԺԲ, 35. "Տովբեկենացւոց" Յուն. τοῦ Βακχηνόρος. Դուրեան (էջ 251) կը դիտէ. "Յունական սեռական յօդը յատուկ անուան մաս կարծուած է, փոխ. ըսելու "Բակենորայ": Հնարաւոր է, բայց ոչ իրական. Հայուն "Տովբեկենացւոց" ձեւը՝ կախում ունի 19, 62, 64, 93. ձեռագիրներու Τωβίηνων տարբերակէն. զոր աւելի անաղարտ պահած է a "Տովբէացւոց" ընթերցուածին մէջ:

Պարզ է որ Հայուն սկզբնագիրը միտութիւն կը ցուցնէ դէպի Ղուկիանեան խմբագրութիւն, առանց սակայն անոր հետ նոյնանալու. Ղուկիանոսով եւ Հեսիւքիոսով Հայուն բոլոր տարբերակներն իրենց լուծումը չեն գտներ ինչպէս կ'ուզէ Բերթոլդ (Berthold, Einleitung in d. A. T. Հ. II, էջ 560): Բացի Հայուն Աղեքսանդրեան եւ Վեցիջեան ընթերցուածներէն, որոնք ի զուր կը փնտռենք Ղուկիանոսի քով, նաեւ Թ. 71 ձեռագիրը, որ յունական ինքնուրոյն խումբի մը ներկայացուցիչն է, կարեւոր դեր կը բռնէ Հայերէն թարգմանութեան մէջ: Ի մասնաւորի պակասաւոր բառերու կամ խօսքերու համար անոր օժանդակութիւնն անգնահատելի է: Այսպէս Հայն եւ 71 զանց կ'առնուն: — Զ. 31. οὐ μόνον τοῖς νέοις, ἀλλὰ καὶ τοῖς πλείστοις τοῦ ἔθνους τὸν ἑαυτοῦ θάνατον ὑπόδειγμα γενναιότητος καὶ μνημόσυνον ἀρετῆς καταλιπών = "Թողեալ զիւր մահն

օրինակ բարեաց եւ յիշատակ առաքինութեան ոչ միայն մանկտւոյն այլ եւ բազմաց յազգէ անտի»: — Է, 1. ἀθεμίτων = «անօրէն, պիղծ»: — Է, 27. τῇ πατρίῳ φωνῇ = «իւրեանց հայրենի բարբառովն»: — Ժ, 13. παρ' ἕκαστα = «մի մի իւրաքանչիւր»: — ԺԱ, 1. καὶ συγγενὴς καὶ ἐπὶ τῶν πραγμάτων = «եւ եղբայր (հմմտ. ԺԱ, 35) եւ ի վերայ իրացն արքունի»: — ԺԲ, 2. ὁ Κυπριάρχης = «Կիպրիարքէս»: — ԺԲ, 3. τὰ παρακατασταθέντα ὑπ' αὐτῶν = «պատրաստեալս յինքեանց»: — ԺԲ, 15. περὶ τὸν Ἰούδαν = «զՅուդայիւն»: — ԺԲ, 22. πρώτης = «առաջին»: — ԺԲ, 22. ἐπιφανείας = «տեսիլ»: — ԺԳ, 2. ἐπὶ τῶν πραγμάτων, հմմտ. ԺԱ, 1. — ԺԳ, 13. ἐξελθόντας κρῖναι τὰ πράγματα τῇ τοῦ κυρίου βοηθείᾳ. 14. δοὺς δὲ τὴν ἐπιτροπὴν τῷ κτίστῃ τοῦ κόσμου = «Ելեալ որոշել զիրսն Տեառն օգնականութեամբ: Յանձն արար զանձինս Արարչին աշխարհաց»: — ԺԳ, 7. λέγω δή: — Հ. 41. αὐλαίαν = «զգաւիթ»: — Հ. 43. ἀνδρείως εἰς τοὺς ὄχλους = «քաջութեամբ ի ժողովուրդն»:

Քանի որ ուրեմն Հայը թէ Աղեքսանդրեան, թէ Վեցիչեան, թէ Ղուկիանեան ընթերցուածներ կը ներկայացնէ, ապարդիւն է պնդել թէ արտաքսապէս միոյն կամ միւսին վրայէն կաղապարուած է: Մակաբայեցւոց հայերէն թարգմանութեան սկզբնագիրը մեզի ծանօթ ոչ մէկ

խմբագրութեան մէջ կը գտնենք։ Հայն ունեցած է առանձնայատուկ բնագիր մը՝ խառն նկարագրով, այսինքն մերթ մեզի հասած բոլոր խմբագրութիւններուն կը համընթանայ, բայց երբեմն ալ ինքնուրոյն եւ անկախ է։ Իր բերած նոր եւ մեծարժէք ընթերցուածներով կը գրաւէ միւս խմբագրութիւններուն ոչ թէ ստորակարգ այլ համակարգ հաւասարապատիւ դիրք մը։

## § 6. Սկզբնագրին արժէքը։

Շատ դժուար է ճշդել բնագրաքննական արժէքը յունարէն այն օրինակին, որուն վրայ աշխատած է Մակարայեցւոց հայ թարգմանիչը։ Դժուարութեան ստեղծիչն ինքնին թարգմանիչն է։ Թարգմանութեան արձակերասանակ արուեստը, որուն անձնատուր է Հայը, թոյլ տուած է իրեն յապաւումներու եւ յաւելումներու խիստ թանձր պատեանով ծածկել յոյն սկզբնագիրը եւ այսու անհետացնել շատ ընտիր տարբերակներ։ Բայց ջանանք թափանցել կեղեւը եւ գնահատել ամրածածուկ կորիզը։

Կարելի չէ ուրանալ որ Հայուն սկզբնագիրը պակասաւոր տեղիքներու հարստութիւն մը կը ծաւալէ, որուն ոչ մէկ խումբ կը հաւասարի։ Թէեւ թարգմանիչն ալ շատ յապաւումներու պատասխանատու է, բայց անիրաւ պիտի ըլլար ամէն բան թարգմանչին վրայ բառնալ։

Յունարէն Թ. 71 ձեռագիրը, որ այս կողմանէ ամէնէն աւելի կը մերձենայ Հայուն, իրաւունք կու տայ նմանութեան օրինօք շատ պակասաւոր տեղիքներ ենթադրել սկզբնագրին մէջ: Այս պարագան սակայն պէտք չէ զմեզ նախապաշարել անոր լաւութեան դէմ, որովհետեւ պակսածները մեծաւ մասամբ ընչին բառեր են եւ չեն կրնար հակակշռել ընտիր ընթերցուածները. այս իսկ պատճառաւ Թ. 71 ձեռագիրն ալ հակառակ իր պակասութիւններուն ընտիր օրինակներու կարգը դասուած է եւրոպացի քննիչներէ: Երբ մենք Հայուն սկզբնագիրն եւս նպաստաւոր գնահատութեան արժանի կը համարինք, կը յենունք եռապատիկ իրողութեան վրայ:

1. Հայը շատ ցանցառ կը համաձայնի միայն յունարէն ընդունուած բնագրին հետ այն պարագային, երբ քննիչները նախընտրութիւնը միւս խումբերուն կու տան. այսպէս՝ Ժե, 16. ԺԲ, 24: Նոյնքան ցանցառ կը հանդիպի որ թէ Հայուն եւ թէ յունարէն միւս խումբերուն տարբերակները յետադաս համարուին եւ նախադասուին յուն. ընդունուած բնագրին ներկայացուցածները (Ը, 33. Ժ, 10): Այս անհամաձայնութիւնը Հայուն ի կողմ կը վկայէ, վասն զի յունարէն ընդունուած բնագիրը կը ճանչցուի իբր սրբագրութեան կարօտ սխալաշատ հռովմէական օրինակ մը: Իսկ Հայուն սկզբնագիրն ասոր հետ աղերս չունի, ոչ միայն բաժանակից չէ անոր սխալներուն, այլ եւ անիկա

2. Բնագրին նախնական ձեւին վերակազմութեան մէջ մեծ ծառայութիւն կը մատուցանէ այնու որ իւր՝ Ե. դարու հին թարգմանութեան մը հեղինակաւոր ձայնը կը կցէ ուրիշ քանի մը խումբերու եւ ընդունուած բնագրէն շեղող տարբերակներու հարազատութեան պաշտպան կարծիքը, որ մինչեւ հիմայ առաւել կամ նուազ հաւանականութեան սահմանի մէջ էր, ստուգութեան կը բարձրացնէ։ Ա. 23. οἵ τε ἱερεῖς καὶ πάντες (= քահանայք եւ ամենքին) Հայր չունի։ Յետամուտ կարկտան մըն է կրկնագրութեամբ ծագած եւ բոլորովին աւելորդ. վասն զի սրբագիր հեղինակին արտայայտել ուզած հակադրութիւնը արդէն ամբողջ է. προσευχὴν δὲ ἐποιήσαντο οἱ ἱερεῖς... τῶν τὲ λοιπῶν ἐπιφονούντον. "աղաւթս առնէին քահանայքն... իսկ այլք զկնի կցէին։" Ուրեմն տրամաբանօրէն եւ քերականօրէն անտեղի է οἵ τε եւն յաւելուածը, որուն մասին արդէն Բիւհլէր եւս նկատած էր, թէ ոեւէ կերպով կարելի չէ պաշտպանել հարազատութիւնը (A. Büchler, Das Sendschreiben der Jerusalemer an die Juden in Agypten, MGWJ. 1897, էջ 535)։ Նոյն իսկ եթէ Հերկեննէի հետ յանձ առնունք կարդալ οἱ λευῖται (Herkenne H., Die Briefe zu Beginn des 2. Makkabäerbuches, Freiburg 1904, էջ 75), մեր մատնանշած անպատեհութիւնները չեն բարձուիր, եւ բաց աստի այս սրբագրութիւնը ձեռագրական հիմ չունի, մինչդեռ մեր կարծեաց նեցուկ են յոյն ձեռ. Թիւ 62 եւ

Հայ թարգմանութեան սկզբնագիրը։ — Ա, 31. «Զջուրն մնացեալ հրամայեաց Նեեմի զվիմաւքն արկանել»։ Առանց այլեւայլի նախընտրելի է այս ընթերցուածը, որ յոյն սկզբնագրին մէջ կ՚ենթադրէ փոխ. ընդունուած բնագրի κατασχεῖν-ին՝ նաեւ A. V. 62, 106 է յանձնարարուած καταχεῖν ձեւը. ապա թէ ոչ καὶ τὸ περιλειπόμενο ὕδωρ օդոյ մէջ առկախ կը մնայ, քանի որ զայս ἀνηλώθη ի խնդիր սեռի համարիլն շատ բռնազբօսիկ է եւ անբնական։ Հայուն «զվիմաւքն» թոյլ կու տայ λίθους է յառաջ ἐπὶ մը ներմուծել, զոր καταχεῖν բառն ալ կը պահանջէ (Herkenne, Անդ, էջ 77—78)։ — Գ, 6. ἐναρίθμητον, բոլորովին անյարմար ընթերցուած մըն է, որ քննիչներէն կը մերժուի. իսկ նախապատուութիւն կը ստանայ ἀναρίθμητον, զոր կը ներկայացնեն միւս բոլոր խումբերն եւ Հայը՝ իւր ոճով փոփոխելով, «զթիւ իսկ եւ զհամար ոչ մարթէ ոք ունել» = անթիւ անհամար 2 Մկ. Ա, 13. — Գ, 6. ἅπαντα = «զամենայն.» Միայն յուն. ընդունուած բնագրին յատուկ այս բառը անհարազատ յաւելուած մըն է, վասն զի թագաւորին նպատակն էր ոչ թէ «զամենայն գանձն» բռնագրաւել, այլ միայն այն մասը, որ տաճարին ծախքերը գոցելէ վերջ կ՚աւելնար, ինչպէս կը մատնանշէ սա խօսքը. καὶ μὴ προσήκειν αὐτὰ πρὸς τὸν τῶν θυσιῶν λόγον (Գ, 6)։ Հայն եւս զանց կ՚առնու ἅπαντα, միայն α կը կարդայ «զամենայն = զա̄մ», որ «զայն», ի (ταῦτα) աղաւաղումն է։ — Գ, 9.

"Քահանայապետն եւ քաղաքն ...ընկալան զնա„: Ընդունուած բնագիրն ուրիշ քանի մը 22·աց հետ ունի. "ընկալեալ եղեւ ի քահանայապետէն քաղաքին„ = ὑπὸ τοῦ ἀρχιερέως τῆς πόλεως, իսկ V. 55, 62, 64 եւ Ասորին կը ձայնակցին Հայուն. ὑπὸ τοῦ ἀρ. καὶ τῆς πόλεως. Այս վերջին ձեւն հարազատ կը համարին Գռիմ, Կաուչ (Անդ, մեկնութիւն տեղւոյս) Կնաբէնբաուէր (Knabenbauer J., Comm. in duos lb. Machabäorum, Parisiis 1907, 2 Mch. 39), վասն զի համեմատական առաւելութիւն կը վայելէ (հմմտ. նաեւ Դ, 22 ὑπὸ τοῦ Ἰάσωνος καὶ τῆς πόλεως) եւ առանց καὶ τῆς πόλεως անպէտ բացայայտիչ սեռական մը պիտի ըլլար: — Գ, 24. ὁ τῶν πατέρων = "Հարց„: Թէեւ ձեռագրական աւանդութիւնն միաձայն չի վկայեր ընդդէմ այս ընթերցուածին, սակայն ներքին պատճառներ՝ միանալով բաւական մեծաթիւ ձեռագիրներու (A. 19, 55, 71 եւն) այնպիսի ճնշում կը բանեցնեն, որ քննիչները գրեթէ միանուագ πατέρων կ'ուղղեն πνευμάτων. Այն ընտիր ընթերցուածն է որ կը գտնենք Հայուն քով. "Ոգւոց„: — Դ, 34. παρέκλεισεν. Նիզէ կը դնէ. Der allgemein überlieferte Text παρέκλεισεν ist schwerlich richtig; da der Lateiner peremit hat, so wird ἀπέκτεινεν herzustellen sein. Այս սրբագրութեան կը մղէ զմեզ նաեւ Հայը, վասն զի "խողխողեաց„ կը թարգմանէ, իսկ այս բառը՝ 1 Մկ. Զ, 1 գործածած է

անգամ մըն ալ ἀποκτείνειν ի համար։ Հայուն եւ Լատինին կը զուգընթանայ Ասորին։ — Ը, 23. Ἔτι δὲ καὶ Ἐλεάζαρον, παραγνοὺς τὴν ἱερὰν βίβλον = «Նոյնպէս եւ զԵղէազար (sc. 22. զօրավար կացուցանէր). ոչ ուղիղ ճանաչէր (սխալէր)»։ Իսկ Հայը կը կարդայ. «Բերեալ զսուրբ զԵզրեայ զմատեանսն առաջի ընթեռնոյր»։ Այս խորթ շարադասութիւնը, որ պատճառով Մակաբայեցւոց թարգմանչին չի պատկանիր, կը վերածեմ սա հեշտալուր ձեւին. «բերեալ Եզրայ զսուրբ մատեանսն՝ ընթեռնոյր»։ Ի բաց առնլով Եզրայ վրիպակը, որ մուտ գտած է նաեւ Վուլգատայի մէջ, փոխ. Եղիազարայ, Հայուն ընթերցուածն ընտիր է եւ կ՚ուղղէ ընդունուած բնագիրը։ Ասոր մէջ Ἐλ. անուան քովի ստորակէտով ἔτι δὲ καὶ Ἐ. կը կցուի Հ. 22ի իբր երկրորդական խնդիր սեռի τάξασι, բայց այս զօդումն քերականօրէն անարդարանալի եւ անյարիր է։ Հայուն սկզբնագիրը կը ջնջէ այս ստորակէտը, այսու Ἐ. կ՚անջատուի նախորդէն եւ կ՚ըլլայ ենթակայ հետեւորդ բային՝ παράγνους, որ նոյնպէս սրբագրութեան կարօտ է։ Յուն բառը կը նշանակէ «սխալ հասկնալ, ըմբռնել, ճանչնալ». այս արդէն աննպաստ դատավճիռ մըն է յուն. ընթերցուածին համար։ Հայուն «առաջի ընթեռնոյր»ն ի յառաջագունէ հարազատութեան դրոշմ կը կրէ եւ կը հաստատէ παραναγινώσκω միմիակ ընտիր տարբերակը (19, 62, 64, 95, Ald.)։ — Թ, 12. θνητὸν

ὄντα φρονεῖν ὑπερηφάνως. Սկզբնական կը թուի ἰσοθέα φρονεῖν տարբերակը, վասն զի ἰσόθεον՝ θνητὸν ի հետ կու տայ գաղափարներու հակադրութիւն եւ բառախաղ, որոնց հեղինակը նախասիրութիւն կը ցուցնէ, եւ բաց աստի ձեռագրական վկայութիւնն աւելի զօրաւոր է (19, 62, 93, V. Compl. Ասորին)։ Ասոնց համեմատ է Հայը. «Եւ մի՛ ի մարմինս մահկանացուս (= θνητὸν ὄντα) աստուածակերպ աւրինակ (= ἰσόθεον) բարձրանալ»։ — ԺԱ, 5. σταδίους πέντε (= վտաւանս հինգ)։ Այս չափը շատ քիչ է, այս պատճառաւ քննիչները σχοίνους տարբերակը (a. 106) կը նախընտրեն փոխ. σταδίους, վասն զի կը համապատասխանէ Բեթսուրայի՝ Երուսաղէմէ ունեցած հեռաւորութեան (հմմտ. Keil Carl Fr., Commentar über die Bücher der Makkabäer, Leipzig 1875, $11_5$)։ Հայը կը կարդայ. «իբրեւ ասպարիսօք հինգ»։ Հայ թարգմանիչն յուն. σταδίουςի համար կը գործածէ «վտաւան» (ԺԱ 9, 10, 16, 17, 29), ուստի պիտի չսխալինք, եթէ հաստատենք որ տեղւոյս «ասպարէզ» ընթերցուածն սկզբնագրին մէջ σχοίνους կ'ենթադրէ։ Բայց կ'ընդունիմ, որ Ս. Գրոց թարգմանիչներն ընդհանրապէս չափերու անուններն շատ անգամ խառն կը գործածեն, այնպէս որ ամէն բառ արտաքսապէս մէկ իմաստով չեն կիրարկեր։ — ԺԲ, 18. ἐκ τῶν τόπων. Հայը, 19, 62, 71, 93 զանց կ'առնուն. ամենայն իրաւամբ, կը դիտէ Գոլմ (անդ, էջ 178),

վասն զի խնդրոյ նիւթ բառերը յաւելուած են գրչագիրներու, որոնք ուզած են այսու արտասովոր ἐκλελύκοταν պայծառացնել: — Հ. 35. *Τῶν τοῦ Βακήνορος.* Նիզէ (անդ, էջ 114) կը գրէ. „Von einem Bakenor ist nie die Rede und der Name ist höchst selten. Sicherlich ist mit 16, 62, 64, 93 zu lesen: *Τουβιηνῶν* oder *Τωβιηνῶν*". Այս վկաներուն թուէն է Հայը, որուն Տովբեկենացւոց կամ Տովբէացւոց ընթերցուածն լաւագոյն ու հաւանաբար սկզբնական է: — ԺԳ, 24. *Γερρήνων:* Աշխարհագրական անուն բոլորովին անյարմար է տեղւոյս: Հայուն "Գերար„ ընթերցուածը, որ Գազայի հարաւարեւելեան կողմ գտնուող ծանօթ քաղաքն է, ընդառաջ կ'ելլէ քննիչներու բաղձանքին եւ կը զօրացնէ Թ. 55ի վկայութիւնը: — ԺԵ, 21. *τὸν κατόπτην:* Հայը, Ասորին, Վուլգ. ա. զանց կ'առնուն: Բառն հարազատ չի թուիր, վասն զի հեղինակն այլուր (Գ, 39. Է, 35) *ἐπόπτης* կը գործածէ, եւ այս իսկ պատճառաւ քննիչներն չեն վարանիր իբր յետսամուտ ջնջել զայն:

3. Սակայն Հայուն սկզբնագրին բուն արժէքն անգերազանցելի պայծառութեամբ կը փայլի հոն, ուր իւր մատուցած ընթերցուածները հակառակ միւս բոլոր խումբերուն՝ հարազատութեան իրաւունք կը վայելեն: Ընդունուած եւ միւս բնագիրներուն մէջ կան շատ տեղիքներ, որոնք մեկնողական խաչեր (crux exegetica) կը պարունակեն. Մեկնիչներն ամէն հնարաւոր փորձ ու առաջարկ կ'ընեն կնճիռը լուծելու, բայց այդ

բաւական չէ, վասն զի բնագրական հին վկաներու հեղինակութիւնն է որ այսպիսի տարակուսական խնդիրներ իրենց լուծման կը մերձեցնէ զգալիօրէն։ Այժմ շատ մեկնիչներ կրնան իրենց կարծիքներու համար կոչ ընել Հայուն սկզբնագրին։

Ա. 18. ἵνα καὶ αὐτοὶ ἄγητε τῆς σκηνοπηγίας. Նախադասութեանս թերի ըլլալն հաստատելու մէջ տարաձայնութիւն չկայ. տարաձայնութիւնը թերին լեցնելու զանազան փորձերով ծագում կ'առնու (տ. Herkenne, անդ, 69—70)։ Հայը՝ անթերի սկզբնագիր մը կը հանէ մեր առջեւ, որ բնագրական բաղձանքներու բաւարարութիւն կու տայ. «Զի եւ դուք արասջիք զայս իբրեւ զաւուրս տաւնիցն տաղաւարահարացն»։ Հայերէնի մէջ գրչագրական փոքրիկ վրիպակ մը ուղղելով, զաւուրս փոխ. զաւրէնս, կրնանք յունարէն բնագիրն, Հայուն վրայ հիմնուելով, այսպէս վերակազմել. ἵνα καὶ αὐτοὶ ἄγητε τὰς ἡμέρας σκηνοπηγίας τρόπον։ Միայն «տօնիցն» Հայուն աւելորդ յաւելուածն է, զոր նաեւ Բ. 16 կը կրկնէ։

Գ, 9. ἐφηβίαν = «երիտասարդական»։ Այս անտեղի ընթերցուածը միաձայնութեամբ արդէն կը մերժուէր եւ ստիպուած էր տեղի տալ ուղղագոյն ու սկզբնական ձեւին ἐφηβεῖον, որ բոլոր քննիչներու քով նախապատուութիւն կը վայելէր, առանց յունարէն ո եւ է ձեռագրով իսկ իւր օրինաւորութիւնն ցայժմ ապացուցանել կարենալու։ Հայը կը լեցնէ պակասը. իւր

«զկրկէսն». ընթերցուածը՝ ἐφηβεῖον միակ հարազատ ձեւին ծնունդն է։ Հ. 12 Նոյնը կը բացատրէ բնագրին աւելի սերտիւ կապուելով. «երիտասարդանոց»։ — Ը, 9. δυσμυρίων. Հակառակ այս ընթերցուածին, որ բոլոր ծանօթ խմբագրութիւններուն յատուկ է, Հայը կը կարդայ «քառասուն հազար»։ Հայուն ընթերցուածը յար եւ նման է 1 Մկ. 7, 39ի, ուր միեւնոյն պատերազմին վրայ է խօսքը։ Այս համաձայնութիւնը մեր ընթերցուածին սկզբնականութեան ի նպաստ կը խօսի, քանի որ Հայ թարգմանիչն ազատ է նպատակաւոր ներմուծումներու կասկածէն եւ Ա. եւ Բ. գրքերն իրարու հետ հաշտեցնելու դիտաւորութիւնն — զոր յաճախ կընար ի յայտ բերել այլուր — իրեն բոլորովին անծանօթ է։ — Ժ, 29. ἐφάνησαν ... καὶ ἀφηγούμενοι. Դիմաւոր բայի եւ ընդունելութեան καὶով շաղկապումն անչափ անկանոն է, որ քննիչներն առանց վարանելու կը ջնջեն καίը (Grimm, էջ 163)։ Թէ Հայուն սկզբնագիրն այս անկանոնութենէն ազատ էր, կը տեսնուի շարադասութենէն. ‘Երեւեցան ... եկին իջին գային խառնէին», ուր դիմաւոր բայաձեւերը թոյլ կու տային «եւ» մը, բայց Հայը չէ դրած, որովհետեւ հաւանօրէն չէր կարդար զայն իր յունարէն օրինակին մէջ։ — ԺԱ, 14. καὶ διότι καὶ τὸν βασιλέα πείσειν φίλον αὐτοῖς ἀναγκάζειν γενέσθαι: Տեղիք մըն է, յորում քերականական ձեւերը զիրար չեն հանդուրժեր διότι ... πείσειν ... ἀναγκά-

ζειν միանգամայն գոյութիւն չեն կարող ունե-նալ եւ այս պատճառաւ հարազատութեան կնիքէ մերկ են։ Այս անյարիր ընթերցուածն Հայուն անպատճառ առիթ պիտի ըլլար տարադէպ թարգմանութեան մը, եւ սակայն Հայն հոս շատ գոհացուցիչ է եւ բանաւոր. «Եւ թա-գաւորն եւս յանձն առ եւ զթագաւորին զմիտսն հաճել (այսպէս a, գ՛ր կը նախադասեմ փոխ. այլոց՝ «հաճեաց»ին) բարեկամ լինել ընդ նոսա» (= a փոխ. այլոց՝ «նմա»ին)։ Այս խօսքը — ի բաց առեալ «եւ թագաւորն եւս յանձն առ», որ հմ. 15ի ազդեցութեան տակ աչքի յառաջխաղացութեամբ ծագած կանխագրութիւն մըն է — յստակ կը պատ-կերացնէ յունարէն նախադասութիւնը. καὶ τὸν βασιλέα πείσειν φίλον αὐτοῖς γενέσθαι. Ուրեմն διότι եւ ἀναγκάζειν իբր յետսամուտ ջնջել կ'առաջարկէ Հայն ու այսու վերակազմել բնա-գրին նախնական ձեւը։ — ԺԱ, 21. Διοσκο-ρινθίου. Ամսանունս յառաջ կը բերուի իբր ապացոյց ընդդէմ մեր գրքին վաւերականու-թեան, քանի որ ներքին պատճառներէ մակե-դոնական ամսանուն մը կը սպասուէր հոս՝ ինչպէս հմ. 30, 33։ Շատ քննիչներ (Գրոտիոս, Վեռն-դորֆ, Ցէօքլէր եւն) փոխանակ աւանդուած անուան՝ սկզբնական ու հարազատ կը հռչակեն Δίου ձեւը, որ ներքին ու արտաքին պայմաններու գոհացում կու տայ եւ արդէն Διοσκορυνθίου անուան առաջին մասը կը կազմէ։ Հայ թարգ-մանութիւնն հոս ալ բնագրական հաստատ

հիման վրայ կը դնէ խնդիրը՝ Հայն ունի «յՈրմզդական տօնին»։ Մեր թարգմանչին սովորութիւնն է — որուն բազմաթիւ օրինակներն յետոյ — յունական դիցանուններն Հայոց սեպհական ձեւով ներկայացնել, արդ Որմզդական = Διοσ(υ), թէ հոս եւ թէ Զ. 2, ուր պարզ Διος ձեւը կը ցուցնէ որ հոս ալ «Որմզդական» դրուած է ոչ թէ փոխարէն Διοσχορινθίουι մը՝ այլ Διος(υ)ի։ Ցարակից «տօնին» լուրջ առարկութեան ոյժ չունի, վասն զի գուցէ թարգմանիչն, որ իւր ազգին մէջ Որմզդի անուամբ ամսոյ մը ծանօթ չէր, կարծած ըլլայ թէ Դիոս-Որմզդի մէկ տօնէն առնուած է թուականը։

Մակաբայեցւոց Բ. գրքին վիճական ընթերցուածներն ատոնցմով չեն սպառիր, սակայն այսքան կը զօրէ Հայուն վճռական ձայնը։ Համոզուած ենք որ Հայուն գործածած յունարէն օրինակը շատ աւելի ընտիր էր քան որ հոս կը պատկերանայ, բայց թարգմանչին ազատ պերճախօսութիւնն եւ հետեւաբար անհաւատարմութիւնը հետախաղաղ կը ծածկեն հետքեր, որոնց ի խոյզ կը խարխափին քննադատները։

## § 7. Հայերէն թարգմանութեան արժէքն ու որպիսութիւնը։

Թէեւ Լակրոզի «Թագուհի թարգմանութեանց» խօսքը ընդհանուր հաճութեան չէ

արժանացած, սակայն ամէն քննիչ, Ս. Գրքի ներածութեան ամէն հեղինակ՝ դրուատալից բառամթերք մը կը կիրարկէ, երբ կարգը կու գայ Ս. Գրքի հայ թարգմանութիւնը բնորոշելու, խղճամիտ խնամք եւ ամենաչնչին իրերու վրայ տարածուող հաւատարմութիւն կը փայլէ հոն։ Հայ թարգմանիչները՝ լիուլի հմուտ հայ եւ յոյն լեզուներուն, կարող եղած են ոչ լոկ — քիչ բացառութեամբ — ուղիղ իմաստին թափանցել, այլ նաեւ ուղիղ հայացնել, եւ որ աւելին է՝ կարող եղած են իրենց ոճը Ս. Գրքի մատեաններուն բովանդակութեան ու հեղինակ-ներուն համապատասխանող այնքան այլազան ոճերուն համաձայն եղանակաւորել, փոփոխել։ Երբ քոյր լեզու Յունարէնի՝ հայերէնը կը հա-մընթանայ անոր քայլ առ քայլ, բառ առ բառ մթինը՝ մթին, պայծառը՝ պայծառ կը բացատրէ, գիտէ պերճախօսել ու պարզաբանել, գիտէ պճնիլ եւ անպաճոյճ երեւալ — առանց սակայն իւր բնածին ազատութիւնը զոհելու, եւ օտարին ստրուկը դառնալու։ Ս. Գրքի հայ թարգմանիչ-ներն նախանձելի եւ անգնահատելի առաւելու-թիւնն ունեցած են լեզուի ազնուութիւն, մա-քրութիւն ու վեհութիւն միացնելու ամենա-խիստ հաւատարմութեան հետ (Kaulen, Ein-leitung[4], I, էջ 177—179. Scholz, Einleitung in die Schriften d. A. u. N. T., I, Köln 1845—1848, էջ 498. Cornely, Introductio, էջ 387. Հմմտ. նաեւ Ճաշակ Ոսկեղէն Դպրու-թեան, Կ. Պոլիս 1887, էջ 3—4)։

Մեր ազգային զգացումները փայփայող այս գնահատականն անտարակոյս բոլորովին կերպարանափոխ պիտի ըլլար, եթէ վերոյիշեալ հեղինակներն իրենց դատաստանին չափանիշ ընտրած ըլլային Բ. Մակաբայեցիք։ Չէ թէ որովհետեւ հոս թարգմանիչը նուազ հայկաբան է, այլ ընդհակառակն՝ որովհետեւ չափազանց հայկաբան է, միայն հայկաբան է։ Իրեն համար կարծես արժանահաւատ սրբազան պատմութիւնը ստորակարգ դիրք ունի, ինքը իր լեզուն կ'ուզէ ցուցադրել, ճոխութեամբ ու գեղեցկութեամբ դիւթող լեզուն։ Սկզբնագիր հեղինակին երկը իրեն համար ցանկապատ միջոց մը չէ, որուն մէջ ինքը գրիչ շարժելու պաշտօն միայն ունենայ, այլ հում նիւթ մը, դիւցազնավէպ մը, որուն յղկումն եւ ըստ պատշաճի փոփոխումը ստանձնած կը թուի, առանց անդրադառնալու, որ իր ազատաբանութեամբը սկզբնագրէն այնքան կը հեռանայ երբեմն, որ հեղինակին հաստատածը կը ժխտէ եւ զայն կը խեղաթիւրէ անճանաչելի աստիճան։ Եւ եթէ թարգմանիչն իր հայկաբանութեան հետ չընձեռէր նաեւ փաստերն իր թերի յունագիտութեան, կարելի էր զինքը դատափետել իբր ննջամիտ եղծիչ բնագիրներու։ Բայց թանձր սխալներու փաղանգ մը — զոր վերը ներկայացուցինք — պաշպան կը կանգնի թարգմանչին ուղղամտութեան՝ յերեւան հանելով անոր տկարութիւնը Յունարէնի մէջ, իբրեւ արդարացուցիչ պատճառ երեւակայութեամբ ներկուռ ազատաշարժ գրչին։ Քաջ հայ-

կաբանութիւն մէկ կողմանէ, անկատար յունագիտութիւն միւս կողմանէ. ահա՛ բանալիները, որոնցմով Բ. Մակաբայեցւոց թարգմանչին արտադրած աշխատութեան՝ Ս. Գրքի միւս մատեաններէն բոլորովին տարբեր որպիսութիւնն ու յատկութիւնները կարելի է ըմբռնել:

«Մակաբայեցիք են ազատ թարգմանութիւնք». Նորայրի այս մէկ խօսքով (Կորիւն, ԻԲ.) կարելի է թարգմանութիւնս յատկանշել: Թարգմանիչը չի կապուիր սկզբնագրին խօսքի եւ բառերու յաջորդութեան, — թէեւ կրնար՝ առանց բռնաբարելու իւր մայրենի լեզուն — այլ ըստ կամի յումպէտս կը շրջէ վերիվայր: Ամենեւին կարեւորութիւն չունի իրեն համար, թէ հեղինակն ինչպիսի շաղկապներ, մասնիկներ ու դերանուններ կը գործածէ, իւր գաղափարներուն յարմարածն պատրաստի ունի նա. երբեմն բոլորովին զանց կ'առնու, երբեմն կը ներմուծէ, ուր որ կրնային պակսիլ: Հոգ չէ թէ այսու հեղինակէն դիտուած նրբին իմաստները կը չքանան, նախադասութիւններու փոփոխ աղերսը կը խանգարի: Գոյականներու եւ մանաւանդ բայերու թիւն ալ շատ չի յարգեր. յոգնակիի տեղ եզակի կը դնէ եւ հակառակէն: Բայց այս կէտիս մէջ միայն ազատութիւնը չէ վճռատու. երբեմն սխալ ընթերցումներ ալ մաս ունին, վասն զի յոգնակի եւ եզակի ձեւերն տեղ տեղ դիւրաշփոթ են սկզբնագրին մէջ (հմմտ. 2 Մկ. Դ, 11. Ը, 1. Թ, 16, 22, 25, 33. ԺԲ. 10, 13, 37 եւն):

Սակայն Հայն այսքան ազատութեամբ գոհ չըլլար։ Կամ բառ մը անգիտանալով ու կամ անհոգութեամբ եւ անմտադրութեամբ՝ բառեր կ'անտեսէ, խօսքեր կը համառօտէ, պարբերութիւններ կը սեղմէ։ Այս կերպով հայ թարգմանութենէն դուրս մնացած են շատ մը բառեր ու տողեր, զորոնք սկզբնագիրն ապահով կը կարդար (հմմտ. Ա, 1, 7, 15. Բ, 8, 25. Գ, 25, 36. Դ, 24. Ե, 5. Զ, 3, 13, 16, 25. Է, 1, 6, 24, 38. Ը, 6, 8, 9, 15. Թ, 7, 8, 19, 21, 25, 26. ԺԱ, 25. ԺԲ, 10, 16, 22, 25, 45. ԺԳ, 8, 26. ԺԴ, 9, 27. ԺԵ, 9, 10, 13, 19, 26)։ Երբեմն ալ մեքենական պատճառներէ բղխած են այս յապաւումները (Բ. 16, 21. Գ, 6)։ Սակայն չեմ տարակուսիր, որ օր. հ. Գ, 27. Ե, 9—10, 21. Թ, 19 թարգմանչին ազատութեան զոհ գացած ըլլան։ Իսկ ուր որ յոյն ձեռագիր մը նոյն պակասը կը ցուցնէ, կարելի է նաեւ ենթադրել, որ Հայուն օրինակն ալ թերի եղած ըլլայ, եւ հետեւաբար կարելի է թարգմանիչը պատասխանատուութենէ ազատ արձակել։

Մասնաւոր մտադրութեան արժանի է, թէ ինչպէս կը վարուի Հայն՝ յատուկ անուններու հետ։ Քաղքի անունները կը բացատրէ քաղաքացւոց անուան (իբր յատկացուցիչ) կցելով քաղաք բառն իբր յատկացեալ (օր. հ. Դ, 33. Ե, 21. ԺԱ, 8, 36)։ Սակայն զայս կրնանք նաեւ լեզուական առանձնայատկութիւն մը համարել։ Մինչդեռ թարգմանչական ազատութիւնն է որ

յայտնապէս կը թելադրէ յունական դից անուններուն փոխարէն՝ Հայոց մէջ գործածուած եւ այս պատճառաւ ընթերցողներուն աւելի ծանօթ անուններ գործածել (օր. Հ. Գ, 5. Դ, 19, 47. Ե, 2. Զ, 7. ԺԱ, 30)։ Նոյն ոճով կը փոխէ նաեւ տիտղոսները, յունականներու փոխարէն պարսկականներ դնելով (օր. Հ. Գ, 7. Դ, 28. ԺԱ, 1). յայտնի է, որ ասով անճշդութիւններու կը մատնուի յաճախ, ինչպէս վարը պիտի տեսնենք մի առ մի։

Հայն այս ազատութիւններուն քով ալ կանգ չ'առներ։ Երբեմն կը լքէ բոլորովին թարգմանչի դերը եւ իբր խմբագրող կը սկսի աշխատիլ, ու կ'արտադրէ յաւելումներ, նիւթական ու կերպական ընդլայնումներ, որոնցմով պատմական հաստատուն հողը թողուցած բանաստեղծական ու վիպական երկերուն ու մտացածին սահմանը կը թեւակոխէ։ Ցափշտակուած իր յորդաբուղխ լեզուով չի զգար որ սկզբնագրի հեղինակին կը հակասէ, ճշմարտութեան ու արժանահաւատութեան թիկունք կը դարձնէ, եւ նոյն իսկ՝ ինք իրեն կը հակաճառէ անյարիր եւ իրարամերժ խօսքեր տողելով։

Կարծես սկզբունքով՝ բոլոր անուղղակի խօսքերը ուղղակիի կը դարձնէ հարկաւոր փոփոխութիւններն ընելով եւ տեղ տեղ զուարճալի միջարկութիւններ ներմուծելով (Ա, 20. Բ, 7. Գ, 6, 9, 10, 11, 13, 37, 38. Դ, 9. Ե, 17. Զ, 21, 22, 24. Է, 5. Ը, 19. Թ, 16, 36. ԺԲ 24, 42. ԺԳ, 14. ԺԴ, 5. ԺԵ, 3,

33)։ — Շատ մը ընդլայնումներ անով գոյացած են, որ Հայը հեղինակին իբր դիւրահասկանալի ըսածը իւրովի կ'աւելցնէ՝ օր. Հ. իբր պատճառ ո՛ւմէ հեղինակին մատնանշած արդիւնքը կը ըղձէ կամ հակառակէն. դէպքերը կը ճոխացնէ պարագաներով ու մանրամասնութիւններով, ազատ ասպարէզ տալով իւր ստեղծագործ երեւակայութեան (Ա, 8, 20, 25, 27. Բ, 1, 6, 10, 13, 24, 32. Գ, 2, 7, 9, 13, 14, 21, 32, 35. Դ, 26, 27, 29, 45. Ե. 16. Է, 4. Ը, 21. ԺԲ, 35. ԺԳ, 20. ԺԴ, 12. ԺԵ, 20, 25, 27, 28)։ Այս տեղիքներուն մէջ կան նաեւ այնպիսիներ, որոնց մէջ իւր երեւակայութեան ապաստանած է, երբ խօսքին մէկ մասը հասկնալով՝ մնացած իրեն համար անհասկանալին անձամբ յերիւրած է, բնականաբար այլազգ քան որ հեղինակէն դիտուած է բնագրին մէջ։ Երբեմն ալ յունարէն ընդունելութիւնները շաղկապներով կը բացատրէ բայց ոչ անսայթաք (Ա, 7. Բ, 3 Դ, 28. Զ, 10. Ը, 31)։ Նիւթական ընդլայնումներու վերջին աղբիւր մը եղած են ինքնածին վերյիշումները (réminiscence)։ Անգամ մը գրած խօսքերը ինքնաբերաբար միտքը կ'իյնան, երբ նման խօսք կամ բառ մը պատահի, եւ նոյնպէս ինքնաբերաբար ու գուցէ անգիտակցօրէն վերստին գրի կ'առնու զանոնք։ Նոյնը կ'արժէ այնպիսի խօսքերու համար, որոնք թէեւ նոյն գրքին չեն վերաբերիր, բայց յաճախ լսելով ու կրկնելով սովորական ու դիւրարտագրելի դարձած են (Ա, 32. Բ, 28, 31. Գ, 6,

31. Դ, 3, 21. Ե, 3, 6. Զ, 28. Է, 22, 35. Թ, 6, 8, 11. Ժ, 28, 30. ԺԱ, 19. ԺԲ, 11. ԺԳ, 15. ԺԴ, 8, 40. ԺԵ, 12)։

*Ուրիշ ընդլայնումներ կերպական ու լեզուական նկարագիր ունին, պատմական նիւթնէական փոփոխութիւն չի կրեր եւ կրնայ աւելի իրաւամբ աւելաբանութիւն կոչուիլ։ Եւ որովհետեւ ասոր պատճառն է թարգմանչին ոճն եւ առատախօս լեզուն, այս մասին քննութիւնը լեզուին կը հայի։*

*Այժմ հարկ է մեր ստուերագծածն մանրամասն ապացուցանել։ Այս է մեր աշխատութեան ամենատաժանելի եւ նոյն իսկ դժուարամարս մասը, բայն միանգամայն անհրաժեշտ՝ եթէ կ'ուզենք թարգմանութեանս որպիսութեան լիով վերահաս ըլլալ եւ վերի նկարագրութիւնը հաստատուն հողի վրայ դնել։ Բնականաբար կրնայինք հատընտիր օրինակներով շատանալ, բայց հիմնական գործ մ'ընծայելու բաղձանքով նախընտրեցինք — այս գլուխը չափազանց երկարաձգելու վտանգով իսկ — բառ առ բառ բնագրական համեմատութիւն ու քննութիւն։ Եթէ ուզէինք ամէն չնչին տարբերութիւն պարզել, պէտք էինք հոս ամբողջ Բ. գիրքը արտագրել, ուստի միայն մեզի քիչ թէ շատ հարկաւոր երեւցածն ընտրած ենք։ Ամենակարեւորու համարները վերն ալ նշանակեցինք. կրնայ անոնց դիմելով բաւականանալ ով որ մեր ըսածներուն ստուգութիւնը քննել կը բաղձայ։*

Նախ կու տանք Հայերէն թարգմանութիւնն ըստ Զօհրապի, ապա յունարէն բնագիրն ու մեր թարգմանութիւնը՝ եթէ հարկաւոր է, վերջապէս մեր դիտողութիւնները, եթէ ունինք. վասն զի յաճախ հայ հին թարգմանութեան բացատիպ բառերու մէջ ընթերցողն ինքնին դիւրաւ պիտի գտնէ անոր եւ յունին միջեւ եղած տարբերութիւնն ու մեր նկարագրած որպիսութիւնները։ Բնականաբար ինչ որ լեզուի մասին խօսած ժամանակ պիտի յիշենք, ներկայ համեմատութեան մէջ չենք առած, թէեւ յունին բոլորովին համաձայն չըլլան։

## ԳԼՈՒԽ Ա.

1. “Առ եղբարս Հրէաստանեայս, որ ի կողմանս Եգիպտացւոց են՝ յեղբարց Հրէից՝ յԵրուսաղեմացւոց եւ յեղբարց Հրէաստանեայց առ ձեզ ողջոյն. խաղաղութեամբ բազմաւ„. τοῖς ἀδελφοῖς τοῖς κατ' Αἴγυπτον Ἰουδαίους χαίρειν. οἱ ἀδελφοὶ οἱ ἐν Ἱεροσολύμοις Ἰουδαῖοι καὶ ἐν τῇ χώρᾳ τῆς Ἰουδαίας εἰρήνην ἀγαθήν. Նախադասութեանս մէջ հեղինակը կրկին բանաձեւ կը գործածէ ողջունատրութեան. յունականը՝ χαίρειν = ողջոյն, եւ եբրայականը՝ εἰρήνην ἀγαθήν = խաղաղութիւն բազում — ἀγαθήν լոկ սաստկացուցիչ է։ Հայը զասոնք կամ ի մի ձուլած է՝ “ողջոյն խաղաղութեամբ բազմաւ„ եւ կամ՝ — ինչպէս Զ.ի կիտադրութենէն կը հետեւի —

սխալմամբ հետեւորդ «առատասցի» բային կը կցէ իբր մակբայական ասութիւն. «ի. բ. առատասցի»։ ἐν τ. χώρᾳ — որով Երուսաղէմի Հրեաները կը հակադրուին անկէ դուրս բնակող Հրեից — կը բացատրէ այնու, որ զանոնք «Հրեայք Երուսաղեմացիք» իսկ զասոնք՝ «Հրեաստանեայք» կը կոչէ։ Թարգմանչին յաւելուածն է «առ ձեզ»։ — Հ. 2. «առատասցի». καὶ ἀγαθοποιῆσαι = «բարի արասցէ», ինչպէս կը թարգմանեն նաեւ՝ Թիւք Ժ, 32. Դատ ԺԷ, 13. Տովբ ԺԲ, 13. 1 Մկ. ԺԱ, 3. ընդհանուր առմամբ է հոս «առատանամ», որ աւելի ճշդիւ կը համապատասխանէ φιλοτιμέομαι ի. հմմտ. Հռ. ԺԷ, 20. 2 Կր Ե, 9. 1 Թես Դ, 10։ — Հ. 3. «Յանձինս մտադեւրս եւ ի սիրտս կամակարս». καρδίᾳ μεγάλῃ καὶ ψυχῇ βουλομένῃ = «Մեծանձն սրտիւ եւ կամակար հոգւով». Գեղեցկագիտական պատճառներէ թարգմանիչը տեղափոխած է գոյականները (անձն — կամք փոխ. կամք — անձ.) եւ անոնց կցած է վերադիրներ, որոնք իմաստով աւելի մերձ են իրարու քան μεγάλῃ եւ βουλομένῃ։ — Հ. 4. «Ջաչս եւ պականջս սրտից ձերոց». τὴν καρδίαν ὑμῶν = զսիրտն ձեր. բայց 22 19, 62, 64, 93 ունին յոգնակի թուով՝ καρδίας. ասոնցմէ բղխած է Ասորին՝ «Ջականջս եւ զսիրտս ձեր»։ Բոլորովին անկախ է Հայը՝ անով որ սրտին կ'ընծայէ ոչ լոկ աչք (հմմտ. Եփ. Ա, 18) այլ նաեւ ականջ. գուցէ «աչք եւ ականջ» կայուն բացատրութեան հետեւութիւնն ըլլայ։ — Հ. 5.

“Հաճեսցի ընդ ձեզ”. καταλλαγείη ὑμῖν. Բառս նոյնպէս թարգմանած է Նաեւ Դ, 20. Է, 33. մինչդեռ Ը, 29 եւ Ս. Գրոց մէջ ամենուրեք (Հռ. Ե, 10. 1 Կոր. Է, 11. 1 Կոր. Ե, 19) καταλλάγεσθαι = “հաշտ լինել կամ հաշտել” եւ ոչ երբեք “հաճել”, որուն հանդէպ կը գտնենք εὐδοκεῖν (Ծն. ԽԶ, 6, Ղեւ. ԻԶ, 34. 1 Մկ. Ժ. 47. ԺԲ, 4 ուր ἔδωκαν սխալմամբ կարդացած եւ թարգմանած է εὐδώκεσαν — ԺԴ, 47. 2 Մկ. ԺԱ, 24, 35), αἱρετίζειν (Թիւք ԺԴ. 8), θέλομαι (Եր. Օր. ԻԱ, 14)։ — Հ. 5. “Եւ մի՛ ի ձեռաց թողցէ զձեզ” = μὴ ὑμᾶς ἐγκαταλίποι. Յաւելուածը (ի ձեռաց) հայերէն ասութեան մաս է, բաց աստի կերպով մը մատնանշուած է յունարէն բային կից նախդրով։ “Ի ժամանակս նեղութեան”. ἐν καιρῷ πονηρῷ. Այլուր (Սղ. ԼԶ, 19. Միք. Բ, 3. Ժող. Թ, 12) կը թարգմանուի ճիշդ. “ի ժամանակի չարի” կամ “չարութեան”. Հետեւաբար մեր թարգմանութիւնը քիչ մը ազատ է. “ի ժ. նեղութեան” = ἐν καιρῷ θλίψεως Համմտ. Դատ. Ժ, 14. 2 Մն. ԻԸ, 28. Նե. Թ, 27. Եսթ. ԺԴ, 12. 1 Մկ. ԺԳ, 5։ — Հ. 7. “Յամս թագաւորութեան Դեմետրի” — βασιλεύοντος Δημητρίου. Բացարձակ սեռականը, որ հայերէնի խորթ է, բարեշրջելու եղանակներէն մին է այս, զոր եւ այլուր կը գտնենք. Եսթ ԺԱ, 2 եւն. — “ի նեղութեան”. ἐν τῇ θλίψει καὶ ἐν τῇ ἀκμῇ. Առաջին բառը միայն թարգմանած է Հայը, իսկ երկրորդը պարզապէս

անտեսած՝ չկարենալով իմաստին թափանցել (Հմմտ. 2 Մկ. Դ, 13. § 4), եւ զարմանալի չէ՛ քանի որ այսօր իսկ դեռ չէ պարզուած մթին տեղիքս (տ. Herkenne, Die Briefe zu Beginn des zweiten Makkabäerbuches, Freiburg 1904, էջ 43—45)։ «Ի ժամանակի անդ». ἐν τοῖς ἔτεσι τούτοις = «յամին յայնոսիկ». Ըստ իս վայելչութեան համար խորշած է Հայն այս բառէն վասն զի արդէն երկու անգամ գործածած էր զայն։ — Հ. 8. «Մատուցաք մեք ուխտս եւ խունկս եւ պատարագս նաշհւօք». προσηνέγκαμεν θυσίαν καὶ σεμίδαλιν καὶ ἐξήψαμεν τοὺς λύχνους = մատուցաք պատարագ եւ նաշիհ եւ լուցաք զջահսն։ Բացատիպ վերջին բառերս զանց կ'առնու Հայը, բայց փոխարէն կ'աւելցնէ «ուխտս եւ խունկս» եւ իրարու կը խառնէ «պատարագս նաշհւօք», մինչ դեռ հեղինակը զանոնք իրարու կը հակադրէ իբր արիւնաւոր եւ անարիւն զոհ։ — «Զհացն + յաճախացն». τοὺς ἄρτους. Հայուն յաւելուածն իմաստին համաձայն է. Ասորին՝ + երեսաց։ «Հաց յաճախացն» գործածուած է նաեւ 1 Մկ. Ա, 8. Ժ, 3. Ս. Գրքի թարգմանիչներն իրարմէ շատ կը հեռանան ἄρ. προθήσεως հայացնելու մէջ. Հաց հանապազորդ Թիւք Դ, 7. 2 Մկ. 10. Հ. առաջէից Թիւք Ժ, 33. Հ. երեսաց Ելք, ԻԵ, 30. Հ. պատարագի 3 Թգ. Է, 48. Հ. առաջադրութեան կամ առաջաւորութեան 1 Մն. Թ, 32. ԻԳ, 29։ — Հ. 10. «Ի ծերակոյտ Հրէաստանեայց». οἱ ἐν τῇ Ἰουδαίᾳ καὶ ἡ γε-

ρουσία = Հրէաստանեայք եւ ծերակոյտն։ Թարգմանիչն կրաւորական բայ մը լրացնելով ընդլեայն՝ բացառական հոլով կը գործածէ ինչպէս Հ. 1, բայց այս կարեւորութիւն չունեցող կամ աւելի՝ լեզուէն պահանջուած փոփոխութիւն մըն է, մինչդեռ իրաւունք չունէր նա միացնելու ծերակոյտ եւ Հրէաստանեայք, քանի որ ծերակոյտը առանձին կը շեշտուի հեղինակին կողմանէ իբր ներկայացուցիչ ազգին։ — “Ողջոյն ընդ ձեզ եւ խաղաղութիւն„. χαίρειν καὶ ὑγιαίνειν. Այս երկու բառերն ալ “ողջոյն„ կը նշանակեն, թէեւ χαίρειν նաեւ “ուրախ լեր„ (Ղկ. Ա, 28), բայց Հայը Հ. 1ի ազդեցութեան տակ եղանակաւորած է բանաձեւը։ — Հ. 11. “Որպէս զի զիարդ ի մարտ պատերազմի պատրաստեալ էաք ընդդէմ առն թագաւորի„. „ὡς ἂν πρὸς βασιλέα παρατασσόμενοι“ = “Նաեւ առ նորանոր մարտս կազմք եւ պատրաստք ընդդէմ Արքային„։ Ձեռագիրք կը ներկայացնեն տարբերակներ. a. որպէս զիարդ զի... եմք. b. որպէս զի ա՛րդ. վերջին ընթերցուածը կ'առաջարկեմ “որպէս զիարդ„ ձեւով։ Նախադասութիւնը դեռ կը կաղայ, հաւանօրէն վասն զի թարգմանիչը միայն ὡς ին միտ դրած է (որպէս զիարդ), գուցէ առընթեր ἂν ի պաշտօնը — ընդ. անցեալի հետ — չհասկնալով։ “Առն թագաւորի„ անորոշ է. βασιλεύς առանց յօդի հօս, ինչպէս դասական հեղինակներու քով ընդհանրապէս, Պարսից Արքայն կը նշանակէ։ — Հ. 13. “Անթիւ անհամար զօրօքն հանդերձ„. καὶ ἡ περὶ

αὐτὸν ἀνυπόστατος δοκοῦσα εἶναι δύναμις = Զօրօքն իւրովք, որք առանց պարտութեան համարէին։ Չեմ կարծեր որ տարբերութիւնը սխալ ընթերցման մը հետեւանք ըլլայ, այլ կը վերագրեմ զայն թարգմանչին ազատութեան, որով metonymiam causae pro effectu կը գործածէ, զօրաց քաջութիւնը՝ անյաղթելիութեան հիմ նկատելով։ — Հ. 15. “Քահանայք տաճարին”. τῆς Ναναίας = Նանեայ. Այս տարբերութիւնն իբր ազատ թարգմանութիւն կը մեկնուի անով, որ Հայը հաւանօրէն AV. 62, 71, 196, 243 ընթերցուածը՝ τοῦ Ναναίου ունէր, եւ սա (ուղղ։ τὸ Νάναιον) կը նշանակէ տաճար Նանեայ. անունը զանց առած է իբր դիւրհասկանալի եւ դրած է լոկ իմաստը։ “Եւ նա յօժարեաց գալ մտանել ի ներքս. եւ իբրեւ եղեւ միջամուխ”. Բացատիպ բառերն Հայուն ընդլայնումներն են, յոյնն ունի պարզապէս κἀκείνου προσελθόντος = “իբրեւ եղեւ միջամուխ”։ — “Սրահիցն”. Անճիշդ թարգմանութիւն. յուն. εἰς τὸν περίβολον τοῦ τεμένους = “ի շրջապատ պարիսպն տեղւոյն սրբոյ”։ Այս թարգմանութեան կը մերձենայ, երբ յառաջ կը տանի կարկատելով. “Համարձակ զդրունսն առին զարտաքինս պարսպացն ընդ որ եմուտ Անտիոքոս”. մինչդեռ յոյնն այսպէս կը շարունակէ. συγκλείσαντες τὸ ἱερόν = “փակեցին զտաճարն”։ Արդեօք συγκλέψαντες կարդալո՞վ առաջնորդուած է “զդրունսն առին” անյարիր իմաստին։ Հայե-

րէն բնագրին մասին առ այժմ գիտենք որ ձի
հետ պէտք է ուղղել. պարտաքին պարսպացն =
περίβολον: — Հ. 16. “Զպատուհանսն գաղտ-
նիս„. κρυπτὴν θύραν = զգաղտնի դուռնն„:
Թարգմանիչն երդիքի պատուհան մը երեւա-
կայած պիտի ըլլայ: — “Վիրգս մեծամեծս„.
յուն. լոկ՝ πέτρους. — “զառաջնորդն գնդաւն
հանդերձ„. բացատիպ բառերը կը պակսին
յունարէնի մէջ, բայց կը դանդաղիմ Թարգ-
մանչին վերագրել, քանի որ Վուլգատա եւս կը
կարդայ. et qui cum eo erant = “եւ որք ընդ
նմա էին„: Հաւանաբար կային նման ընթեր-
ցուածով յոյն ձեռագիրներ: — “Ի պարսպէն
ի մէջ զօրացն„. τοῖς ἔξω = “յարտաքինսն„:
Իմաստը նոյն է, Հայը ընդլայնած է միայն: —
Հ. 18. “Զպատարագսն ողջակիզացն„. θυσίαν.
AV. 55, 62, 64, 93, 106՝ θυσίας. Թարգ-
մանիչը շատ կը կը սիրէ “պատարագք ողջակի-
զաց„ ասութիւնը, զոր կը գործածէ երբ յու-
նարէն կը կարդայ կամ լոկ ὁλοκαύτωσις (1 Մկ.
Ա, 47. Ե, 54. Է, 33) կամ θυσία (2 Մկ.
Ա, 21. Բ, 10. Գ, 3, 35. Դ, 14. Ժ, 3): —
Հ. 19. “Ի կողմանս Պարսից„ = εἰς τὴν
Περσικὴν. — “տարան թաքուցին„ յուն.
միայն κατέκρυψαν. — “ջրհորոցն„. φρέατος.
ձի հետ պէտք է ուղղել. “ջրհորոյն„. —
“անդ զգուշութեամբ զտեղին հաստա-
խաղաղ ծածկէին„. ἐν ᾧ κατησφαλίσαντο =
“յորում եդին յապահովի„. — Հ. 20. “Հրա-
մանաւ Պարսից արքային„. այս կերպով կը

ջնջէ խօսքը, որպէս զի չստիպուի կրկնել՝ "առաքեալ... առաքեաց" = ἀποσταλεὶς ... ἔπεμψεν. բայց միայն "հրամանաւ"ը հեղինակին պատմած իրողութիւնն ամբողջ չի բացատրեր. — "որոց ծածկեալ էր թաքուցեալ զհուրն, զի բերցեն". անօսրատիպ բառերը, որոնք կ'ենթագրուին արդէն, թարգմանչէն են. յուն. τῶν ἀποχρυψάντων. — "Նոքա իբրեւ եկին, պատմեցին եւ ասեն բայ". յուն. ունի միայն διεσάφησαν ἡμῖν = "պատմեցին (ծանուցին) մեզ". վերջին բառս զանց կ'առնուն Նաեւ, բայց յանիրաւի, 22 64, 93 եւ Ասորին։ — "Հուր ինչ մեք անդր ոչ գտաք, բայց գտաք մեք անդ ջուր՝ դանդաղամած թանձրացեալ". ամբողջ խօսքը աննուղղակի է. μὴ εὑρηκέναι πῦρ ἀλλὰ ὕδωρ παχύ = "չիցէ նոցա գտեալ հուր ինչ այլ ջուր թանձրացեալ"։ Բնագրական տեսակէտէ կ'ենթադրուի, որ փոխ. "անդր" հարկ է coի հետ կարդալ "անդ" բայց ես պիտի առաջարկէի, յեցած aի եւ երկու "անդ" երու խորթութեան վրայ, առաջինը ջնջել։ Zn կը կարդան "բայց գտաք մեք անջուր" աղաւաղում "անդ ջուր"ի։ — Հ. 21. "պատարագացն". իմաստին համաձայն է, թէեւ բառական՝ τὰ ἐπικείμενα = "որ ինչ ի վերայ կայր"։ — Հ. 22. "բորբոքեցաւ բոց + հրոյն ի վերայ փայտից սեղանոյն եւ մաշեաց զողջակէզսն. յուն. ἀνήφθη πύρα μεγάλη = "բորբոքեցաւ բոց մեծ"։ Հայուն յաւելուածն իրին բնութենէն

կը հետեւի արդէն եւ կը կանխէ մասամբ հ. 23. "Բոց հրոյ" = φλὰξ πυρός Եզք Գ, 2. Սղ. ԻԸ, 7. Դան. Է, 9. — "Զի սքանչացեալ էին ամենեքեան". սխալ է եւ վերնոյն հետ չի կապուիր. յուն. ὥστε θαυμάσαι πάντας = "որպէս զի (= մինչեւ) յապուշ կրթել զամենեսեան։ — Հ. 23. "Զայն առին սկսան օրհնել". յուն. προσευχὴν δὲ ἐποιήσαντο = "աղօթս արարին". — "Իբրեւ ի բերանոյ Նեեմեայ". փխ. "որպէս եւ Նեեմիա" (զկնի կցէր)։ Սխալը ծագած է անտի, որ թարգմանիչն ὡς Νεεμίου միացուցած է καταρχομένου Ἰωνάθου ի փոխ. ἐπιφωνούντων ի, որուն՝ դիրքով ալ ամենամերձ է։ — Հ. 24. "Ճշմարիտ, արդար". անօսրատիպ բառը կ՚աւելցնէ Հայը նաեւ Հ. 25. յուն. միայն վերջինն ունի։ — Հ. 25. "Դու միայն ես, որ մատակարարես + ամենայնի զամենայն". Յունարէնի գոյականը (χορηγός) յարաբերականի վերածած է լեզուական տեսակէտով, որ նաեւ խնդիր սեռիով (զամենայն) եւ խ. բնութեամբ (ամենայնի) ամբողջանալ կը պահանջէր։ — Հ. 26. Հայը զանց կ՚առնու Ἰσραήλ, անշուշտ որովհետեւ "ժողովրդեան քոյ" ինքնին բացայայտ է եւ Հ. 25 արդէն անգամ մը յիշուած էր անունը։ — Հ. 27. "Զցրումն գերութեան մերոյ". անօսրատիպ բառը թարգմանչին մեկնութիւնն է։ — "Ազատեա զայնոսիկ որ կան ի ծառայութիւն անարգելոց եւ պղծոց, հայեաց ի ծառայս քո". բնագրին իմաստը նոյն պահած է, ըստ կամի հեռանալով

սկզբնական ձեւէն, յուն. կ'ըսէ. "ազատեա զայնոսիկ որ ի ծառայութեան կան ի հեթանոսս (ἐν τοῖς ἔθνεσι), հայեաց յանարգեալսն եւ ի պղծեալս (ի նոցանէ)", — Հ. 28ի մէջ թարմանիչը դարձեալ կը կրկնէ Հ. 27ի գաղափարը՝ "հեթանոսք պիղծք եւ անարգեալք", իբր բացայայտիչ կցելով բնագրի "τοὺς καταδυναστεύοντας" = "զայնոսիկ, որ բռնադատեցին զմեզ" խօսքին: — Հ. 31. "Եւ ողջակէզքն տակաւ վառեալ բորբոքեալ մաշէին, եւ իբրեւ վախճան եղեւ պատարագացն", փխ. "իբրեւ ողջակէզքն մաշէին": Ճոռոմաբանութեան փոքրիկ փորձ մըն է այս, որով Հայը բնագիրը կ'ընդլայնէ առանց սխալ քայլի մը: Մինչդեռ հետեւեալ բանաստեղծական նկարագրութեան մէջ մոլորելէ չէ կրցած զերծ մնալ. Հ. 32. "Եւ իբրեւ այս եղեւ, առաւել բոցն ի վերայ (ուղ. ըստ Օի՝ ի վեր) բորբոքեցաւ. եւ իբրեւ բոցոյն նշոյլք եղեն, դարձեալ միւսանգամ վառեցաւ բորբոքեցաւ սեղանն, եւ որ ինչ էր մնացեալ՝ եւ այն մաշեցաւ": Պատահածը սակայն բոլորովին ուրիշ բան է. "Եւ իբրեւ այս եղեւ, բորբոքէր բոց ինչ, զոր մաշէին նշոյլք արձակեալք ի սեղանոյ անտի" = φλὸξ ἀνήφθη τοῦ δὲ ἀπὸ τοῦ θυσαστηρίου ἀντιλαμψάντος φωτὸς ἐδαπανήθη.

# ԳԼՈՒԽ Բ.

Հ. 1. “Եւ գտանի այս գրեալ ի մատեանս առաջինս”. Εὑρίσκεται δὲ ἐν ταῖς ἀπογραφαῖς = Եւ գտանի ի գիրսն։ “Գրեալ” աւելցնելէ վերջ հարկ էր բնականաբար քաջահնչութեան համար “մատեան” գործածել. նոյն բառը դրած է նաեւ վարը Հ. 13 նոյնիմաստ ἀναγραφαίς փոխարէն, սակայն երկու դէպքի մէջ ալ Հայր վերադիր մը կը յաւելու, հոս՝ “առանջինս”, վարը՝ “հին” — կարծեմ ջանալով յունարէն ἀπὸ եւ ἄνα մասնիկներն բոլորովին չանտեսել։ Թէեւ խստիւ կշռելով βιβλός = մատեան, եւ γραφή = գիր, բայց մատենագրութեան մէջ այս յինքեան արդէն չնչին տարբերութիւնը չի յարգուիր. հմմտ. Հ. 4. — Դան Ժ, 21։ — Հ. 2. “Կուռս քանդակեալս եւ պատկերս կերպարանեալս”. յուն. ἀγάλματα = Ես ԺԹ, 3, Ի, 9 “պատկեր”, բայց կը նշանակէ նաեւ “կուռք”, բաց աստի հայր կրկին վերադիրներով — իրին բնութենէն հանուած — կը ճոխացնէ։ — Հ. 3. “աղաչէր պատուիրանօք”. καὶ ἕτερα τοιαῦτα λέγων, παρέκαλει = “եւ այլ եւս նման բանիւք յորդորէր”. παρακαλέω = աղաչեմ. հրաւէր կարդամ. մխիթարեմ. պատուիրեմ։ Այս եղած է անշուշտ պատճառը, որմէ Հայր ազատ թարգմանութեան մղուած է։ — “Մի մոռանալ”. μὴ ἀποστῆναι = մի մերժել, հմմտ. Երկ. Օր. Դ, 9։ Հարկաւ ի նոյն կը յանգի,

բայց այս թարգմանութիւնը նախընտրելի է, քանի որ Հ. 2. “զի մի մոռասցին„ = μὴ ἐπιλάθονται ըսուած է արդէն, իսկ հոս սրտիւ ու գործով օրէնքին փարելու կը յորդորէ մարգարէն։ Տարակոյս չկայ, որ Հայը Հ. 2. վերատադրած է։ — Հ. 5. “ընդ իւրեանս„. αὐτῷ = իւր, այսինքն՝ մարգարէին։ — “Իբրեւ ելանէր Մովսէս ի լեառն անդր տեսանել„. Հեղինակը սակայն Երեմիայի վրայ կը խօսի, եւ զՄ. անցողակի միայն կը յիշէ. ὡς δὲ ἐξῆλθεν εἰς τὸ ὄρος οὗ ὁ Μωυσῆς ἀναβὰς ἐθεάσατο = Թէ զիարդ ել Նա (Երեմիա) ի լեառն անդր յորոյ վերայ ելեալ Մովսիսի տեսանէր . . . Հայը ἐξ եւ ἀναβ. բայերը իրարու միացուցած եւ Մ. ի տուած, իսկ յարաբերական οὗ անտեսած է։ Դարձեալ այս գլխուն մէջ քանիցս կրկնուած ὡς ը՝ ժամանակական շաղկապ չէ (իբրեւ), այլ յառաջբերական (պատմ. թէ զիարդ, որպէս եւն), որով “ի մատեանս առաջինս„ գրուածներէն կը քաղէ հեղինակը։ — Հ. 5. “այրս ամուրս անտառախիտս„։ Թարգմանչին ընտրած գոյականը՝ հեղինակին οἶκον ἀντρώδη„ն արդէն կը բացատրէ, այնպէս որ վերադիրներն ինքնահնար ու աւելորդ են։ Արդեօք ἀντρώδη եւ անտառախիտ բառերուն ձայնական նմանութենէն առաջնորդուած չէ՞։ Անտառախիտ = ἀλσώδης՝ 4 Թգ. ԺԶ, 4 ԺԷ, 10. Եր. Գ, 6, 13. Եզ. Իէ, 6։ — ‘Տարեալ դնէր ի ներքս„. յուն. առանց անօսրատիպ յաւելուածին՝ εἰσήνεγκεν։ — Հ. 6.

“...Նշանակել զտեղին եւ ամենեւին ճանապարհ ի տեղի անդր ոչ կարացին գտանել„. փոխ. “Նշանակել զճանապարհն, եւ ոչ կարացին գտանել„: — Հ. 7. “Եթէ ոչ գիտէք՝ եթէ անծանօթ հրաման է զտեղիդ կացուցանել.. ὅτι καὶ ἄγνωστος ὁ τόπος ἔσται = անծանօթ եղիցի տեղիդ: Դուրեան, էջ 249, կը դիտէ. Ետեւառաջութիւն սպրդած է. ուղղելու է՝ “Հրաման է անծանօթ զտեղիդ կացուցանել„: — “Մինչեւ հաճեսցի տէր տէրանց ընդ արարածս իւր եւ ժողովել հրամայեսցէ Աստուած զժողովս ժողովրդեան իւրոյ„: Բացատիպ բառերը թարգմանչին կը պատկանին. բաց աստի նախադասութիւնները յեղաշրջած է. փխ. “Մինչեւ ժողովեսցէ Աստուած զժողով ժողովրդեան իւրոյ եւ հաշտեսցի„ = ἕως ἂν συναγάγῃ ὁ θεὸς ἐπισυναγωγὴν τοῦ λαοῦ καὶ ἵλεως γένηται: — Հ. 8. “Եւ երեւեսցին փառքն Տեառն ի սիւն ամպոյ„. ὀφθήσεται ἡ δόξα τοῦ κυρίου καὶ ἡ νεφέλη... ἐδηλοῦτο = երեւեսցին փառքն Տեառն եւ ամպն յայտնեսցի: Երկու բայերու փոխարէն մէկ հատ կը դնէ Հայը, անշուշտ որպէս զի չկրկնէ “յայտնել„, զոր համարիս սկիզբն արդէն գործածած էր, եւ ասոր մէջ յաջողելու համար՝ ἦν գործ. հոլովով միացուցած է Յφθ.ի: “Սիւն ամպոյն„ տեղւոյս իմաստին համաձայն է (տ. Herkenne, էջ 88): — Հ. 10. “Մաշեաց զփայտն եւ զողջակէզս պատարագացն... զողջակէզսն ի վերայ սեղանոյն„. τὰ τῆς θυσίας (հմմտ. Ա, 18)

...τὰ ὁλοκαυτώματα։ Հայուն յաւելուածներն ինքնին կը հասկցուին։ — Հ. 11. «Զի Մովսիսի չէր հրամայեալ ուտելի առնել զվասն մեղացն ի ջաներ հուրն եւ մաշէր զպատարագսն». καὶ εἶπε Μωυσῆς· Διὰ τὸ μὴ βεβρῶσθαι τὸ περὶ τῆς ἁμαρτίας ἀνηλώθη = Եւ ասէր Մ., քանզի չեղեւ ուտելի վասն մեղացն՝ հրով մաշեցաւ»։ Բոլորովին այլափոխուած. այս խօսքը կը մեկնեմ այնու, որ Հայը διὰ τὸ μὴ կապած է εἶπε ի (= չէր հրամայեալ) եւ ἀνηλώθη ընդլայնած է կրկնելով 10 համարի վերջին մասը։ — Հ. 13. «ի գիրս հարցափորձից». յուն. ἐν τοῖς ὑπομνηματισμοῖς. 1 Եզր Բ, 22, 2 Եզր Դ, 15 շատ ճիշտ թարգմանուած է «գիր յիշատակարանաց». Հոս գործածուած «գիր հարցափորձից»՝ այս ձեւով այլուր չի պատահիր եւ յունարէնի հեռուէն միայն կը համաձայնի, քանի որ առ առաւելն պիտի նշանակէ՝ «քաղաքական բանակցութիւններու եւ յարաբերութեանց վրայ ճառող գիրք»։ Սխալ է Հայկ. Բառ. ի (Բ. 69) «գիրք հարցափորձից = βιβλιοθήκη» զուգադրութիւնը, որուն առաջնորդուած է նա համարիս մէջ գտնելով յուն. նոյն բառը. հմմտ. սակայն § 4. Բ 13. — «որ (= զայլ հրովարտակս Թագաւորաց) վասն ինչ ինչ ի պատիւ տաճարին տուեալ էր». περὶ ἀναθεμάτων = վասն պարգեւաց։ «Պատիւ» շատ դիւրաւ կրնայ գրչագրական վրիպակ ըլլալ, որուն ապա նախդիր մըն ալ կցուած է. զայն ուղղելով կը ստանանք սկզբնագրին համաձայն՝ բայց

թարգմանչէն ընդլայնեալ խօսք մը։ — Հ. 14. “Եւ այժմ առ մեզ բովանդակեալ պահի”. καὶ ἔστι παρ’ ἡμῖν = եւ այժմ առ մեզ են։ — Հ. 16. “Եթէ զաւուրս տօնիցն հանապազորդ առնիցէք.” Անօսրատիպ բառերը թարգմանչին սեպհականութիւն են։ — Հ. 18. “Ժողովեսցէ ի սուրբ տեղին.” ἡμᾶς ἐλεήσει καὶ ἐπισυνάξει ἐκ τῆς ὑπὸ οὐρανὸν εἰς τὸν ἅγιον τόπον = գթասցի ի մեզ եւ ժողովեսցէ զմեզ յամենայն կողմանց ի սուրբ տեղին։ Բացատիպ բառերն ուրեմն կը պակսին հայերէնի մէջ. եւ որովհետեւ ուրիշ ոչ մէկ խումբ կը ձայնակցի իրեն, դրական պատճառ չունինք պակասը յուն. օրինակին ընծայելու։ — Հ. 21. “Եւ սակաւուք զբազումս, որ զաշխարհս յաչս դնէին, զխուժադուժ ազգս հալածել.” ὥστε τὴν ὅλην χώραν ὀλίγους ὄντας λεηλατεῖν καὶ τὰ βάρβαρα πλήθη διώκειν = որպէս սակաւուք ոմամբք զաշխարհն անդրէն ընդ բռամբ արկանել եւ զխուժդուժ ազգսն հալածել։ “Յաչս դնեմ” (նաեւ Ը. 18 = τοὺς ἐρχομένους ἐφ’ ἡμᾶς) անշուշտ կը նշանակէ “աչք տնկել թշնամաբար”։ Այս իմաստը հաստատուն բռնելով հարկ է ըսել որ Հայը λεηλατεῖν չէ հասկցած, մանաւանդ որ խուժդուժ թշնամիներն անոր ենթակայ կը համարի։ Թէ արդեօք ուրիշ նման բառի մը հետ շփոթած է, չեմ կրնար ըսել։ — Հ. 22. “զհօյակապ... զշքեղ”. յուն. միայն՝ περιβόητον. — “կամ զմեծ քաղաքն ամենայնիւ յամենայնէ յա-

զատութիւն հասանել„. յուն. առանց բացասիկ յաւելուածներուն՝ καὶ τὴν πόλιν ἐλευθερῶσαι: Դուրեան (էջ 245) իրաւամբ կ'առաջարկէ “հասանել„ ուղղել՝ “հանել„: — Յունարէն բնագիրն այսպէս յառաջ կը տանի. καὶ τοὺς μέλλοντας καταλύεσθαι νόμους ἐπανορθῶσαι. Հայը զայս կը փախցնէ աչքի պատրանքով. Յուն. ἐλευθερῶσαι բառին քով աչքը դարձուցած էր բնագրէն՝ թարգմանութիւնը գրի առնլու համար. ուզելով շարունակել աչքը կը հանդիպի մէկ տող վար ἐπανορθῶσαι բառին, որուն վերջին վանկը կը համաձայնէր իւր թարգմանած վերջին բառին, զայն կը համարի իւր կանգառած տեղը եւ անկէ կը սկսի վերստին թարգմանել: — Հ. 24. “Զի հայեցաքմեք ի խուռն մեծաթիւ համարոյ բանիցդ„: Յուն. τὸ χῦμα τῶν ἀριθμῶν = ի խուռն համարոց: — Հ. 25. “ընթերցանելեացն՝ զբօսանս, իմաստնոցն՝ յիշատակ առանց աշխատութեան„: Այսպէս կիտադրելով, հակառակ Զի, խօսքն զգալիօրէն կը մերձենայ բնագրին. միայն անօսրատիպ վերջին մասը կը պահէ իւր ազատութիւնը. յուն.... τοῖς δὲ φιλοφρονοῦσιν εἰς τὸ διὰ μνήμης ἀναλαβεῖν εὐκοπίαν = իսկ որոց յօժարինն յուշի ունել՝. դիւրութիւն աշխատութեան: Հայը φιλο + φρονεω ի ստուգաբանութեան (սիրով ի միտ առնուլ) կապուելով անշուշտ “իմաստուն„ թարգմանած եւ խօսքը քիչ մը փոխած է: — Հ. 27. “Մեծահաց գործիցէ զընկերացն ուրախութիւն ե-

ոչ զիւր դիւրութիւն խորհիցի.» καὶ ζητοῦσι τὴν ἑτέρων λυσιτέλειαν οὐχ εὐχερὲς μὲν = եւ զհանգիստ այլոց՝ խնդրիցէ — չէ ինչ դիւրութեան»։ Նախադասութիւնը շրջած է., կը շեշտէ οὐχ εὐχ. ի ենթակայական տարրը. ἑτ. λυς. կը լռէ անոր արդիւնագործ պատճառը յիշատակելով (մեծահաց սեղան — ուրախութիւն այլոց)։ «Վասն բազմացն հաճութեան». διὰ τὴν τῶν πολλῶν εὐχαριστίαν ἡδέως = վասն բազմաց երախտապարտն մտաց հաճութեամբ ... — Հաճութիւն = εὐδοκεία, ἡδονή (ἡδύς). Հբ. ի հետ (Բ. 11) հայերէն բառին նաեւ εὐχαριστία իմաստը տալը, եւ այն, մեր այս տեղւոյն վրայ միայն յեցեալ, մերժելի է, վասն զի Հայը εὐχ. անտեսած եւ ἡδέως ի գաղափարն արտայայտելով գոհացած է։ — Հ. 28. «Առաջնոյն» այսինքն հ. 24. յիշուած Յասոնի «պատմագրի»ն = τῷν συγγραφεῖ — «Զեղչելն եւ զբազկելն, եւ զկարճառօտ բանն ի համառօտ կացուցանել»։ Յունարէնը — τὸ δὲ ἐπιπορεύεσθαι τοῖς ὑπογραμμοῖς τῆς ἐπιτομῆς — սեթեւեթեալ ու խրթին ասութիւն մըն է (= զհետ երթալ կանոնաց համառօտելոյ), զոր չէ հասկցած Հայը եւ ասոր փոխարէն ἐπιτομῆ գաղափարն հայացուցած է այլեւայլ ձեւերով։ «Զկարճառօտ բանն ի համառօտ կացուցանել» անիմաստ նոյնաբանութիւն, մանաւանդ թէ հակառակաբանութիւն է. կը բաղձայի ուղղել. «կարճառօտ համառօտ զբանն կացուցանել» = Յասոնի ընդարձակ պատմութենէն

քաղուածներ ընել (ἐπιτομή)։ Երգ. մեր թարգմանիչը «կարճառօտ համառօտ» կը գործածէ երկու անգամ (Հ. 31, 32) այս իմաստով։ Հ. 23։ լսած է՝ «կարճ ի կարճոյ ցուցանել»։ — Հ. 29ի մէջ հայ թարգմանիչը դարձեալ թողլով իւր բնագիրը, իւր նկարագրիչ տաղանդին անձնատուր կ'ընէ գրիչը։ Հեղինակին «ամբողջը իւր մասերուն բաժնելով, նոր պատկեր մը կը ստեղծէ. «Որպէս վասն հասարակաց (տ. § 4, բ, 28) շինութեան ապարանից՝ բազմաց կգործ բաժանեալ, բայց սկիզբն եւ կատարածն շինուածոցն ի բուն ճարտարապետ անդր հայի. այլ ծեփելն եւ գուներն եւ արծնելն եւ նկարելն, այն ի զարդարիչ անդր հայի». καθάπερ γὰρ τῆς καινῆς οἰκίας ἀρχιτέκτονι τῆς ὅλης καταβολῆς φροντιστέον, τῷ δὲ ἐγκαίειν καὶ ζωγραφεῖν ἐπιχειροῦντι τὰ ἐπιτήδεια πρὸς διακόσμησιν ἐξεταστέον = որպէս ի նորաշէն տան՝ ճարտարապետին է զբովանդակ շինուածոյն հոգալ, մինչդեռ այնմ՝ որոյ նկարելն եւ գունելն յանձն առեալ իցէ. հոգ ի մտի է զկարեւորացն վասն զարդուն»։ — Հ. 29. «Այնպէս եւ մերս». փխ. «սոյնպէս եւ, թուի ինձ, առ մերս է» = οὕτω δοκῶ καὶ ἐπὶ ἡμῶν։ Հ. 30. «Զհետ վարել ճշմարտութեան բանիցն». կը համաձայնի περίπατον ποιεῖσθαι λόγων եղծեալ տարբերակին (A. 44, 55, 71, 74, 93, 243, Compl.) հարազատ է ընդունուած բնագիրը. περὶ πάντων ποιεῖσθαι λόγον = զամենայնէ ճառ արկանել։ — «Զխորին

խորհուրդս խորագիտութեամբ ի վեր բերել- πολυπραγμονεῖν ἐν τοῖς κατὰ μέρος = զմանր մանր մասունս իրացն ի քննին արկանել: Չեմ կարծեր որ-ըստ պատահման խ.. խ.. խ.. իրարու հանդիպած ըլլան. բառախաղին զոհած է իմաստը: — Հ. 31. «Այլ զհամառօտ կարճաբանից՝ որպէս (ա՝ որ) այժմիկ պատմելոյ յանձն առեալս իցէ, յինէն պահանջելի է»· τὸ σύντομον τῆς λέξεως μεταδιώκειν καὶ τὸ ἐξεργαστικὸν τῆς πραγματείας παραιτεῖσθαι τῷ τὴν μετάφρασιν ποιουμένῳ συγχαρητέον = իսկ փոյթն համառօտ զբանն հատանելոյ եւ ի մանրապատում ճառից խորշելոյ նմա յանձն է, որոյ է զնիւթն յայլ կերպարանս ածել»: Անշուշտ չէ հասկցած τὸ ἐξεργ — μεταφ. ποι. եւ այս պատճառաւ չէ թարգմանած: Բայց մնացած մասին մէջ ալ օտար կը մնայ բնագրին: Նկատութեան արժանի է լեզուն:

## ԳԼՈՒԽ Գ.

Հ. 2. «Հարկ ի մի լինէր.» փխ. դէպ լինէր» = συνέβαινε: — «Մեծարել զերեւելի տաճարն հրովարտակօք, պատարագօք եւ տրօք բազմօք.» τιμᾶν τὸν τόπον καὶ τὸ ἱερὸν ἀποστολαῖς ταῖς κρατίσταις δοξάζειν = մեծարել զտեղին եւ զտաճարն ընտիր պատարագօք փառաւորել»: Հին թարգմա-

նութեան մէջ բացատիպ բառերը Հայուն ընդլայնումներն են, իսկ մեր թարգմանութեան բացատիպները՝ անոր դուրս թողուցածները կը մատնանշեն։ Բնականաբար խօսքին իմաստը էապէս կրած չէ։ — Հ. 3. “Մինչեւ Սեղեւկոս արքայ կողմանցն ասիացւոց ի սպաս պաշտաման կայր, եւ յիւրոց մտից զամենայն սպաս պաշտաման ի պատարագս ողջակիզացն ծախէր։„ Բնագիրը կ՚ըսէ. մինչեւ Ս.... զամենայն որ ինչ պիտոյն էր ի պաշտօն պատարագաց յիւրոց մտից ծախէր = χορηγεῖν ἐκ τῶν ἰδίων προσόδων πάντα τὰ πρὸς τὰς λειτουργίας τῶν θυσιῶν ἐπιβάλλοντα δαπανήματα. Հին Թարգմանութիւնն աւանդուած ձեւով այնքան անհեդեդ է, որ Թարգմանիչը պատասխանատու բռնելու փոխարէն կը բաղձամ այսպէս վերակազմել սկզբնականը. “մինչեւ Ս.... յիւրոց մտից զամենայն ի սպաս պաշտաման՝ ի պատարագս ողջակիզացն ծախէր„, Դուրս նետելով “ի սպաս պ. կայր„՝ հաւանաբար կրկնագրութեամբ ներս սպրդած յաւելուածը, կը ստանանք բնագրին համեմատ թարգմանութիւն մը, որուն մէջ մեր ազատաբան Թարգմանիչը դարձեալ կ՚երեւայ։ — Հ. 4. “Սիմովն անուն ի Բաղգեղ (a՝ Բագեղ. Zn՝ + Բենեամինի) գնդէ անտի առաջնորդէր տոհմին իւրոյ.„... ἐκ τῆς Βενιαμὶν φυλῆς προστάτης τοῦ ἱεροῦ καθεσταμένος = ի ցեղէն Բենիամինի, վերակացու եղեալ տաճարին։ Բաղգեղ տարբերակը կը մնայ ինձ համար անլուծանելի առեղծուած մը. BENIAMHN եւ

ΒΑΛΓΕΛ իրարու չփոթել այնքան դժուար է, որքան անհնար է, որ հայ գրչագիրներ Բենեամին ծանօթ անունը Բաղգեղ անլուր ձեւին փոխանցած ըլլան։ Արդեօք թարգմանիչն իրապէս ΒΑΛΓΕΛ եղծեալ ձե՞ւն ունէր։ Տարակոյս չկայ որ Zռի ‘‘Բենեամինի,, յետսամուտ սրբագրութիւն է։ — Միւս տարբերութիւնները դիւրաւ կը մեկնուին. φύλη նախ զինուորական իմաստով առած է ‘‘գունդ,,. ապա դիմած է երկրորդ իմաստին՝ ‘‘տոհմ, ցեղ,, զայս προστάτης ի կապելով՝ τοῦ ἱεροῦ իբր աւելորդ դուրս ձգած է, դիտմամբ թէ ոչ՝ որոշել չենք կրնար։ — Հ. 5. “Ստորին Ասորւոց„ = Κοίλης Συρίας. Մինչ Եզրի թարգմանիչը պարզ Ասորիք, կամ կողմանք Ասորւոց կը թարգմանէ, մերը դասական յատուկ բացատրութիւնը կը գործածէ (1 Մկ. Ժ, 69. 2 Մկ. Գ, 8. Դ, 8, 22. Ը, 8. Ժ, 11), որուն փոխարէն յետ դասականներու քով յերեւան կու գայ ‘‘Խորին Ասորիք,,։ Չեմ կարող ըմբռնել, թէ ինչպէս կրցած է ‘‘խորին,, ի նշանակութիւնը իբր մակդիր Ս. Եփրեմի՝ գիտնականներու մտադրութենէն այնքան վրիպիլ, որ արաբերէնի կամ պարսկերէնի մէջ բառին իմաստը փնտռած ըլլան (տ. Նորայր, էջ 403—404. Հբ. Ա, 975), մինչեւ որ Վարդանեան խնդրակէտը պարզեց իւր հմուտ գրչով (տ. Բառաքննական Դիտողութիւններ, Գ. Վիեննա 1921, էջ 67—68)։ Կարծեմ Մակաբայեցւոց գրքերը լաւագոյն ապացոյցը կ՚ընձեռեն որ Խորին Ասորիք =

Սուրին Ասորիք, եւ թէ Ս. Եփրեմի մակդիրը անոր հայրենեաց յորջորջումն էր լոկ։

Հ. 5. Տաճկաստանի = Φοινίκης. Սոյնպէս՝ Հ. 8. Դ, 4, 22. Ը, 8. Ժ, 11. մինչ ուրիշ թարգմանիչներ կը դնեն փիւնիկեցի (Ելք. Զ, 15. ԺԶ, 35. 1 Եզր Զ, 3. Ես. ԻԳ, 2. Գ. Ար. ԺԱ, 9)։ Մեր գրքին մէջ անգամ մը միայն Տաճիկ = Ἄραβες, իսկ առ Ագաթ. Եղիշ. Ղեւ. Թովմ. ստէպ։ Արդ եթէ այս համեմատութիւնը (Տ. = Ἄραβες) բացարձակ անփոփոխ ըլլար, իրաւունք կ'ունենայինք ենթադրելու, որ այն ամէն տեղ ուր որ մեր թարգմանիչը Տաճիկ-Տաճկաստան կը գործածէ, իւր յունարէն սկզբնագրին մէջ եղական տարբերակը՝ Ἄραβες, Ἀραβία կը կարդար։ Սակայն “Տաճիկ„ անունը այնքան սեղմ իմաստ ունեցած չի թուիր մեր նախնեաց քով, վասն զի փիւնիկեցի, քանանացի առմամբ այլուր եւս կը գտնենք դասական մատենագրութեան մէջ։ Զգօնի ճառերուն հայերէն թարգմանութեան մէջ (Գիրք որ կոչի Զգօն արարեալ Ս. Յակոբեայ Կ. Պ. 1824, էջ 43) քանանացի կինը կը կոչուի՝ “Տաճիկ-Ասորի„, մինչդեռ ասորերէն սկզբնագրին մէջ՝ “Քանանուհի„ (տ. Patrolog. Syr. հրտ. B. Graffin, Պարիս 1894, I, էջ 94)։ Եփրեմի Համաբարբառին մէջ (Վենետիկ 1836, էջ 120, 127) նոյն կինը “Տաճկ-Ասորի„ կը յորջորջուի, եւ որովհետեւ նա Մկ. Է, 26՝ Συροφοινικίσσα (Հայ. թրգմ՝ փիւնիկ-Ասորի) կը կոչուի, եւ Մտ. ԺԵ, 21 ու Մկ. Է, 24 կը դիտուի, որ հեթա-

նոս կնոջ պատմութիւնը տեղի ունեցած է 'ի սահմանս Տիւրոսի եւ Սիդոնի„ = Փիւնիկէ, կը հետեւի որ հոս ալ Տաճիկ = Փիւնիկէ, սա տարբերութեամբ, որ այս անուան կից է միշտ նաեւ Ասորի։ Այս՝ եւ Տաճիկ անուան բազմակողմանի առումը դիւրաւ կը մեկնէ պատմութիւնը։ Ե. դարու հայ մատենագիր-ներու այլեւայլ տեղիքներէն (տ. Կանայեան, ԱՐՐՏ 1913, 493—496) կը հետեւի, որ հինները Տաճկաստան ըսելով կը հասկնային Յունաց եւ Հռովմայեցւոց Ἀραβία ἡ ἔρημος-ը, ասորական քաղաքակիրթ երկրին եւ Եփրատի միջեւ գտնուած Նաանկիւնը, իսկ Միջագետքի Արա-բիայ'ին համար կը գործածեն պարսկական ձեւ մը՝ Արուաստան = *Bēd-'Arbājē* (Marquart, Erānšahr, էջ 163)։ Ասորիքի սահմանակից անա-պատը լի էր Արաբներով, որոնք Յ. Ք. երկրորդ-դարուն արդէն խուռնընթաց Ասորիք կը խու-ժէին եւ ընդարձակ տեղեր կը բռնէին (R. Dussaud, Les Arabes en Syrie avant l'Islam, Paris 1907, էջ 4—14. — V. Chapot, La frontière de l'Euphrate de Pompée à la conquête Arabe, Paris 1907, էջ 24—35)։ Տիգրան Մեծ սերտ աղերս ունէր այս Արաբներուն հետ. նուա-ճած էր զանոնք ասորական անապատի մէջ եւ տեղահանած (Plut. Luc. c. 21)։ Արաբական ցեղերու մէջ ամենահզօրն էին Տաճիկք, որոնք ապա Հերայի թագաւորութիւնը հիմնեցին։ Ասոնց անունը տարածած են Հայք բոլոր Արա-բաց — պատմութեան մէջ յաճախադէպ

երեւոյթ մը — եւ ապա նաեւ այն ամէն տեղերուն վրայ, որոնց մէջ անոնք հոծ բազմութիւն կը կազմէին — Ասորիք, Փիւնիկէ։

Հ. 6. "Ազգի ազգի գանձիցն." τὸ πλῆθος τῶν διαφόρων = զբազմութիւն գանձից։ — Հայը շարունակելով կը փախցնէ՝ καὶ μὴ προσήκειν αὐτὰ πρὸς τὸν τῶν θυσιῶν λόγον = եւ չզուցէ համեմատութիւն ի միջի ընդ զոհս ողջակիզացն։ Հոս ալ աչքի վրիպանք կայ. այս նախադասութենէն թէ յառաջ եւ թէ վերջը εἶναι կը գտնուի. առաջինին քով կանկ առած եւ սխալմամբ երկրորդ εἶναιէն շարունակած է. Հ. 6. "եւ պարտ այնպէս էր, ասէ, ընդ ձեռամբ արքայի ի սպաս զոհիցն պաշտել զայն։" Սակայն հայրենադաւ Սիմոն Հայ թարգմանչին կարծածէն բոլորովին ուրիշ բան կը յուսադրէ. εἶναι δὲ δυνατὸν ὑπὸ τὴν τοῦ βασιλέως ἐξουσίαν πεσεῖν ἅπαντα ταῦτα = թէ մարթ իցէ ընդ ձեռամբ արքայի արկանել զայն ամենայն։ — Հ. 7. Յանձն առին Ապողոնիոս եւ թագաւորն ...ցուցանել." աւելի ընտիր է a "Յանձն առ Ա.՝ թագաւորին... ցուցանել։" Բայց այս ալ սկզբնագրին համեմատ չէ. συμείξας δὲ ὁ Ἀπολλώνιος τῷ βασιλεῖ... ἐνεφάνισεν = իբրեւ Ա. թագաւորին ընդ առաջ ել... եցոյց։ Քանի որ թարգմանիչն այլուր (Ժգ. 3. Ժդ. 14, 16. Ժե. 26. 1 Մկ. ԺԱ. 22) συμμ. ուղիղ կը թարգմանէ, հարկ է ենթադրել, որ հոս կամ սխալ կարդացած եւ կամ ըստ կամի փոխած է։ — "Յառաջ կոչեաց".

յուն. աւանդուած բնագիրն ունի προχειρισάμενος = ընտրեալ. բայց կարելի է շատ դիւրաւ (հմմտ. ԺԴ. 12) προσκαλεσάμενος տարբերակն ենթադրել հայուն սկզբնագրին մէջ, ինչպէս ունի նաեւ Ասորին: — "Զհանդերձապետ" յուն. τὸν ἐπὶ τῶν πραγμάτων = (զպետ) ի վերայ իրացն (արքունի): "Հանդերձապետ" պարսկական տիտղոս մըն է, որ Ս. Գրոց հայերէն թարգմանութեան մէջ յաճախ կը գործածուի յունական տիտղոսներ կամ պաշտօններ արտայայտելու համար: Եւ որովհետեւ պարսկական-հայկական ու յունական տիտղոսներն իրարու ճշդիւ չեն համաձայնիր (Hübschmann, Arm. Gramm. I, էջ 179), այս պատճառաւ հայերէն նոյն բառը յուն. այլեւայլ տիտղոսներու տեղ կը բռնէ, բնականաբար իմաստը մթագնելով կամ փոփոխելով, այսպէս "հանդերձապետ = οἰκόνομος." 3 Թգ. ԺԶ, 9. προστάτης, Եղ. Բ, 12. ταμίοις Ես. ԻԲ, 15: — Հ. 7. "հանել բերել ի քաղաքէ անտի. ἐκκομιδὴν ποιήσθαι բացատիպերը թարգմանչին են. կրկին բայ՝ ոչ լոկ իբր պարզ դրուած է այլ յուն. ex- մասնիկը բացատրելու համար: Հ. 8ի մէջ երկու անգամ "վաղվաղակի" (շու արար. — կատարէր) կը յաւելու: — Հ. 9. "Միրով ամենայն առատութեամբ" յուն. միայն առաջին բառն ունի: ab "Միրով.ը կը կարդան "Միմոն", որքան ալ առաջին ակնարկով ընտիր երեւայ այս տարբերակը, սակայն "Միմոն" տակաւին քահանայապետութեան չէր բարձրացած:

Գրչագիրներու գերզգօնութեամբ կը մեկնուի սրբագրութիւնը։ — Թարգմանիչը կը խզէ դարձեալ սկզբնագրին դրած կապանքները եւ ազատ կը շարադասէ. «Սկսաւ նա պատմել նոցա, որպէս ցուցին արքայի եւ ասէ. ո՞, կամ ընդէ՞ր, եւ կամ ո՞րպէս ամ-բաստան եղեն զձէնջ առ արքայի, եւ կամ արդարեւ այնչափ գանձք իցե՞ն, զոր ասացին.» ἀνέθετο περὶ τοῦ γεγονότος ἐμφανισμοῦ καὶ τίνος ἕνεκεν πάρεστι διεσάφησεν ἐπυνθάνετο δὲ ει ταῖς ἀληθείαις ταῦτα οὕτως ἔχοντα τυγχάνειν = ծանօթս եւ վասն ցուցանելոյն եւ յայտ արար, եթէ վասն էր իւրք եկեալ իցէ. հարցանէր, եթէ արդարեւ իրացն այնպէս դիպեա՞լ իցէ։ — Հ. 10. «Եկաց յառաջ... եւ ասէ, են են արդարեւ.» ὑποδείξαντος = իբրեւ ցուցանէր։ — Հ. 11 «այլ ոչ եթէ այնչափ որչափ ամբաստանող նամակագիրն... խօսեցաւ.» οὐχ ὥσπερ ἡ διαβάλλων = ոչ որպէս ասէ բանսարկուն։ — Նամակագիր = ἐνδεικτής Դ, 1. Զ, 10 եւ հոս՝ διαβάλλων՝ մեր գրքին յատուկ։ — Հ. 13. «Նա իբրեւ լուաւ զբանս քահանայապետին.» ընդունուած յուն. բնագիրը՝ «ὁ δὲ Ἡλιόδωρος» = իսկ Յեղիոդորոս. բայց A. 55, 106՝ ὁ δ᾽ ἕτερος = իսկ միւսն։ — Հ. 13. Համարին օգնութեամբ 14. համարը թարգմանիչն կ՚ընդլայնէ այսպէս. «որ եւ ժամ յայտ առնէր՝ մտանել համարել. + առնել պատրաստէր ըստ հրամանին արքունի». «ταξάμενος δὲ ἡμέραν

εἰσάξει τὴν περὶ τούτων ἐπίσκεψιν οἰκονομήσων = իբրեւ ի սահմանեալ աւուր ի ներքս եմուտ, զի տեսցէ քննեսցէ: — «Ջան եւ վտանգ խռովութեան»: միայն ἀγωνία = խռովութիւն: — Հ. 15. «Ողջ անարատ հաստուցանել մարթասցէ»: σῶα διαφυλάξαι = անարատ պահեսցէ: Հայը փոխանակ խնդրուած պատճառին՝ բաղձացուած արդիւնքը կը դնէ: Այս խօսքը բառ առ բառ կը կրկնէ նաեւ Հ. 22: — Հ. 17. «Իջեալ մածեալ պատեալ պաշարէր»: յուն. լոկ վերջինը. περιείχετο: «Մածանիմ»ի այս փոխաբերական գործածութեան համար հմմտ. Իմ ԺԷ 14 = φόβος ἐπῆλθεν. — «Ահ եւ երկիւղ»: սոյնպէս՝ Ե, 13, որ սակայն աւելի կը համաձայնի յուն. τρόμος καὶ φόβος ի (Ծն. Թ, 2, Երկ. օր. Բ, 25. ԺԱ. 25. 1 Մկ. Է, 8. ԺԳ, 2), իսկ հոս միայն δέος ունի բնագիրը: — Հ. 18. «Պատիւ մեծի տաճարին» փխ. տեղին = τὸν τόπον. — Հ. 20. «Ձեռս համբարձեալ յերկինս զմատունս տատանէին»: Բացատիպ բառերն Հայուն հնարած մէկ մանրամասնութիւնը կը ներկայացնեն, առանց սակայն հաւանականութեան դրոշմի, վասն զի անբնական գաղափար մը կը բովանդակեն: — Ապա յառաջ կը տանի եւ կ'ընծայէ գեղեցիկ ու սրտաշարժ պատկեր մը. Հ. 21. «Եւ անդ էր ողորմ տեսիլ տեսանել, զի առհասարակ անկեալ մարդկանն՝ զաղօթս՝ թաւալելով յերկինս մատուցանել»: ἐλεεῖν δ' ἦν τὴν τοῦ πλήθους παμμιγῆ πρόπτωσιν» = եւ էր անդ ողորմել, թէ զխարդ

խառնիճաղանճ ամբոխն ի գումս անկանէր։ — «Զմեծապէս սքանչելի» յուն. միայն առաջինը՝ μεγάλως։ — Հ. 22ի մէջ Թարգմանիչը կը վերադառնայ «ողորմ տեսլեան» աւելցնելով որ «Թաւալելով անկեալ» կ'աղօթէր ժողովուրդը։ «Զաւանդս»ի միտքը կը լուսաւորէ տալով յատկացուցիչ մը՝ «հաւատացելոց»։ Իսկ «ողջ անարատ հատուցանել»ը, համաձայն Հ. 15ի, գրած ժամանակ կը մոռնայ բնագրին մակբայակերպը՝ «μετὰ πάσης ἀσφαλείας» = յապահովի։ — Հ. 24. «Երեւոյթ մի նշանի (ուղիղ ա՝ նշան) մեծ». ἐπιφανείαν μεγάλην. բառս երկու իմաստն ալ ունի. Համմտ. Բ, 21 (յայտնութիւն = երեւոյթ), Ե, 4 (նշան). Առաջինը կը յարմարի տեղւոյս։ Սոյն համարիս շարունակութեան մէջ Հայը պերճաբանութեամբ կ'արտադրէ խօսք մը, որուն նօսրատիպ մասերը միայն կը պահանջուին սկզբնագրին համար «լուծան յքան ընդարմացան ի պարտութիւն վատթարութեան մատնեցան յԱստուծոյ զօրութենէ անտի»։ — Հ. 25ի մէջ «յանկարծակի» կ'երեւայ հեծեալ մը, որուն ստորագրութիւնը այնքան կարճ կը կապէ Հայը, որ քանի մը տող դուրս կը մնան. «Երեւելի զարդու ի զէն ոսկի վառելով», կ'ըսէ կ'անցնի Հայը, մինչ հեղինակը կը գրէ. «χαλλίστῃ σαγῇ διακεκοσμημένος, φερόμενος δὲ ῥύδην ἐνέσεισε τῷ Ἡλιοδώρῳ τὰς ἐμπροσθίους ὁπλάς. ὁ δὲ ἐπικαθήμενος ἐφαίνετο χρυσῆν πανοπλίαν ἔχων = շքեղ զրահիւք զարդարեալ,

որ ահեղ գնացիւքն Հեղիոդորեայ՝ զառաջոյ զսպառազէնոն ղղրդեցուցանէր (երիվարն). իսկ հեծեալն երեւէր ի զարդ եւ ի զէն ոսկի վառեալ։ — Այս երկար խօսքը դուրս թողլով, վերը անգամ մը դրած «երեւէր»ը շատ դիւրաւ կը կարդուի նաեւ հ. 26 ի հետ, որուն անցնելով՝ Հայը զանց առած է προεφάνησαν առաջի բառը. մինչ դեռ հեղինակն ստիպուած էր երկար միջանկեալէն վերջ նման բառ մը կրկնել։ — «Հզօրեղք ի զարդ գեղեցիկ զարդարեալք». τῇ ῥώμῃ μὲν ἐκπρεπεῖς, καλλίστοι δὲ τῇ δόξῃ = զօրութեամբ՝ կարի քաջք, եւ փառօք՝ ամենեւին գեղեցիկք։ — «Մատեան վաղվաղակի յաջմէ եւ յահեկէ», փխ. յերկուց կողմանց = ἐξ ἑκατέρου μέρους. — «Ի մեծամեծ հարուածս հարկանէին», ճշգիւ = πατάσσειν πληγὴν μεγάλην 1 Մկ. Ա, 32. Ե, 3, 34. Ը, 4 եւն մինչ դեռ հեղինակն հոս թէեւ նոյնիմաստ բայց ուրիշ ասութիւն կը գործածէ. πολλὰς ἐπιῤῥιπτοῦντες αὐτῷ πληγάς։ — հ. 27. «Մինչեւ անկեալ յանզգայ թմբրեալ մերձ ի մահ, բառնային զնա». ἄφνω δὲ πέσοντα πρὸς τὴν γῆν καὶ πολλῷ σκότει περιχυθέντα συναρπάσαντες καὶ εἰς φορεῖον ἐνθέντες = զանկեալն յանկարծակի յերկիր եւ զմածեալն մթով բազմաւ բառնային եւ դնէին ի վերայ դագաղաց։ Շատ հաւանական է, որ Հայը ἄφνω (յանկարծ) շփոթած ըլլայ նման շաղկապի մը հետ (ἐφ'φ, ἀφ'φ?). πρὸς τὴν γῆν (յերկիր) չունի նաեւ Cod. 52. ուստի գուցէ նաեւ Հայուն սկզբնա-

գիրը. իսկ φορεῖον (դագաղ) թարգմանչին անծանօթ կը թուի, վասն զի հոս զանց կ'առնու իսկ Թ. 8 սխալ կը թարգմանէ։ — Հ. 28. "Այնչափ շքով եւ պատուով եւ սաստիւ եւ սպասաւորօք„ Հայուն այս յաւելումները բնական հետեւութիւն են հեղինակին երկու բառով ըսածին. "բազում սպասու եւ ամենայն թիկնապահ գնդաւն„ = μετὰ πολλῆς παραδρομῆς καὶ πάσης δορυφορίας. — Հ. 29. Մասամբ կ'ընդլայնէ իր սովորական ոճով կամ կը փոփոխէ եւ մասամբ բառեր կը փախցնէ. այսպէս զանց կ'առնու καὶ ὁ μὲν διὰ τὴν θείαν ἐνέργειαν = Եւ նա՝ յաստուածեղէն զօրութենէ անտի — անշուշտ որովհետեւ Հ. 28ի մէջ նման խօսք մը կար արդէն (տ. § 2), բայց փոխարէն գիտէ բնագիրը ճոխացնել փոխելով. "անմռունչ անբարբառ պակասեալ յամենայն յուսոյ փրկութեան, ընկեցեալ յերկիր կիսամահ դնէր„ փխ. "... անբարբառ եւ պակասեալ յամենայն յուսոյ է — զրկեալ (ընկեցեալ) ի փրկութենէ = ...ἄφωνος καὶ πάσης ἐστερημένος ἐλπίδος καὶ σωτηρίας ἔρριπτο։ — Իսկ Հ. 30 կրնանք ըսել որ առանց իմաստի փոփոխութեան Հայը գրեթէ ամէն բառի վրայ բան մը աւելցուցած է. "Իսկ շուրջ զՈնեաւն էին„ փխ. "Իսկ Նոքա„։ — Znao կը կարդան "զնէեմեաւն„, գրչագրական սխալ մը Բ. գլխուն ազդեցութեամբ ծագած. — "զիւր տեղիսն սրբութեան„ փխ. "զիւր տեղին„։ — "Խռովութեամբ„ զանց կ'առնու δέους καὶ = ահիւ եւ. — "Ցերեւել փառաց„.

"ուրախութեամբ լնուլ + եւ անպակաս զուարթութեամբ", Նախադասութեան աւարտելէն վերջ ըրած յաւելուածով կարծես կ'ուզէ հասկցնել, որ εὐφροσύνη ի հանդէպ "ուրախութիւն" շատ տկար կը մնայ։ — Հ. 31. "փոխէ զշունչն շնորհել նմա. այնպէս անկեալ չարաչար ի վերայ յետին ժամանակի այրն ցամաքեալ գնէր" փխ. "փոխէ զկեանսն շնորհել նմա, որ ամենեւին ի վերջին շունչ ապաստան գնէր = καὶ τὸ ζῆν χαρίσασθαι τῷ παντελῶς ἐν ἐσχάτῃ πνοῇ κειμένῳ։ — Հ. 32. "Ի խնդրուածս լինէր, պատարագս մատուցանէր." հեղինակը "աղօթքը" իբր բնական պատրաստութիւն զոհի՝ կը լռէ. հայն ինքնին կ'աւելցնէ։ — Հ. 33. "Վաղվաղակի... գային իջանէին առաջի" փխ. "դարձեալ երեւեցան" = πάλιν ἐφάνησαν· Զայս այսպէս փոխելէն վերջը, երբ հեղինակը յետոյ՝ Հ. 34 կ'ըսէ. "աներեւոյթ եղեն", հայն ինք իրեն հաւատարիմ մնալով. "անդէն վերացան" (իջին — վերացան) կը դնէ։ — Ուշադրաւ է թէ ինչպէս կը լրացնէ հայը կարծեցեալ պակաս մը. վերը Հ. 31 Հելիոդորոս անբարբառ խելակորոյս՝ ճգնաժամու մէջ էր. Հ. 35ի մէջ Հելիոդորոս զոհ կը մատուցանէ ի շնորհակալութիւն. ասկէ յառաջ հայը կը դիտէ որ Հելիոդորոս "իբրեւ անձին զգաց, յոտն կացեալ վաղվաղակի" եւն, զայս հեղինակը կը լռէ, վասն զի Հ. 34է բացայայտ կը հետեւի։ Նմանապէս ընդարձակելով կը պատմէ

Հեղիոդորի ըրածները. «Ողջակէզս պատարագաց մատուցանէր Տեառն, ուխտս եւ աղօթս մեծամեծս կատարէր Տեառն, որ շնորհեաց նմա զոգիսն, եւ անդէն ի նոյն չափ յառաջինն զօրացոյց.» Բացատիպերը Հայուն սեպհական են: — Հ. 36. «Եւ ընդ ամենայն տեղիս լնոյր զսքանչելիսն Աստուծոյ վկայութեամբ» փխ. «եւ ամենեցուն տնէր վկայութիւն զգործոցն մեծին Աստուծոյ» = ἐξεμαρτύρει δὲ πᾶσιν ... ἔργα τοῦ θεοῦ μεγίστου. — Ապա կը յաջորդէ դարձեալ նկարագրական տեղիք մը, որ կը ցուցնէ, թէ ինչպէս Հայը վիպանման կենդանի խօսակցութիւններ կը կերտէ եւ նոր գաղափարներ կը հիւսէ: — Հ. 37—38. «Թագաւորն իբրեւ սկսաւ հարցանել զՀեղիոդորոս, թէ ո՞րպէս, զիա՞րդ յո՞ր գործ երթեալ էիր, զի՞նչ վճարեցեր: Սկսաւ տալ զրոյցս քանքատելով եւ ասէ. ո՜հ, Յերուսաղէմ երթեալ երթիցէ որ ոք ձեր թշնամի եւ իրաց մեծաց ձերոց վնասակար իցէ, զնա՛ հրամայեսջիր յղել, եւ գտջիք զնա անտի այսր՝ գանալից չարագան, թէ ապրել միայն կարասցէ». փխ. Իբրեւ եհարց թագաւորն զՀեղիոդորոս. զո՞ ոք արդեւք մարթ իցէ առաքել միւսանգամ յԵրուսաղեմ, ասէ. Եթէ է քո թշնամի կամ մատնտու իրաց արքունեաց, յղեա՛ զնա անդր, եւ ընկալցիս զնա յետ՝ գանալից, թէ ապրել միայն կարասցէ: — Հ. 39. «Որոյ զօրութիւնն յերկնից երկինս (Ն՝ յերկիր).»

փխ. «Որոյ տուն բնակութեան են երկինք» = ὁ τὴν κατοικίαν ἐπουράνιον ἔχων: — «Թշնամութեամբ կամ թէ արհամարհանօք». փխ. «ի չար միտս» = ἐπὶ κακώσει: — «Մեծամեծ հարուածովք հարեալ». անշուշտ նախընթաց ստորագրութեան ազդեցութեամբ վերստին կը դնէ այս յաճախ կրկնած ասութիւնը, մինչ հեղինակը կը շատանայ ըսելով. τύπτων: — Հ. 40. «Այսչափ բանք եղեն», փխ. այսպէս իրքն վճարէին = οὕτως ἐχώρησεν. հմմտ. Ժ, 9. «այսչափ» բանք. իսկ յոյնը՝ οὕτως εἶχε = այսպէս դիպէր:

## ԳԼՈՒԽ Գ.

Հ. 1. ‘Յաճախէր ամբաստան լինէր... շարժեաց եւ ըկեաց... առաջնորդ եւ գործիլն’: Սկզբնագրին մէկ բառին փոխարէն՝ հայը կը դնէ երկու. բացատրիչն իրեն կը պատկանի: Նոյնպէս, Հ. 2. «զայցելու եւ զերախտաւոր զազգին, զնախանձայոյզ զվրէժխնդիր... իշխէր ի ներքս արկանել կշտամբելով», վերջին խօսքիս մէջ փոխ. պարզ «կոչել»: — Հ. 3. ‘Զհեռ նախանձ թշնամութեան’ փխ. զթշնամութիւն = ἔχθρας. իսկ յաջորդը չէ հասկցած. «մինչեւ ոմանց... մահու պարտ առներ նոցա զսուրբն». խօսքս մութ եւ անկանոն է. յունարէնէ անկախ կը միտիմ եղծուածն ուղղել. «մինչեւ ոմանց ... մահու պարտ առնել զսուրբն». բայց հարկաւ բնագիրն բո-

կրրովլին ուրիշ իմաստ ունի. ὥστε καὶ διά τινος ... φόνους συντελεῖσθαι = մինչեւ մի ումն... սպանութիւնս կատարէր։ — Հ. 4. «Իբրեւ զայնչափ անհնարին տեսանէր հակառակութեամբ (ուղղել ըստ ai՝ հակառակութիւն) Հոմիա, դարձեալ ի մոլորութիւն (ուղղելի՝ մոլութիւն) անդր հայեր Ապողոնիայ„ փխ. կմտաւ ածեալ Ոնիայ թէ քանի դժնդակ հակառակութիւնն իցէ եւ մոլելն Ապողոնիայ = συνορῶν ὁ 'Ο. τὸ χαλεπὸν τῆς φιλονεικίας καὶ Α. μαίνεσθαι։ Հ. 5. «Յայնչափ զմիտս Թագաւորին բորբոքէին, անհնարին համարեցաւ այնուհետեւ զհասարակաց օգուտ ի մէջ մատուցանել„։ Հեղինակը ծիշդ հակառակը կ'ըսէ. ὡς τὸν βασιλέα διεκομίσθη, οὐ γινόμενος τῶν πολιτῶν κατήγορος, τὸ δὲ συμφέρον κοινῇ κατ' ἰδίαν παντὶ τῷ πλήθει σκοπῶν = մատեաւ առ Թագաւորն ոչ իբրեւ ամբաստան զքաղաքացեացն, այլ ամենայնիւ յօգուտ հասարակաց ժողովրդեանն հայէր։ Չեմ կարող հասկնալ թէ ինչպէս առաջնորդուած է Հայը իր տարօրինակ թարգմանութեան. արդեօք «բորբոքէին„ գաղափարը յղացած է Հ. 4ի συναύξοντα τὴν κακίαν յիշելով։ Աչքի կը զարնէ դարձեալ որ Հայը փախցուցած է «οὐ γιν. κατηγ։„ — Հ. 6. «Առանց Թագաւորին հրամանի. Մանաւանդ զի տեսանէր զՍիմոն անդադար ի վերայ խարդախութեանց խորամանգութեամբ անհանգիստ ջանացեալ„. փխ. «զի տեսանէր, եթէ առանց խնամակալութեան Թագաւորին անհնա-

րին էր գալ իրացն ի խաղաղութիւն եւ Սիմո-
նեայ կալ յամբարշտութենէն, = ἑώρα γὰρ
ἄνευ βασιλικῆς προνοίας ἀδύνατον εἶναι τυχεῖν
εἰρήνης ἔτι τὰ πράγματα, καὶ τὸν Σίμωνα παῦ-
λον οὐ ληψόμενον τῆς ἀνοίας. — ἀδύν. մինչեւ
πραγ. փախցուած ըլլալով՝ «առանց թագաւորին
հրամանի» մնացած է օդոյ մէջ, Z այս խօսքերը
կէտով կը բաժնէ հետեւորդէն եւ կը միացնէ
Հ. 5ի, որ սակայն ամենեւին յարմար չէ։ Թարգ-
մանիչը կը ծանրանայ Սիմոնի միայն չարու-
թեան վրայ, մինչ հեղինակը «խաղաղութիւն»
եւ «ամբարշտութիւն» նոյն չափով կը շօշափէ։
— Հ. 7. «Իբրեւ Սելեւկոս փոխեցաւ յաշ-
խարհէ.» Այսպէս նաեւ Ե, 5. Զ, 27. Է, 40.
Թէեւ յոյնը «ի կենաց» կ'ըսէ, բայց իմաստը
չի փոխուիր, այս պատճառաւ հայր թարգմանու-
թեան այս ձեւը կը պահէ, եթէ նոյն իսկ առանց
βίονի պարզ μεταλλάξαντος կ'ըսէ հեղինակը
Զ, 37. Է, 7, 40. ԺԴ, 46։ — «Յասոն անուն
ոմն եղբայր Հոնեայ ջանացաւ շնութեամբ
մտանել հանել զքահանայապետութիւնն Հո-
նեայ»։ Բացատրիչ բառերը թարգմանչին յա-
ւելուածներն են. Մնացածը համեմատ է յոյնին.
ὑπενόθευσεν Ἰάσων ὁ ἀδελφὸς Ὀνίου τὴν ἀρ-
χιερωσύνην. — Հ. 8. «Յարքունիս». Նոյնպէս
Հ. 28 «ի դուռն» կ'ըսէ թարգմանիչն փխ.
«թագաւորի» կամ «արքայի»։ βασιλεῖ։ — Հ. 9.
«Մատուցից. ասէ». ուղղակի խօսակցու-
թեան կը փոխէ սկզբնագրին անուղղակի բառը.
«խոստացաւ» = ὑπισχνεῖτο։ — «Թէատրոնս».

հոս եւ Հ. 12 բառս կը գործածէ, անշուշտ անճիշդ կամ գոնէ շատ ընդհանուր առումով՝ γυμνάσιονի փոխարէն, զոր 1 Մկ. Ա, 14. “հրապարակ” թարգմանած է։ — “շինեցին ասէր” փխ. շինել (խոստացաւ. տես՝ վերը)։ — Հ. 10. “զեշխանութիւնն զոր խնդրէր”։ Բացատիպերս չունի յոյնը։ “Հետ ընդ հետ վաղվաղակի ի Յունաց (անիմաստ գրչասխալիս փոխարէն ուղղելու է՝ համեմատ aի եւ սկզբնագրին՝ Յասոն) ի հեթանոսութիւն անդր զընտանի օրէնսն դարձուցանէր”։ — “հեթանոս” (τὰ ἔθνη, Hübschmann I, էջ 360, թիւ 234) եւ ածանցները կը կիրարկուին փխ. Ἕλλην հմմտ. Հ. 13, 15. Յովհ. Է, 35. Հռմ. Ա, 16։ “Զընտանի օրէնսն”, փխ. “զազգակիցսն” = ὁμοφύλους։ — Հ. 11. Այս համարը բաւական լաւ թարգմանուած է, բայց սպրդած են քանի մը գրչագրական սխալներ։ “Իւ փտողոմեայ” ao “եւ Պտղոմեայ” ուղղելու է “Եւպողեմեայ” (Գուրեան, էջ 249), որուն առաջին վանկը “Եւ” հայերէն շաղկապ կարծուած է։ “Սիրով” կարդալու է “սիրոյ”, ինչպէս քովի “օգնականութեան” բառը կը ցուցնէ, որ սկզբնագրին մէջ “եւ” ով կապուած է։ Երկու սխալ գործած է թարգմանիչը. τοῦ ποιησαμένου τὴν πρεσβείαν կը թարգմանէ “իժամանակի հրեշտակութեանն” փխ. որ “առաքեցաւն ի հրեշտակութիւն”. ասոր կը յաջորդէ πρὸς τοὺς Ῥωμαίους = “առ Հռովմայեցիս”, զոր Հայը զանց կ՚առնու։ — “Ի բաց քակեցին” փխ. “իբաց քակէր” = καταλύων.

կարծելով որ բառս Նախընթաց «կատարեցան»ի համակարգ է, յոյնակի դրած է, սակայն անոնք իրարմէ բոլորովին անկախ եւ «կատարեցան» է վերջ միջնակէտով մը բոլորովին անջատուելու են իրարմէ: «Զպարգեւսն զառաջինս» թարգմանչին կը պատկանին: — Հ. 14. «Զի այնուհետեւ թողեալ էր զպաշտօն պատարագաց սեղանոյն, եւ զդասս տաճարին, եւ արհամարհեալ էր զողջակէզս պատարագացն»: Ազատ թարգմանութիւն, փխ. «որպէս զի եւ ոչ իսկ փոյթ ի պաշտօն սեղանոյն լինել քահանայից, այլ արհամարհել զտաճարն եւ անփոյթ առնել զողջակիզօքն» = ὥστε μηκέτι περὶ τὰς τοῦ θυσιαστηρίου λειτουργίας προθύμους εἶναι τοὺς ἱερεῖς ἀλλὰ τοῦ μὲν ναοῦ καταφρονοῦντες καὶ τῶν θυσιῶν ἀμελοῦντες: — «յօժարագոյնս տային զանձինս իւրեանց ազգք քահանայիցն ի մարզիչս եւ բռնամարտիկս եւ յանօրէն բաշխոյս կաքաւչաց»: Թարգմանիչը տեղ եւ իր՝ անձի վերածելով՝ յեղաշրջած է խօսքը փխ. «կանխէին ունել մասն յանօրէն կաքաւին՝ յասպարիսին» = ἔσπευδον μετέχειν τῆς ἐν παλαίστρᾳ παρανόμου χορηγίας: — «եւ արդնընկէց տէգընկեց ձայնատու ժամանակաւն». «Տէգընկէց» չունի a եւ լուսանցագիր մեկնութիւն կը թուի ցանցառադէպ «արդնընկէց»ի (= ἄρδις + ընկեց)· խօսքս կը նշանակէ. տէգընկեցութեամբ նշան կը տրուէր խաղը սկսելու, եւ քահանայք անհամբեր կը սպասէին այն նշանին: Հեղինակը զայս

μετὰով կը բացատրէ, բայց որովհետեւ Հայը նախընթացը յեղաշրջած էր, լոկ գործիական հոլովով կապ չի հաստատուիր անոր հետ եւ խօսքը կը մնայ առկախ, ուր առաւելն պէտք է «կաքաւչացոյց» վերջ միջակէտն ու «եւ»ը ջնջել ու քերականօրէն դժուարաւ վաւերականի միութիւն մը յօրինել. «տային զանձինս. յանուրէն բաշխոյս կաքաւչաց արդնընկէց ձայնատու ժամանակաւն»: — Հ. 15. «զանօրէն հեթանոսութեան» յուն. Ἑλληνικὰς. հմմտ. Հ. 10: — Վերադիր ածականին «զանօրէն» վարժած էր գրիչը Հ. 11, 14: — Հ. 16. «Վաղ հաստանէին»: — Հ. 18. «Արդ էր ժամանակ եկեալ հասեալ՝ էր դից պաշտօնն հնգամեայ պաշտամանն» փխ. իբրեւ կատարէին հնգամեայ մրցութիւնք = ἀγομένου δὲ πενταετηρικοῦ ἀγῶνος: Որովհետեւ այս կուռքերը կրօնական նկարագիր ունէին եւ անոր միշտ մեծամեծ զոհեր կը կցուէին, այս պատճառաւ Հայը սոյն տեսակէտն աւելցնելով (դից պաշտօն) խօսքն ընդլայնած է: Աւանդուած բնագիրը քիչ մը խանգարուած պէտք է նկատել, եթէ չենք ուզեր հաստատել, որ երկու թարգմանութիւն կայ մեր առջեւ, որոնցմէ մին անկատար թողլով (էր ժամանակն) երկրորդ մը (էր դից եւն) կազմած է Հայը՝ առաջնէն անկախ: — Հ. 19. «Ձայն. պաշտօն .. խաղալիկս եւ հանդիսականս յղէր:» Սկզբնագիրը բացատիկ բառերը չունի: — «սատեր», յուն. δράχμας. «Սատեր» Ս. Գրոց մէջ զանազան իմաստներով կը գործածուի, անոր

համար կարելի չէ որոշել, թէ մեր դէպքին մէջ Հայուն սկզբնագիրն ինչ ընթերցուած ունէր։ Սատեր = στατήρ Մտ. ԺԷ, 27. διδραχμή Ծն. Ի, 14, 16. ԻԳ, 15, 16. Ելք. ԻԱ, 32. δραχμή 2 Մկ. Դ, 20. ԺԲ, 43. վերջին տեղիքներէն գուցէ կրնանք հոս δραχμή հետեւցնել։ «Վահագնի պաշտաման» = τοῦ Ἡρακλέους. Ե. դարու հայ մատենագիրներն արդէն այս համեմատութիւնը կը ճանչնան (տ. Սարգիսեան, էջ 14), այս պատճառաւ մեր թարգմանիչը փոխանակ օտար անուան Հայոց սովորականը կը դնէ. համմտ. Weber, Die katholische Kirche in Armenien, էջ 34—38. Халатянцъ, Арм. эпосъ, էջ 201—208։ — «Զի մի խառնեսցեն զայն արծաթ ի զոհս կռոց պաշտաման», փխ. «մի վասն զոհից ի կիր արկանել» = μὴ χρῆσθαι πρὸς θυσίαν. «զի ոչ էր պարտ եւ պատշաճ ի սուրբ տեղւոջէ անտի գանձ երթալ զոհից կռոց դից պաշտաման», փխ. «զի այն չիցէ ի դէպ, այլ յայլ պիտոյս զայն (զարծաթն) որոշել» = διὰ τὸ μὴ καθήκειν, εἰς ἑτέραν δὲ καταθέσθαι δαπάνην։ Ուրեմն Հայը չէ հասկցած աղերսը. կ'երեւայ մտադրութենէն վրիպած է δὲ հակադրական մասնիկը, իսկ ἑτέραν բառը մեկնած է իբր «այլ, օտար» հրէականէն = հեթանոսական զոհ։ Աւանդուած բնագիրն ալ եղծուած է։ Պիտի առաջարկէի ուղղել՝ «...անտի երթալ գանձուն (այս շարադասութիւնն ունի a) ի զոհ եւն»։ — Հ. 20. «Նոքա որ առինն՝ առնուլ առին վասն այնորիկ որ ետն բերել յա-

նուն գոհիցն պաշտամանն»· յուն. ἔπεμψεν (ուղղել՝ ἔπεσεν ըստ 19, 55, 62, 93. Աորի) οὖν ταῦτα διὰ μὲν τὸν ἀποστείλαντα εἰς τὴν τοῦ Ἡρακλέους θυσίαν: Ուրեմն Հայր ընտիր ընթերցուած ունեցած է հաւանորէն, բայց բոլորովին կերպարանափոխ ըրած է: Զարմանալի է նաեւ «Վահագնի» դուրս թողուիլը: — «Բայց վասն բերելեացն աղաչելոյ անդր ինչ ոչ խառնեցին (հմմտ. հ. 19), այլ ետուն ի գործ արքունի վարձ նաւուց գործելոյ»· փխ. «այլ ի շնորհս բերելեացն՝ ի շինութիւն նաւուց (արկան ի կիր) = ἕνεκεν δὲ τῶν παρακομιζόντων εἰς τὰς τῶν τριήρων κατασκευάς: — հ. 21. «Իբրեւ օտարացեալ իմն համարէր զանձն կողմանցս այսոցիկ»· փխ. «Եթէ նա (Փիլոմետոր) օտարացեալ իցէ իրացն (արքունի), զզգուշութենէ անձին հոգայր = ἀλλότριον αὐτὸν τῶν αὐτῶν γεγονέναι πραγμάτων, τῆς κατ᾽ αὐτὸν ἀσφαλείας ἐφρόντιζεν: Բացատիպ խօսքս փախցուցած է Հայր: — հ. 24. «Նա իբրեւ յանդիման եղեւ արքային եւ մեծարեցաւ ի նմանէ»· բացատիպ վերջին մասին հակառակն ունի յոյնը. καὶ δοξάσας αὐτὸν τῷ προσώπῳ τῆς ἐξουσίας = եւ մեծարեաց զնա (զարքայ) կերպարանօք իշխանութեան: — «սկսաւ կորզել = κατήντησε: — հ. 26. «որ դաւով զիւրոյ եղբօր զքահանայութիւնն ինքն շնացաւ»: Ուղղելու է այս անիմաստ խօսքն ըստ Al՝ «որ դաւով... զքահանայութիւնն յափշտակեաց»: Յուն. ὁ τὸν ἴδιον

ἀδελφὸν ὑπονοθεύσας = որ զեղբայր իւր դաւով ընկէց„: — "դարձեալ զնորա քահանայութիւնն նոյնպէս այլ տարաւ„: Իմաստը նոյն է, բայց ընդլայնած ու փոխած է խօսքը. ὑπονοθευθεὶς ὑφ’ ἑτέρου = "յայլմէ ընկեցաւ„՝ ինչպէս այս՝ նմանապէս նախընթաց ու յաջորդ համարներու մէջ Հայն յաճախ "իշխանութիւն քահանայութեան„ կ'ըսէ, մինչ սկզբնագիրն պարզ ἀρχῇ կը դնէ, բայց Հայուն առած իմաստով: — Հ. 28. "հազարապետն„: Բառս = χιλίαρχος Ել. ԺԸ, 21. Թիւք Ա, 16, 42. ἐπίτροπος 2 Մկ. ԺԱ, 1. Ղկ. Ը, 3. Գաղ. Դ, 2. οἰκόνομος, Ծն. ԽԳ, 16. ԽԴ, 4. եւ հօս՝ ἔπαρχος: Որովհետեւ Հայուն գործածած բառը պարսկական ծագում ունի, բազմիմաստ կիրառութիւնը դիւրաւ կը մեկնուի (Հիւբշման I, էջ 174. Թիւ 328. Հմմտ. վերը՝ Գ, 7): — Հ. 29ով սկզբնագիրը կ'ըսէ. καὶ ὁ μὲν Μενέλαος ἀπέλιπε τῆς ἀρχιερωσύνης διάδοχον = ի քահանայապետութեանն Մենեղաւոս եթող փոխանակ իւր. իսկ Թարգմանիչը ՀՀ. 26—28 ստացած տեղեկութիւնն հիւսելով կը գրէ պատճառականօրէն. "Եւ իբրեւ ետես Մենեղաւոս, թէ չէ զհարկն ի դուրս հատուցանելոց, եմուտ ընդ փոխանակաւ, եւ կացոյց փոխանակ...„ — Հ. 31. "Եթող... զԱնդրոնիկոս ի նմին պատուի„ փխ. եթող... զԱ. զմին ի պատուաւորաց = τῶν ἐν ἀξιώματι κειμένων. Հայը միտ չդնելով genetivus partitivusի՝ զայն ἀπέλιπεի (եթող) խնդիր բնո թեան համարած է: —

Հ. 32. «Մեղմով... գողացաւ»: Ինքնին հաս-
կանալի յաւելուած մը, զոր սկզբնագիրը չունի: —
Հ. 33. «Որպէս յանդիմանութեամբ յայտ
առնէր Ոնիա». փխ. իբրեւ ստուգութեամբ ծա-
նեաւ զիրսն Ոնիա, յանդիմանեաց զնա սաստիկ
= ἃ καὶ σαφῶς ἐπεγνωκὼς ὁ Ὀνίας παρέλεγχεν. —
Հ. 34. Դաշինս հաւատարիմս կուէր ընդ նմա
ծանր ծանր երդմամբք:» Բացատրիչ վերա-
դիրներն հայուն են: — Հ. 35. «Կարի առա-
ւել»: Եղծեալ ընթերցուած, ուղիղը կ'ընծայեն
ZnoJ «կարիս առնէին» = սգալ, տխրիլ =
ἐδυσφόρουν (հմմտ. Նորայր, էջ 374—375):
— Հ. 36. քաղաքաց քաղաքաց Հրեայք»:
Կարծես հայը սխալ կարդացած է οἱ κατὰ πόλεις.
փխ. οἱ κατὰ πόλιν Ἰουδαῖοι = Հրեայք քա-
ղաքին: — «Վասն առնն (տ. նաեւ Հ. 37)
զուր մեռելոյ, տարապարտուց կորու-
սելոյ փխ. վասն անիրաւ սպանման Ոնեայ
= ὑπὲρ τοῦ παρὰ λόγον τὸν Ὀνίαν ἀπεκτά-
νεσθαι: — Հ. 37. «Յայնմ վերայ». Գրչագրա-
կան սխալ, զոր կ'ուղղեմ «յայսմ վայրի» =
οὖν: — «Առն» փխ. «վախճանելոյն» (փոխե-
լոյն) = τοῦ μετηλλαχότος: — Հ. 38. Հրա-
մայեաց զկառափն հարկանել զանօ-
րէն մահապարտին». τὸν μιαιφόνον ἀπεκόσμησε
= յարեւէ արկանել զմահապարտն: Կառափ-
նատութիւնը կամ հայուն հնարքն է կամ սխալ
հասկացողութիւնը, այնու որ գուցէ ἀπεκόσμησε
համարած է = ἀπεκεφάλισε: — Հ. 39, 42.
յետոյ Թ, 2. ԺԴ, 6, «զանձ» կը դնէ փխ. «սա-

ճարոի, անշուշտ որովհետեւ յափշտակութեան կամ գողութեան առարկայ՝ տաճարի գանձն էր։ — Հ. 39 «քանզի բազում նուագս ոսկիս կորուսեալ ի միջոյ համարուէն»։ Կարծեմ վերջին ձեւը պէտք է ուղղել ըստ aի՝ «համարէին», որուն կը մերձենան նաեւ Zn՝ «համարին էին» եղծուածը։ «Նուագս ոսկիս» փխ. «սպասս ոսկիս» = χρυσωμάτων հմմտ. Հ. 32 եւ 1 Մկ. ԺԵ, 32։ — Հ. 41. «զդաւն եւ զնենգութիւն». կ'ըսէ Հայը փխ. «զյարձակումն», վասն զի Լիւսիմաքոսի ձեռնարկած յարձակումն հակօրինական էր եւ ըստ այսմ՝ «դաւ»։ Ապա մինչ հեղինակը կը պատմէ ամբոխին կատաղութեամբ քար նետելը, թարգմանիչը չի մոռնար նախ յաւելուլ, որ «խռնեցան վաղվաղակի, ձեռն ի գործ առնէին (aZn արկանէին)»։ — «Ոմն վէմս, ոմն վիրգս». այս նոյնաբանութեան փոխարէն յոյնն ունի. «ոմն վէմս, ոմն հաստաբեստ փայտս = οἱ μὲν πέτρους, οἱ δὲ ξύλων πάχη։ — ընդլայնած բայց նաեւ յապաւած է շարունակութիւնը. «կէսքն զաւազն զխիճն հողախառն առ հասարակ յարձակելոցն ի վերայ արկանէին», փխ. «կէսք զաւազն, որ անդ կայր, ժողովեալ, խառն ի խուռն ի վերայ արանց Լիւսիմաքեայ արկանէին»։ Շատ հաւանական է, որ վերը «ձեռն ի գործ առնէին» ըլլայ թարգմանչին գրածը, քանի որ միեւնոյն համարին մէջ վերստին կը գործածէ «արկանել»։ — Հ. 42. «զոմանս վիրաւորս, զոմանս կառափնատս»

արձակէին„, փխ. "վասն այսց պատճառաց զբազումս ի նոցանէ վիրաւորս առնէին„ = δι' ἣν αἰτίαν πολλοὺς μὲν αὐτῶν τραυματίας ἐποίησαν: — "Զսեղանապղերծ զտաճարակապուտ... արկանէին փախստեայ„ փխ. "զտաճարակապուտն... սպանանէին„ = τὸν ἱερόσυλον... ἐχειρώσαντο. — Առանց իմաստը փոխելու պատ կը թարգմանէ Հ. 44 "յանդիման նորա իսկ էին դատաստանք. զի եկին արք երեք ի ծերակոյտ ժողովրդենէ անտի ցուցանել զիրաւունս„. ἐπ' αὐτοῦ τὴν δικαιολογίαν ἐποιήσαντο οἱ πεμφθέντες ἄνδρες τρεῖς ὑπὸ τῆς γερουσίας = "առաջի արարին նմա զիրաւունսն արք երեք յղեալք ի ծերակուտէն: — Հ. 46. "իբրև զբոսանաց պատճառաւ„. փխ. "որպէս թէ ի զովանալ„ = ὡς ἀναψύχοντα. Արդեօք թարգմանիչն "զովանալը„ "զբօսնուլ„ ընդհանուր գաղափարին ստորադասած է: Եթէ այո, մեծ տարբերութիւն կը մտնէ այս և Ագաթանգեղոսի նման խօսքին մէջ. "առնոյր մեկուսի... իբրև զբոսանաց ինչ պատճառաւ„, ուր "որսի„ զբօսանք կամ նման բան մը կար, իսկ հոս՝ դատասրահին մէջ տաքութիւնը սաստիկ ըլլալով, արտաքին սրահ կ'ելլեն (περίστυλον, զոր Հայը պարզ "մեկուսի„ կը թարգմանէ) զովանալու համար: — Հ. 47. "առաջի խաղտեաց„. փխ. "Սկիւթացւոց„ (հմմտ. ժբ, 29) = Σκυθῶν: — Այս արտաքոյ կարգի հետաքրքրական թարգմանութեան առաջին անգամ մտա-

գիր եղած եւ պատմականօրէն մեկնած է Դր. Ա.
Մատիկեան, տես՝ ՀԱ. 1914, էջ 705—708։
— «Իրաւ (յաւ եւս Znabo իրաւունս) գտան-
էին, արձակեալք, գտեալք անարատք եր-
թային» փխ. արձակէին արդեօք՝ գտեալք ան-
արատք = ἀπελύθησαν ἂν ἀκατάγνωστοι։ —
ՀՀ. 49 եւ 50 կը ցուցնեն գրչասխալներ, որոնց
վրայ կ'աւելնայ Ջօհրապի անյաջող կիտադրու-
թիւնը. Հ. 49. «Եւ վասն այսր ամենայնի Դու-
րացիքն չարատեաց առատապէս սրտացաւու-
թեամբ հանդերձեցին զնոսա (.չիք) եւ յղար-
կեցին»։ «Առատապէս»ի անյարմար դիրքէն կը
հետեւցնեմ որ «սրտացաւութեամբ» լուսանց-
քէն ներս առնուած է։ Հայը կը դեդեւի μισο-
πονηρήσαντες ի իմաստին վրայ, նախ «չարա-
տեաց» կը դնէ, բայց ապա կը յաւելու «սրտա-
ցաւութեամբ», զոր վերը արդէն գործածած էր։
Վերջինս ջնջելով սկզբնագրին շատ կը մերձե-
նանք։ — Հ. 50. «(զ) Մենեղաւոս վասն իշ-
խանացն ուժդութեան (յոյնը չունի) եւ ագա-
հութեան (։ չիք) հաստատեալ կայր [յաւել ըստ
յունին՝ յիշխանութեան. եւ յառաջադէմ
եղեալ (զայս ունի a) ի չարութեան] չա-
րախօսութիւն մեծ (,) եղեւն մասու քա-
ղաքացւոցն իւրոց կացուցանէր» փխ. «չարա-
խօս մեծ քաղաքացւոցն իւրոց լինէր։ «Կա-
ցուցանէր» անյարմար է, վասն զի καθεστώς
չէզոք իմաստ ունի։

## ԳԼՈՒԽ Ե.

Հ. 1. «Առաքէր». Հայը կ'աւելցնէ «ի կողմանցն Անտիոքացւոց». հ. 2. «արս հեծեալս տիգաւորս, ի զարդ ոսկի վառեալս (') զարդարեալս». յուն. ἱππεῖς διαχρύσους στολὰς ἔχοντας καὶ λόγχας σπειρηδὸν ἐξωπλισμένους = հեծեալք, որք ունէին պատմուճանս ոսկիս եւ վառեալ էին տիգովք գունդ առ գունդ: Գեղեցիկ է հ. 3, ուր Հայը նոյնանշաններով եւ շքական բառերով բառախաղ մը կը յօրինէ, եւ միանգամայն կը ցուցնէ թէ զէնքերու ժխորը բացատրելու հարուստ բառամթերքի վրայ կը տրամադրէ: Հարկաւ սկզբնագրէն բաւական կը հեռանայ. «արշաւեալս յարձակեալս խառնեալս ընդ միմեանս. անդ էր լսել թնդիւն վահանաց, շկահիւն զաղեղանց, շողիւն սուսերաց, շաչիւն նշանաց, շառաչիւն նետից. զփայլիւն զոսկեղէն վառելոց», փխ. «յերկուց կողմանց յարձակէին եւ յետս ընկրկէին, թնդիւն վահանաց եւ բազմութիւն նիզակաց եւ սայրասուր սուսերք եւ նետաձիգ աղեղք եւ փայլիւն ոսկեղէն զինուց եւ ազգի ազգի զրահք»: — Հ. 5. «Իբրեւ շռինդն իմն յանկարծուստ համբաւի հարկանէր». γενομένης δὲ λαλιᾶς ψευδοῦς = իբրեւ լինէր համբաւ սուտ: «Քսան հազար». Անշուշտ բնագրին χελιῶνը = Zn «հազար վառեալ» անհաւատալիօրէն քիչ երեւցած է հայ գրչագիրներու կամ թարգմանչին: — «Եւ

Նորա վասն յանկարծ դաւոյն ի պարսպէ անտի մերժելին», փխ. «բայց իբրեւ պահապանքն մերժեին = τῶν δὲ ἐπὶ τῷ τείχει συνελεσθέντων. τεῖχος = պարիսպ. իսկ οἱ ἐπὶ τ. τείχει = պահակ, պահապանք: — «Եւ Մենեղաւոս արշաւեալ ի քաղաք անդր հասանէր». καὶ τέλος ἤδη καταλαμβανομένης τῆς πόλεως ὁ Μενέλαος εἰς τὴν ἀκρόπολιν ἐφυγάδευσεν = ապա ուրեմն իբրեւ առաւ քաղաքն, Մ. ի դղեակ անդր անկանէր փախստեայ: — Հ. 6. «Մեծամեծ կոտորած քաղաքացեացն իւրոց՝ իբրեւ ի մէջ թշնամեաց գործէր»: Բացատիպ բառերն Հայուն յաւելուածներն են եւ շատ կը նմանին սոյն համարին վերջը հեղինակին արդէն ըրած նմանութեան: — «Ոչ ածէր զմտաւ զտոհմային քաղաքակից ընկերութեանն բարեկենդանութիւն, զի ի թշուառութիւն դարձուցանէր». οὐ συννοῶν τὴν εἰς τοὺς συγγενεῖς εὐημερίαν δυσημερίαν εἶναι τὴν μεγίστην = ոչ ածէր զմտաւ եթէ յաջողութիւն մարտի առ քաղաքակիցս՝ դժբախտութիւն անհնարին իցէ: — «Այլ համարէր իբրեւ ի մէջ թշնամեաց անկեալ ստէպ ստէպ տագնապել եւ ի վերայ միատոհմի գնդին իբրեւ ի վերայ թշնամւոյ նշան յաղթութեան կանգնել». δοκῶν δὲ πολεμίων καὶ οὐχ ὁμοεθνῶν τρόπαια καταβάλλεσθαι = համարէր ի թշնամեաց մանաւանդ եւ ոչ եթէ ի բնիկ տոհմէն նշանս յաղթութեան շահել: — Հ. 8. «Իբրեւ

գաւառի եւ քաղաքի եւ գնդի մատնիչ եւ դահիճ„, փխ. "իբրեւ դահիճ հայրենաց եւ քաղաքացեաց = ὡς πατρίδος καὶ πολιτῶν δήμιος: — Հ. 9. "Բազում եւ անթիւս„. σύχνους = բազումս: — "Ինքն օտարացեալ ի մէջ օտարաց„. ἐπὶ ξένης = յօտարութեան: — Հայուն մէջ հոս երկար պակաս մը կայ, հ. 9—10. πρὸς Λακεδαιμονίους ἀναχθεὶς ὡς διὰ τὴν συγγένειαν τευξόμενος σκέπης, καὶ ὁ πλῆθος ἀτάφων ἐκρίψας: Դժուար է այս յապաւումին պատճառը հասկնալ: Առանց բնագրին հետ համեմատելու պակասը պիտի չզգայինք, այնքան լաւ կապուած են իրարու երկու եզրները՝ ἀπώλετο = կորեաւ եւ ἀπένθητος = անսուգ: — Հ. 10. "Անսուգ, անխնամ, անհանդերձ„. վերջի երկուքը Հայուն սեպհական են: — Հ. 15. "Եւ իբրեւ այսու չարեօք ոչ յագեցաւ, իշխեաց ձեռնամուխ լինել ի սուրբն ամենայն աշխարհաց, իշխեաց մտանել ի տաճար անդր„: Բացատիպները կը ցուցնեն Հայուն յաւելումները: — "Օրինացն եւ աշխարհին եւ գնդին մատնիչ եւ դահիճ„. Հմմտ. հ. 8: — Հ. 16. "Եւ պիղծ եւ անօրէն ձեռօք զսուրբ սպաս սեղանոյն„: — Հ. 17. "Թերեւս հպարտացեալ յամառեալ էր ի միտս իւր Անտիոքոս եւ ասէր„, փխ. "Հպարտացեալ մտօք չածէր Անտիոքոս զմտաւ եթէ...„ ուստի յաջորդ 17—20 համարները հեղինակին խորհրդածութիւններն են, մինչդեռ Հայուն "եւ ասէր„ յաւելուածն զա-

նոնք շատ անյարմար կերպով Ա.ի բերանը կը դնէ։ — Հ. 22. "Յազգէ փրանգ„, գրչասխալ, փխ. "փրիւգ„, անշուշտ այս ձեւով հայացուցած էր Թարգմանիչը. մինչդեռ Դուրեանի առաջարկած (էջ 249) "ազգաւ փռիւգացի„ ձեւը եղծուածքը չի մեկներ։ — Հ. 23. "Ի Գարգարիզին„, փխ. Գարիզին. յայտնի է որ սխալը առաջին վանկին կրկնագրութեամբը ծագած է։ — Հ. 24. "Բայց զի ունէր սակաւ մի գութ ընդ Հրեայսն, առաքեաց նա... զի կոտորեսցէ„։ Տրամաբանութեան նախընթաց եւ հետեւորդ մասերու հակասութիւնն այնքան ակներեւ է, որ առանց սկզբնագրին օգնութեան դիմելու հարկ է Դուրեանի հետ (էջ 249) "ունէր„ ժխտել, բայց ոչ՝ "զի ոչ ունէր„ ձեւով, վասն զի "ոչ„ի ներմուծումն դժուարհասկանալի պիտի մնար, այլ՝ "զի ունէր„ը "չունէր„ի բաղադրելով։ — Հ. 26. "Ընդ քաղաքն ընդ ամենայն... այսր անդր ընթանայինն„, փխ. մտեալ ի քաղաքն = εἰς τὴν πόλιν... εἰς δραμών։

## ԳԼՈՒԽ Զ.

Հ. "Յետ բազում ժամանակաց„։ Ոչ պատմութեան եւ ոչ ալ յոյն բնագրին կը համաձայնի. μετ' οὐ πολύν = յետ ոչ բազում։ — "Աթենեբիոս. a. Աթոնոբիոս. bo' Աթենոբիսոս. փխ. Ἀθηναῖον = Աթենացի ոմն։ Գուցէ Թարգմանիչն ազդուած ըլլայ, Մկ. ժե 28է։ —

Հ. 2. «Որմզդական դիցն Ողոմպիացւոց» յոյն. Διὸς Ὀλυμπίου. Թարգմանիչն սասանական ծանօթ ձեւը գրած է փոխանակ օտար անուան, թէեւ աչքի կը զարնէ «Որմիզդ»ի եւ «Ողոմպիացւոց» հակադրութիւնը: — «Գարգարիզին» հմմտ. Ե, 23: — «Հիւրասէր որմզդական դիցն վանատրի» = Διὸς Ξενίου. հմմտ. Ագաթ. ՃԺԹ. «Հիւրընկալ դիք վանատրի»: որ հարազատ հայկական դից առաջինն ու գերագոյնն էր (S. Weber, էջ 38—40): — Հ. 3. «Եւ չարաչար դժուարին նեղութիւն չարեաց ի վերայ հասուցանէին». χαλεπὴ δὲ καὶ τοῖς ὄχλοις ἦν καὶ δυσχερὴς ἡ ἐπίστασις τῆς κακίας = եւ ժողովրդեան իսկ դժուարին եւ հակառակ էր յաճախել չարութեանն: — Հ. 7. «Սպանդարամետական պաշտամանն ... Սպանդարամետին» = Διονυσίων ... τῷ Διονύσῳ: — Հայուն յիշած անունը կը պատկանի զրադաշտական կրօնի գերագոյն հոգիներէն միոյն՝ մասնաւորապէս երկրի դից = զնդ. spenta ārmaitiš (Hübschmann, I, էջ 73. — de Lagarde, Gesamm. Abh., էջ 264–5, Arm. Stud., էջ 139): Հայ դիցաբանութեան մէջ Սպանդարամետի դերը ու տեղը որոշել դժուար է. Գելցէր (էջ 103) կը կարծէ, թէ պաշտօնական հանգամանք չունէր, քանի որ Ագաթանգեղեայ քով չէ յիշուած: Բայց սա պարագան, որ մեր թարգմանիչն ըստ իւր սովորութեան օտար դից տեղ՝ համապատասխան հայկականը կը դնէ միշտ, թոյլ կու տայ ենթադրել որ Հայոց Սպանդարամետին

եւ յունական Պրոնիսիոսի մէջ կայ ազգակցութիւն: փոխանակ "Սպանդարամետական"ի Ա կը կարդայ բոլորովին սխալ՝ "Սպանդ որմզդական", իսկ փխ. "Սպանդարամետին"՝ "Սանդարամետին": Եթէ այս ընթերցուածն "պ"ի պատահական անկումի հետեւանք չէ, այլ սկզբնական հարազատ ձեւ՝ թարգմանչէն կիրարկուած, այն ատեն տեղւոյս ալ իրաւունք մը կու տայ Լագարդի հետ "Սանդարամետ" — որ այլուր եւս, եւ այն՝ զանազան առմամբ գործածուած է (Եզ. ԼԱ, 16. փիլ. Բ, 10 եւն) — եւ Սպանդարամետ նոյնացնելու: — Հ. 8. "յամենայն մտաքաղաքս պաշտօնաւորս լինել". խօսքին իմաստը խանգարող "լինել"ը ջնջելու է Ա ի հետ, որով "պաշտօնաւոր" = հեթանոս = Ἑλληνίδας (Հմմտ. Գ, 10) իբր վերադիր ածական սերտիւ կը կապուի նախընթաց գոյականին հետ: — Այս համարը սկզբնագիրն այսպէս կը շարունակէ... τὴν αὐτὴν ἀγωγὴν τῶν Ἰουδαίων ἄγειν καὶ σπλαγχνίζειν: Հայ թարգմանութիւնը խանգարած կը թուի, այս պատճառաւ ձեռագրական վկաներու մէջ անմիաբանութիւն կը տիրէ. Z յոր հասու իցեն զոհիւք զպաշտօնն պաշտիցեն. h հասուցին եւն. — Ա զոր հասու իցեն եւն: պէտք է սկզբնագրին համեմատ պակասն ամբողջացնել. [զի զնոյն իրս (= ἀγωγή, հմմտ. Եսթ. Ժ, 3) հրէից] հասուսցեն եւ զոհիւք զպաշտօնն պաշտիցեն. ըստ յուն. "ստիպեսցեն յուտել զզոհեալ": — Հ. 9. "զոհել", որ հետեւութիւն է հեղինակի բառին. μεταβαίνειν

ἐπὶ τὰ Ἑλληνικὰ = փոխել ի կրօնս հեթա-
նոսականս: — "Շտապ տագնապի տա-
ռապանս չարչարելոցն,, փխ. զտառապանս
որ անդէն կայր — τὴν ἐνεστῶσαν ταλαιπορίαν:
— հ. 10. "Նամակագիր (հմմտ. եղեն)...
ածին վաղվաղակի.,, փխ. լոկ "ածին,, =
ἀνηνέχθησαν: — հ. 11. իբրեւ ի վերայ հա-
սանէին կենդանւոյն խանձատեալս հրով
սպանանէին.. μηνυθέντες τῷ Φιλίππῳ συνεφ-
λογίσθησαν = այդ եղեալ Փիլիպպեայ ի միասին
միանգամայն այրէին: Շարունակութեան մէջ
հայր փախուցուցած է εὐλαβῶς ἔχειν βοηθῆσαι
ἑαυτοῖς = զի վասն երկիւղածութեան... չկա-
րէին պաշտպանել անձին — որ պէտք
է զետեղել 11. համարի վերջը: — հ. 12.
· մի ինչ վասն ազգիդ խղճիցէք.. Հրէի
մը բերանն անյարմար խօսք մը, փխ. "մի վհատել
վասն դժբախտ իրացն ձիպելոց = μὴ συστελλέ-
σθαι διὰ τὰς συμφοράς: — հ. 13. "Եւ ոչ առ
բազում ժամանակս ինչ թողուլ զանօրէնս, այլ
վաղվաղակի գնչանս իւր եւ զարու-
եստս իւր յայտնէ,,. καὶ τὸ μὴ πολὺν
χρόνον ἐᾶσθαι τοὺς δυσσεβοῦντες, ἀλλ᾽εὐθέως
περιπίπτειν ἐπιτιμίαις, μεγάλης εὐεργεσίας ση-
μεῖόν ἐστιν = այն զի անօրէնք ոչ բազում ժա-
մանակս թողուն այլ վաղվաղակի ի պատիժս
անկանին, այն մեծ ի շնորհաց նշանակք
են: — հ. 14. "Եւ եկեսցեն հասցեն ի
դատաստանս անհնարինս,, փխ. պատ-
ժեսցին — κολάσαι: — հ. 15. (զի ոչ...)

«այնպէս եւ առ մեզ կատարէ զամենայն, զի հասցուք մեք ի տեղի դատաստանի». ἵνα μὴ πρὸς τέλος ἀφικομένων ἡμῶν τῶν ἁμαρτιῶν ὕστερον ἡμᾶς ἐκδικᾶ = զի մի անցեալ զչափ մեղաց մերոց ապա ուրեմն վրէժս լուծցէ: — Հ. 16. «այլ մօտ առ մօտ խրատէ, եւ արագարագ ածէ ի վերայ զողորմութիւն». διόπερ οὐδέποτε μὲν τὸν ἔλεον αὐτοῦ ἀφ' ἡμῶν ἀφίστησι παιδεύων δὲ μετὰ συμφορᾶς οὐκ ἐγκαταλείπει τὸν ἑαυτοῦ λαόν = նմին իրի չհանէ երբեք զողորմութիւն իւր ի մէնջ, եւ թէպէտ դժբախտութեամբ խրատիցէ, չընկենու զժողովուրդ իւր ի բաց: — Հ. 18. «ի գնդի անդ», փխ. ի դպիրս = γραμματέων. Ուստի՞ գտած է հայը «գունդ», արդեւք Հ. 11ի՞ մէջ, ուր ἕτεροι կը յիշուին եւ որոնցմէ գուցէ զե-ղիազար ալ համարած է Հայը: — «Լցեալ աւուրբք», ծերացեալ հասակաւ. προβεβηκὼς τὴν ἡλικίαν = յառաջացեալ հասակաւ: — «ածեալ գայլ ի բերան», փխ. պարզ՝ բացեալ զբերանն = ἀναχανὼν: — Հ. 19. «Նորա ի մտի եդեալ յամառեալ պնդեալ սրտիւ յանձ առ ընդունել զմահ քաջ անուամբ՝ քան զկեանս խղճիւ եւ ընկերաց ըստգտանելով ընտրեաց ինքնակամ հասանել ի տանջանս, ձեռներէց լինէր, թքանել անարգել զպաշտօնս նոցա»: Բացատրիչները կը ցուցնեն որ հոս թարգմանութիւնն աւելի քիչ է քան Հայուն ինքնագրութիւնը. բնագրին մատնանշած սահմանին մէջ

անկախ ընդլայնած է սա խօսքը. ὁ δὲ τὸν μετ᾽ εὐκλείας θάνατον μᾶλλον ἢ τὸν μετὰ μύσους βίον ἀναδεξάμενος, αὐθαιρέτως ἐπὶ τὸ τύμπανον προσῆγε προπτύσας δέ = իսկ նորա ընտրեալ առաւել զմահ փառօք քան զկեանս անարգանօք, եթուք ի բաց եւ մատեաւ ինքնակամ ի տեղի տանջանաց: — Հ. 21. «Իսկ այն՝ որ պատրաստեալ եկեալ էին, ինքեանք առ տկարութեան մտացն վասն անձնասէր բարոյից զոհից ի պաշտօն». οἱ δὲ πρὸς τῷ παρανόμῳ σπλαγχνισμῷ τεταγμένοι = իսկ որք եդեալ էին ի վերայ անօրէն զոհիցն (= վերակացուք). «Միտք տկարութեան», զոր սոյն համարին մէջ անգամ մըն ալ կը կրկնէ. παρανόμοςի սխալ ստուգաբանուած մեկնութիւնը կը թուի: — «Աւագութեան», փխ. «ի հին ժամանակաց հետէ» = ἐκ τῶν παλαιῶν χρόνων: — «Զհաստատեալ միտսն ի հրապոյրս ցոփութեան դարձուցանել ջանային. յանձն առ, ասեն, զհրաման թագաւորին, եւ քեզ այլ միս մատուսցուք զի լուծցես զկարծիսն». παρεκάλουν ἐνέγκαντα κρέα οἷς καθῆκον αὐτῷ χρήσασθαι δι᾽ αὐτοῦ παρασκευασθέντα, ὑποκριθῆναι δὲ ὡς ἐσθίοντα τὰ ὑπὸ τοῦ βασιλέως προστεταγμένα τῶν ἀπὸ τῆς θυσίας κρεῶν = յորդորէին տալ բերել միս, զոր մարթ իցէ նմա ուտել, պատրաստեալն ի նմանէ, եւ ապա այնպէս իմն կարծեցուցանել, իբրեւ թէ զզոհեալ միսն՝ զհրամայեալն ի թագաւորէն ճաշակիցէ: Թարգմանիչն այսպէս յեղափոխելով

սկզբնագիրը՝ փախցուցած է ὑποκριθῆναι — χρεὼν այս համարին, իսկ յաջորդ 22. համարին մէջ՝ καὶ διὰ τὴν ἀρχαίαν πρὸς αὐτοὺς φιλίαν τύχῃ φιλανθρωπίαν = եւ վասն ի նոսա ի հնուց բարեկամութեանն հանդիպեսցի մարդասիրութեան։ — Հ. 23. «Ըստ երեւելի վայելչութեանն, ըստ զուարթածաղիկ ալեացն զուարճացելոց» փխ. եւ ըստ արժանեօք ստացեալ եւ երեւելի ալեացն = καὶ τῆς ἐπικτήτου καὶ ἐπιφανοῦς πολιᾶς։ — Հ. 24. «Ոչ արժան, ոչ պատշաճ, ասէ, կեղծաւորութիւն մտանել ընդ սրբութեան խոստովանութիւն» փխ. կեղծաւորել = ὑποκριθῆναι. Հայերէն աւանդուած բնագրին մէջ կամ պէտք է 'ի' մը ներմուծել (ի կեղծաւորութիւն), որ սակայն շարունակութեան այնքան յարմար չէ, եւ կամ լաւ եւս՝ փխ. 'մտանել' կարդալ՝ 'մուծանել'։ — «Որ ընդ ակամբ հայիցին, կարծիս ի մտի դնիցեն եւ ասիցեն» փխ. կարծիս առեալ = ὑπολαβόντες։ — «Իննսնամեան անցեալ ծերութեամբ հասեալ ի դուռն վախճանի»։ Բացատրիչներով կ'ընդլայնէ հայը իննսնամեայ գաղափարը։ Այս յաւելուածին փոխարէն 25. համարին մէջ դուրս կը թողու καὶ διὰ τὸ μικρὸν καὶ ἀχαριαῖον ζῆν = (վասն իմ...) եւ վասն կարճ եւ վաղանցուկ կենացս»։ Բոլորովին մտացածին է Հ. 26ով ներկայացուցածը. «Իսկ արդ եթէ ամենեւին այնչափ ժամանակս կենաց շնորհիցեն ինձ, եւ ի ձեռս մարդկան մնաւ այլ ոչ մատնիցիմ». εἰ γὰρ καὶ ἐπὶ τοῦ πα-

ροντος ἐξελοῦμαι τὴν ἐξ ἀνθρώπων τιμωρίαν = զի եթէ այժմ ապրեցայց իսկ ի պատժոց մարդկան„. — “յաւիտենից ի մշտնջենաւոր ձեռաց անտի„. փխ. ի ձեռաց Ամենակալին = τὰς τοῦ παντοκράτορος χεῖρας: — Հ. 29. “Նոքա որ յառաջագոյն շուրջ մատուցեալ մխիթար էին„ փխ. ՝որք ածէինն զնա, իբրեւ զսակաւ մի յառաջ ասացեալ... = τῶν δὲ ἀγόντων τὴν μικρῷ πρότερον... — “եւ զիմաստութեան խորհուրդսն իբրեւ մոլորութիւն համարէին, առաւել մատուցեալ ի տանջանս տագնապէին„ փխ. վասն բանիցն ասացելոց, զորս իբրեւ մոլորութիւն (յիմարութիւն) համարէին = διὰ τὸ τοὺς προειρημένους λόγους ὡς αὐτοὶ διελάμβανον, ἀπόνοιαν εἶναι: — Հ. 30. “երաց զբերան իւր հեծեծելով„: — “Այս մի ինչ յայտնի եղեւ, եթէ...„ փխ. “յայտնի է Տեառն, եթէ = φανερόν ἐστιν: — “Վասն ահի սաստիցն Տեառն„ փխ. վասն ահի Նորա = διὰ τὸν αὐτοῦ φόβον: — Հ. 31. “գայր օրինակ + պատերազմաւ„ կը յաւելու թարգմանիչը:

## ԳԼՈՒԽ Է.

Հ. 1. “...կալեալս + ածեալ յատեան„: Ամբողջ պատմութենէն կը հետեւի արդէն “ատեան„ գաղափարը, բայց Հայը յայտնապէս կը դնէ իւրովի: — Հ. 2. “Սկսաւ խօսել եւ ասէ. զի՞ կայք անցեալ, կամ

զմեզ զի՞նչ հարցանելոց էք», փխ. այսպէս ասաց. զի՞նչ կամիցիս հարցանել եւ գիտել ի մէնջ = οὕτως ἔφη, τί μέλλεις ἐρωτᾶν καὶ μανθάνειν παρ᾽ ἡμῶν: — Հ. 3. «ջեռուցանել... + եւ անիւս եւ պէսպէս գործիս տանջանաց պատրաստել»․ յաւելուած Թարգմանչի: «Պատրաստեցին» կ'աւելցնէ նաեւ Հ. 4ի մէջ՝ վերստին «ջեռուցանել»է ետք: — Հ. 4. «Հրամայեաց... + յառաջ կացուցանել եւ նախ զլեզուն կտրեցին»․ այսպէս Հայր. մինչդեռ սկզբնագրին մէջ «Հրամայեաց»ի առարկան է ուղղակի «զլեզուն կտրել»: — Հ. 5. «ի բանից եւ ի ձեռաց», փխ. «յամենայնէ» = τοῖς ὅλοις: Այն համարին մէջ եղբարց քաջալերական խօսքերուն վրայ Հայր կ'աւելցնէ նաեւ. «զանուն եւ զօգիս ժառանգեսցուք»: Ասոր պէտք էր յաջորդել λέγοντες οὕτως = «եւ ասէին այսպէս», զոր սակայն «սկսան... ասել» ձեւով տեղափոխըրած եւ դրած է «քաջութեամբ մեռցուք»է յառաջ = γενναίως τελευτᾶν = «քաջութեամբ մեռանել»: — Հ. 6. «Հայր... + ի ճգնութիւնս պատերազմի մերոյ», յաւելուած թարգմանչի. յոյնը լոկ՝ ἐφορᾷ = հայի: — Հ. 9. «Իբրեւ յոգւոցն պարզել ապաստան եղեւ, սկսաւ խօսել եւ ասէ ցԹագաւորն»․ ἐν ἐσχάτῃ δὲ πνοῇ γενόμενος εἶπε = հասեալ ի վերջին շունչն ասէ: — «Ա՛յ սէգ հպարտ եւ ամբարտաւան», σὺ μὲν ἀλάστωρ = ո՛ դուն ոճրապարտդ: — «Դու զմեզ յայսց կենաց

աշխարհիս կարծել համարիս». ἐκ τοῦ
παρόντος ἡμᾶς ζῆν ἀπολύεις = թէպէտ եւ բառ-
նաս ի մէնջ զայս կեանս։ — «ի կեանսն յաւի-
տենից՝ ի միւսանգամ ծննդեանն ժա-
մանակի կենաց ի կեանս դարձուցանէ.
εἰς αἰώνιον ἀναβίωσιν ζωῆς ἡμᾶς ἀναστήσει =
«յարուսցէ զմեզ ի յարութիւն յաւիտենից կե-
նաց»: — Հ. 10. «Ածին», փխ. կրէր տան-
ջանս = ἐνεπαίζετο։ — Հ. 11. Հայերէն
թարգմանութեան եւ միայն հայերէնի մէջ ամ-
բողջապէս կը պակսի, այս պատճառաւ տարօրի-
նակ կը հնչէ, երբ Հ. 12ի մէջ «Թագաւորն իսկ
զարմացեալ լինէր վասն պատանւոյն ուշիմ
մտացն եւ սրտին քաջութեան» (ψυχὴν),
մինչդեռ պատանին ոչ մէկ խօսք արտասանած է
հայերէն թարգմանութեան մէջ։ Սկզբնագիրն
ունի. Հ. 11. «եւ ասէ քաջութեամբ. Յերկնից
ստացեալ է մեր զայդ ամենայն, եւ վասն օրի-
նաց Նորա անարգ համարիմք զայնոսիկ, զի յու-
սամք ի Նմանէ անդրէն ընդունել»: — Հ. 14.
«Իբրեւ շունչն վախճանի հասանէր»,
հմմտ. Հ. 9, իսկ հոն γενόμενος πρὸς τὸ τελευ-
τᾶν = իբրեւ մերձ եղեւ ի վախճանել։ — «Եւ
յուսոյն այն ունիմք միւսանգամ ծննդեանն
յարութեան մեռելոց + քան քեզ ի
մեռելոց». τὰς ὑπὸ τοῦ θεοῦ προσδοκᾶν ἐλ-
πίδας πάλιν ἀναστήσεσθαι ὑπ᾽ αὐτοῦ = այն ու-
նիմք յԱստուծոյ, եթէ միւսանգամ յարուսցէ
զմեզ։ Խաչանշանէն վերջ գտնուող բառերն
անտարակոյս թարգմանչին կէս մնացած խոր-

հրդածութեան սկզբնաւորութիւնն են եւ այս վիճակին մէջ անիմաստ։ Երբեւի Հայը կ՚ուզէր նահատակներուն փառաւոր յարութեան յոյսն՝ հակադրել Թագաւորին յուսահատ վախճանին, առթուելով հեղինակի հետեւեալ խօսքէն։ — «Ձի արգելեալ փակեալ է ի քէն յարութիւն մեռելոց»։ վերջին բառը բնականաբար սխալ է. Թարգմանիչն առանց մտածելու շատ սովորական «յարութիւն մեռելոց» ասութիւնը գրի առած է, մինչ ըստ սկզբնագրին չէ թէ ընդհանրապէս յարութիւն ի մեռելոց այլ «յարութիւն ի կեանս չիք» Թագաւորին համար = σοὶ μὲν γὰρ ἀνάστασις εἰς ζωὴν οὐκ ἔσται։ — Հ. 16 (15). «Իբրեւ զաչս ի վեր եբարձ՝ հայեցաւ ընդ Թագաւորն», փխ. πρὸς αὐτὸν ἰδὼν = հայեցեալ ընդ նա։ — «Ակսաւ խօսել ընդ նմա եւ ասէ»։ — «Մի ի վատութիւն ինչ եւ զմեր ազգ» հատանիցես, կամ լքեալ թողեալ ինչ ի ձեռաց Աստուծոյ համարիցիս»։ բացատիպ յաւելուածներն դուրս առնելով մնացածն է սկզբնագրին ըստ ամենայնի համաձայնը. μὴ δόκει δὲ τὸ γένος ἡμῶν ὑπὸ τοῦ θεοῦ καταλελεῖφθαι։ — Հ. 17. «Չարաչար հարուածովք չարչարիցէ» = βασανισει։ — Հ. 18. «Ձի՞ մոլորեալ ես», փխ. «Մի պատրեր զանձն քո» = μὴ πλανῶ։ — «Արժանի զարմանալոյ»՝ խօսքս հայերէնի մէջ բացագանչութիւն մը կը թուի եւ իբր այսպիսի նախընթացի հետ չի կապուիր։ Սկզբնագրին հետ համեմատելով կը տես-

նուի, որ խօսքի մը բեկորն է մեր առջեւ եղածը. διὸ ἄξια θαυμασμοῦ γέγονε = նմին իրի լինէին իրք արժանի զարմանալոյ: — Հ. 19. „Ողջանդամ բարեմիտ ապրել". ἀθῷος ἔσεσθαι = Անալ անպատիժ: — Հ. 21. „Քաջալերեալ սրտապնդեալ... քաջալերէր միխիթարէր": Բացատրիչ առաջին երկու բայերը աւելաբանութիւն են, իսկ երկրորդ „քաջալերէր" անհամաձայն կրկնագրութիւն մը, զոր ձի հետ դուրս վտարելու է բնագրէն: — Հ. 21. „Եւ զմիտն եւ զմիտսն զկնութեան առնապէս վառեալ քաջութեամբ յառաջ մատուցեալ". καὶ τὸν θῆλυν λογισμὸν ἄρσενι θυμῷ διεγείρασα = եւ զկնութեան սիրտն առնապէս քաջութեամբն կանգնէր: — Հ. 22. „Եւ ոչ զկերպարանս ձեր զիւրաքանչիւր ես նկարեցի եւ ոչ զհասակս ձեր ծնեալ եւ սնուցեալ". καὶ τὴν ἑκάστου στοιχείωσιν οὐκ ἐγὼ διερρύθμισα = եւ ոչ ես ինչ զկազմած ձեր զիւրաքանչիւր ի տարերց արուեստիւ յօրինեցի: — Հ. 24. „Մինչդեռ ոգիքն կրտսերոյ մանկանն առ իւր կային" դաղափարս ընտանի դարձած է թարգմանչին (ՀՀ. 9, 14), բայց հոս հեղինակը կ'ըսէ. ἔτι τοῦ νεωτέρου περιόντος = առ կրտսերն որ միայն կենային տակաւին: — Հ. 29. „Ի չարաշուք դահճէ այտի": — „ընտրեա զմահ քան զկեանս աշխարհի": — „Ի ձեռս ողորմութեան մեծին Աստուծոյ": Համարիս բոլոր բացատրիչներն թարգմանչին յաւե-

Լուածներն են, առանց որոնց ալ ոչինչ կը տուժէ խօսքին իմաստը։ — Հ. 30. «Եւ մինչդեռ մայրն զայն մխիթարութիւնս մատուցանէր ի միտս հաստատունս», փխ. «մինչդեռ նա զայս ասէր = ἔτι δὲ ταύτης καταλεγούσης: — «Ո՞ւմ կայք, զի՞ յապաղէք». τίνα μένετε: — Հ. 32, որ շատ կարճ է եւ կրնայ դիւրաւ աչքէ վրիպած ըլլալ, Հայուն քով կը պակսի. միայն Օի մէջ կը գտնեմ, եւ այն ալ հաւանօրէն յետսամուտ է։ Համարս է. ἡμεῖς γὰρ διὰ τὰς ἑαυτῶν ἁμαρτίας πάσχομεν = զի մեք վասն մեղաց մերոց կրեմք։ — Հ. 33. «Հաճեսցի + ողորմութեամբ». Երկու անգամ հանդիպեցանք արդէն այս յաւելուածին, հհ. 23, 29։ — Հ. 34. «Զի՞», փխ. մի՛ = μή. ճարտասանական հարցում՝ փոխանակ համազօր ժխտականի։ — Հ. 37. «Զի նա միայն է Աստուած + եւ այլ ոք չիք», հմմտ. Երկ. Օր. Դ, 35, 39, 3 Թգ. Ը, 60 եւն։ — Հ. 38. «Զամենայն նիւթեալ սրտմտութիւն բարկութեան չնչել եւ ի բաց անցանել». στῆναι τὴν τοῦ παντοκράτορος ὀργὴν τὴν ἐπὶ τὸ σύμπαν ἡμῶν γένος δικαίως ἐπηγμένην = զիջուցանել զբարկութիւն Ամենակալի, որ յիրաւունս ի վերայ ամենայն ազգին մերոյ բորբոքեալ է։ — Հ. 39. Կը սկսի հայը սա հաւաքական յաւելուածով. «յայնչափ քաջութեան սրտի մանկանցն եւթանեցունց»։ — Հ. 41. «Ի նոյն օրէնս կատարեցաւ», հմմտ. Հ. 13։

## ԳԼՈՒԽ Բ.

Հ. 1. «Ի գեղս, ի քաղաքս եւ յագարակս». κώμας = գեղս. — «յինքն արկանէին զազգատոհմն». աւելի լաւ a. «յինքեանս արկ. զազգատոհմսն = προσεκαλοῦντο τοὺς συγγενεῖς: — Ասոր համաձայն յաջորդ բայն ալ յոգնակի ըլլալու էր, բայց կ'երեւայ ու եւ ոչ իրարարու շփոթած է. եւ արդէն ամբողջը սկզբնագրէն բաւական կը շեղի. «եւ նուաճէր զՀրեայսն որ կացեալ էին հաստատութեամբ յուխտին իւրեանց», փխ. «եւ յինքեանս յանկուցանէին, որք կացեալ էին ի Հրէութեան = τοὺς μεμενηκότας ἐν τῷ Ἰουδαϊσμῷ προσλαβόμενοι. — «գունդ լինէին յաւելուին բազմանային», փխ. ժողովէին = συνήγαγον: — Հ. 2. Ի «հեթանոսաց», փխ. յամենեցուն = ὑπὸ πάντων. — (ի) «ձեռացն», փխ. մարդկանէ = ἀνθρώπων, metonymia partis pro toto: — Հ. 5. «Մեծութեանցն Աստուածութեան». լաւ եւս՝ a «մեծութեանցն Աստուծոյ», որ գուցէ ուղղելու է «մեծին» (= մեծութ). յուն. κυρίου = Տեառն: — Հ. 6. Քանի մը բառ նկատի չառնելով կը համաձայնի սկզբբնագրին, միայն պէտք է հակառակ Zի ուղիղ կիտադրել այսպէս. «Հասանէր ի վերայ գիւղից եւ քաղաքաց՝ (եւ) հրձիգ առնէր. զամուր ամուր տեղիս թշնամեացն անդրէն նուաճէր»: — Հ. 8. «Արքունի հրովարտակօք...

հրեշտակս առնէր, օգնական ի թիկունս զօրս ի ձեռն հաստուցանել„, փխ. "գրեաց, գալ յօգնութիւն իրաց թագաւորին = ἔγραψεν ἐπιβοηθεῖν τοῖς τοῦ βασιλέως πράγμασιν: — Հ. 9. "ի ձեռն գումարէր„. խնդիր սեռին — παμφύλων ἔθνη — փախցուցած է, բայց դիւրաւ կը հասկցուի: — Հ. 11. "Անդ„ կ'ուղղեմ՝ "անդէն„ = εὐθέως: — Հ. 13 եւ 14. Հայը կը փախցնէ. καὶ μεταδόντος αὐτοῦ τοῖς σὺν αὐτῷ τὴν παρουσίαν τοῦ στρατοπέδου... καὶ ἀπιστοῦντες τὴν τοῦ θεοῦ δίκην = "եւ իբր ծանոյց նա իւրայոցն զհասանել զօրացն... (= նոքա առ վատասրտել իւրեանց) եւ լինելն թերահաւատ զօգնութենէն Աստուծոյ„: Խոսքերուս պակասը սակայն չի զգացուիր Հայերէնի մէջ, այնպէս որ կարծես թարգմանիչը դիտմամբ դուրս թողուցած ըլլայ: — Հ. 14. "Որ մինչեւ տեսեալ էր նր (ուղղիլ՝ զնն) ընդ վաճառականս անձանց նոցա գինս հատանէր„, փխ. որք մինչեւ դիպելը նոցա՝ արդէն վաճառեալ էին = τοὺς... πρὶν συντυχεῖν πεπραμένους: — Հ. 15. "Փրկէր„. պէտք է ուղղել՝ "փրկել„. Սկզբնագրին մէջ չկայ, Հայը կրկնած է զայն Հ. 14է (ῥύσασθαι) առնլով: Անհրաժեշտ է աներեւոյթ ձիւը, վասն զի կախում ունի Հ. 14ի մէջ անգամ մը դրուած "աղաչէին„էն: — Հ. 16. "Յայնչափ զօրաց բազմութենէ„, փխ. "ի թշնամեաց = τ. πολεμίους: — Հ. 17. "Նախանձ ի մտի դնել„, փխ. ունել առաջի

աչաց = πρὸ ὀφθαλμῶν λαβόντες: — Հ. 19.
«Եւ սկսաւ յուշաունել զմիոյ միոյ զա-
ռաջնոցն քաջութիւնս եւ զօգնականութիւնս,
որ եղեալ էին ի Տեառնէ: Յիշեցէք (Հ. 20՝
յուշ լիցի ձեզ) զՍենեքերիմ եւ զութսու-
տասն բիւրուն սատակումն միանգամայն»,
փխ. «եւ ընթեռնոյր առաջի նոցա զօգնականու-
թիւնս, որք եղեալ էին առ առաջնովքն եւ թէ
զիարդ առ Սենեքերիմաւ ութսուն եւ հինգ
բիւրքն սատակէին»: Յայտնի է որ Հայը ազատ
թարգմանած է. բանակին թուի մասին Հայերէն
22 չեն միաբանիր. Zn՝ վերկոսեան բիւրուն.
Zn եւ a՝ զբժան բիւրուն: — Հ. 20. «Պա-
տերազմն Հռովմայեցւոց ընդ Գաղատացիս»
τὴν ἐν τῇ Βαβυλωνίᾳ τὴν πρὸς αὐτοὺς Γαλά-
τας παράταξιν = զպատերազմն յերկրին Բա-
բելացւոց ընդդէմ Գաղատացւոց»: Հայուն
«Հռմ.» ընթերցուածն եթէ հարազատ ըլլար,
պատմականօրէն արդէն կնճռոտ տեղիքս աւելի
պիտի կնճռոտէր. օտար ոչ մէկ վկայ Հայուն կը
ձայնակցի: Ինձ կը թուի, թէ տարբերակս մեկ-
նելու է իբր անդրադարձութիւն՝ 1 Մկ. Ը. 1—4
համարներու, ուր Հռովմէական-Գաղատա-
կան աղերսը կը շօշափուի: Մեր այս 20. հա-
մարը նշանաւոր է նաեւ անով, որ յայտնի կը
ցուցնէ Հայուն սկզբնագրին բազմագոյն նկարա-
գիրը, վասն զի հոս միացած կը գտնենք Լուկ.
Ասոր. A. 55, 106, վկաներուն յատուկ ըն-
թերցուածներ: Հայ. Լուկ. եւ 106 զանց կ'առ-
նուն «ութսուն հազար՝ քառասուն հազար Մա-

կեդոնացւովք»։ — Հայ եւ Ասոր. զանց կ'առ-
նուն. «իբրեւ Մակեդոնացիքն ի վատութիւն
հատանէին». Հայ Վուլգ. A. 55 կը կարդան
6000, փխ. 80.000։ — Հ. 21. «Եւ այսու
մխիթար քաջալեր բանիւք», փխ. այսու
բանիւք = ἐφ' οἷς. — «մտադիւր մարտն-
չել համարձակ մեռանել» = ἀποθνήσκειν։
— Հ. 22. «Յերիս գունդս զզօրսն բաժա-
նէր. երկոցունց գնդացն՝ զերկոսին զեղ-
բարսն՝ զՇմաւոն եւ զՅովսէփ զօրավար կացու-
ցանէր»։ Հայոց այս ընթերցուածն էապէս կը
տարբերի յունարէն ընդունուած բնագրէն եւ
միւս բոլոր վկաներէն, որոնց համեմատ «ի չորս
գունդս զզօրսն բաժանէր» = τετραμερές τι
τὸ στράτευμα եւ «զօրավարս կարգէր զեղ-
բարսն զՍիմոն եւ Յովսեփ եւ զՅովնաթան»։
Հայոց ընթերցուածն համաձայն է 1 Մկ. Ե,
33 պատմուածին եւ սակայն դժուարաւ թէ
սկզբնական ըլլայ, վասն զի արտասովոր τε-
τραμερές-ի գոյութիւնն իբր յետսամուտ փոփո-
խութիւն բոլոր ձեռագիրներու անհասկանալի
պիտի մնար, մինչդեռ շատ հաւանական է, որ
գերզգօն գրչագիր մը իր օրինակին մէջ մու-
ծած ըլլայ τριμέρες՝ նոյն իսկ սխալ ընթերց-
մամբ։ Այսպէս ուրեմն մէտ եմ փոփոխութիւնը
Հայոց սկզբնագրին ընծայելու։ Նմանապէս
ու խօսքերը ὑποτάξας ἑκάστῳ χιλίους πρὸς τοῖς
πενταχοσίους = ի ձեռն գումարէր միոյ միոյ ի
նոցանէ հազար հինգ հարիւր արս — զորոնք
Հայոց քով չենք գտներ, — կրնան արդէն սկզ-

բնագրին մէջ պակսած ըլլալ։ — Հ. 24ի վրայ ի մէջ այլոց կ'աւելցնէ Հայը "եւ շուրջ զբանակաւն պաշարկանէին„, եւ սկըզբնագրին ալ խօսքը՝ τὸ πλεῖστον μέρος τῆς τοῦ Νικάνορος... πάντας δὲ φυγεῖν ἠνάγκασαν տեղափոխ կ'ընէ, զետեղելով զայն Հ. 25ի մէջ "եւ զմնացեալ զօրսն Նիկանովրայ առաջի իւրեանց փախստականս առնէին„։ — Հ. 25. "Մարդագին վաճառականացն„ Հմմտ. Հ. 11, իսկ Հոս՝ "որոց ի վաճառ այնոցիկ եկեալ էր„ = τῶν παραγεγονότων ἐπὶ τὸν ἀγορασμὸν αὐτῶν. — "մինչ օրն տարաժամէր. (փխ. Z:ի՝) իբրեւ ժամ աւուրն ի տարաժամել անկանէր, այսրէն վաղվաղակի տագնապաւ դառնային„, փխ. "դառնային այսրէն ստիպեալ ի ժամէ աւուրն„ = ἀνέλυσαν ὑπὸ τῆς ὥρας συγκλειόμενοι։ — Հ. 27. "Զվիրաւորսն„։ — Հ. 31. "սպանանելոցն„. երկու դէպքի մէջ ալ սկզբնագիրը դերանուն կը գործածէ։ — "Եւ ինքեանք շաբաթուն պատրաստէին„. աւելի ճիշդ կ'ըլլար "շաբաթապահ լինէին„ = περὶ τὸ σάββατον ἐγίνοντο։ — Հ. 33. "Թողովեցին զմարդիկ գաւառացն. որ ուրախութեան առնէին, նշան յաղթութեան կանգնէին„, փխ. "իբրեւ զտօն յաղթութեան ի Հայրենի քաղաքին կատարէին = ἐπινίκια δὲ ἄγοντες ἐν τῇ πατρίδι։ — Հայը զանց կ'առնու՝ οἵτινες ἄξιον τῆς δυσσεβείας ἐκομίσαντο μίσθον = որք վարձս արժանի ամպարշտութեանն ընկալան։ — Հ. 34. "Իսկ

յամենայն կողմանց թշուառացեալ Նիկանովր„, փխ. իսկ գլուխն չարութեան Ն. = ὁ δὲ τρισαλιτήριος N.: — Հ. 35. "Մեծաւ տառապանօք թշուառութեամբ անկեալ ի փառացն հանդերձէ հրամանաւ Տեառն ձգեալ ընդ մուրողս անկեալ„. ταπεινωθεὶς ὑπὸ τῶν κατ' αὐτὸν νομιζομένων ἐλαχίστων εἶναι τῇ τοῦ κυρίου βοηθείᾳ τὴν δοξικὴν ἀποθέμενος ἐσθῆτα = Նկուն լեալ օգնութեամբ Տեառն յայնցանէ, զոր առ յետինս ունէր եւ արկեալ յիւրմէ զփառացն հանդերձ: Ապա դուրս կը թողու Հայը, անտարակոյս չհասկնալով՝ διὰ τῆς μεσογείου, δραπέτου τρόπον ἔρημον ἑαυτὸν ποιήσας = ընդ մէջ աշխարհին, ընդ անապատ տեղիս՝ իբրեւ զստրուկ փախստեայ...: Բացատիպ վերջին համեմատութիւնը բացատրած կը թուի Հայը սա խօսքերով. "գձձեալ ընդ մուրողս անկեալ„:

## ԳԼՈՒԽ Թ.

Հ. 2. "Ի քաղաքն ի բուն նոցա„ այսինքն՝ Պարսից, որոնք Հ. 1. յիշուած են: Այս կերպով կը թարգմանէ Περσέπολις անունը: "Խորհեցաւ ձեռն արկանել զգանձիւն„, փխ. ձեռն արկանէր յաւերել զտաճարն = ἐπεχείρησεν ἱεροσυλεῖν: — "Եւ թէ հնարեսցի զքաղաքն իսկ աւերել ջանայր„, փխ. "եւ յառնուլ զքաղաքն = καὶ τὴν πόλιν συνέχειν. — "Իբրեւ զայն զգացին զօրք քաղա-

քին, առ հասարակ ի զէնս իւրեանց ընթացան, եւ զայն որ մեծաւ սաստկութեամբ ի վերայ երթեալ էր. անարժան կորակոր յանձանց ի բաց մերժէին„։ Թարգմանչին երեւակայութեամբ, որ հեղինակի պատմութեան կը հակառակի, զէնքի դիմողներն են, որ կը պարտուին. διὸ δὴ τῶν πληθῶν ὁρμησάντων ἐπὶ τὴν τῶν ὅπλων βοήθειαν ἐτράπησαν = իբր դիմեաց ամբոխն յօգնութիւն զինուց՝ ընկեցաւ յետս։ — Հ. 3. “Ազդ լինէր նմա (Անտիոքայ) որ ինչ անցք անցեալ էին ընդ նա (Անտ.)„։ Սակայն Անտ. իրեն հանդիպածն ուրիշէն լսելու պէտք չունէր. անիմաստ խօսքս ծագած է անով, որ դուրս մնացած են τὰ κατὰ Νικάνορα καὶ τοὺς περὶ Τιμόθεον γεγόνοτα = որ ինչ անցք անցեալ էին ընդ Նիկանովր եւ ընդ Տիմոթէոս։ Հայ թարգմանիչն յառաջ կը տանի. “զմտաւ ածէր զստահակութիւն քաղաքացւոցն„. խօսքս կը համապատասխանէ Հ. 4ի՝ ᾤετο καὶ τὴν τῶν πεφυγαδευκότων αὐτὸν κακίαν, զոր աչքի յառաջ խաղացումով վեր կ՚առնու եւ ապա բուն տեղն հանելով դուրս կը թողու՝ միայն “զմտաւ ածէր„ը կրկնելով Հ. 4. “ստէպ տագնապաւ անդադար„ = ἀδιαλείπτως։ — “Զայն ինչ ոչ ածէր զմտաւ, եթէ յերկնից իրաւունք ինչ ոչ երթային„, փխ. “մինչդեռ դատակնիք երկնից կախեալ կային ի վերայ նորա = τῆς ἐξ οὐρανοῦ δὴ κρίσεως συνούσης αὐτῷ։ — “Բայց ինքն մեծամեծս փքայր ի հպարտութիւն

ամբարտաւանութեան իւրոյ եւ ասէր», փխ. զի այսպէս հպարտացեալ խօսէր = οὕτω γὰρ ὑπερηφάνως εἶπε։ — «Անմարդի ... հասուցանել» ուղղ.՝ կացուցանել, հմմտ. Հայկ. Բառ. Ա, 201. Նորայր, էջ 359, Թ. 87 եւ վարը՝ Հ. 14։ Սկզբնագիրն ունի. πολυάνδριον ... ποιήσω παραγενόμενος ἐκεῖ = ի գերեզման արարից հասեալ անդր»։ Հազուագիւտ դէպք մըն է, ուր Հայը ուղղակի խօսքը կը շրջէ անուղղակի ձեւի։ — Հ. 5ի մէջ «ոսկր», Հ. 6. «մարմին» կը թարգմանէ σπλάγχνον, փխ. «աղիք» կամ փորոտիք։ — Հ. 6. «Զի որ բազում նորանոր չարաչար ցաւս յայլոց մարմինս տանջանօք հասուցանէր, նոյն սաստկութեան ցաւք զնովաւ անկեալ պաշարեալ պահէին»․ τὸν πολλαῖς καὶ ξενιζούσαις συμφοραῖς ἑτέρων σπλάγχνα βασανίσαντα = որոյ բազում եւ անլուր տանջանօք զայլոց փորոտիսն տանջեալ էր։ — Հ. 7. «Անկանէր ի չարաչար տանջանս», փխ. այնպիսի չարաչար անկմամբ անկանէր = δυσχερεῖ πτώματι περιπεσόντα։ — Հ. 8. «Եւ զվերին լերանցն ներքին առնել եւ զներքին վերին», փխ. եւ կշռովք զբարձրութիւն լերանց կշռել = καὶ πλάστιγγι τὰ τῶν ὀρέων οἰόμενος ὕψη στήσειν։ «Շալակաւ», որ 4 Թգ. Դ, 39, գործածուած է ἱμάτιονի դէմ. հոս դրուած է փոխարէն՝ «ἐν φορίῳ» = պատգարակաւ, բայց ոչ այս իմաստով, այլ այժմեան եւ միջինդարեան «ուս» նշանակութեամբ։

Պատգարակը՝ Թարգմանչին կարծիքով՝ ուսերու վրայ բարձուած պիտի ըլլայ։ — Հ. 10. «Որ յառաջն + հպարտացեալ մտօք». μικρῷ πρότερον = սակաւ մի յառաջ։ — Հ. 11. «Առ տանջանացն Աստուծոյ (ջնջելու է.) միով միով (ուղղելու է Խի հետ՝ միոյ միոյ) ցաւօք (ուղղելու է՝ ցաւոց) ի վերայ հարեալ (ուղղելու է ըստ Խի՝ հասեալ). փխ. «զի ընդ հարուածովք Աստուծոյ տանջանք իւր գամ քան զգամ առաւելուին» = θείᾳ μάστιγι κατὰ στιγμὴν ἐπιτευόμενος τοῖς ἀλγηδόσι։ — Հ. 12. «Սկսաւ այսպէս խօսել», փխ. ասէ = ἔφη։ — Հ. 14. «Անմարդի ... մարդաշատ»։ Սկզբնագիրն այս բառերուն հանդէպ ունի πολυάνδριον ինչպէս Հ. 8։ Մէտ եմ ընդունելու որ Հայը բառիս մէկ իմաստը միայն (բազմամարդ) գիտցած է եւ որովհետեւ Թշնամի քաղաքին նկատմամբ այն չէր յարմարեր, անոր հականիշը (անմարդ) հնարած է թէ՛ հոս եւ թէ՛ վերը։ — Հ. 15. «Գրով մուրհակօք կացուցանել»։ Բացատիպ բառերը Թարգմանչին կը պատկանին, թէեւ պատմուածքին բնութենէն կը հետեւին։ — «Զոր յառաջագոյն սպառնայր կապուտ կողոպուտ թողուլ», փխ. «զոր յառաջագոյն աւերեալ էր = ὃν πρότερον ἐσκύλευσεν։ — «Զզարդ եւ զսպաս տաճարին + որ յառաջ անտի տարեալ իցէ», փխ. «զսպասս սրբութեան = τὰ ἱερὰ σκεύη։ — Հ. 19. «Առ քաղցր Հեբրայեցիս առ ընկերս եղբարս քաղաքակիցս», փխ. «առ պիտանի Հրեայս քա-

ղաքակիցս = τοῖς χρηστοῖς Ἰουδαίοις τοῖς πολίταις: Ապա լոկ «ողջոյն յոյժ», ով կը գոհանայ փոխարէն սկզբնագրին եռանդամ բարեմաղթութեան. χαίρειν καὶ ὑγιαίνειν καὶ εὖ πράττειν: — Հ. 19—20. Հայը կը փախցնէ նամակագրին անունը պարունակող եւ այս պատճառաւ կարեւոր սա խօսքը. βασιλεὺς καὶ στρατηγὸς Ἀντίοχος, εἰ ἔῤῥωσθε, καὶ τὰ τέκνα καὶ τὰ ἴδια κατὰ γνώμην ἐστὶν ὑμῖν = Անտիոքոս արքայ եւ զօրավար. եթէ ողջ էք, եւ որդիք եւ ամենայն ինչ ձեր ըստ ձերոց հաճոյից իցեն: — Հ. 21. «Եւ ես ի տկարութեան իմում յանհնարին հիւանդութեան մեծաւ գթով յիշեցի զձեզ». κἀγὼ δὲ ἀσθενῶς διεκείμην, ὑμῶν τὴν τιμὴν καὶ τὴν εὔνοιαν ἂν ἐμνημόνευον φιλοστόργως = ես անկեալ կամ հիւանդ, եւ յիշեմ բարեկամ մտօք ձեր զմեծարանս եւ զբարեացակամութիւն: — Հ. 25. «Ընդ ակամբ հայէին ի մեզ». τοῖς καιροῖς ἐπέχοντας δροσδεχομένους τὸ ἀπο βησόμενον = որք դիպող ժամն խնդրեն եւ սպասեն մնան, թէ զիարդ իրքն կատարեսցին: — Հ. 26. «Աղաչեմ զձեզ». παρακαλῶ οὖν ὑμᾶς καὶ ἀξιῶ, մեր թարգմանիչն այս երկու բայերն նոյնիմաստ կը համարի եւ ի մի կը ձուլէ կամ խառն կը գործածէ (Բ, 3. Գ, 34. Ձ, 14):

### ԳԼՈՒԽ Ժ.

Հ. 2. «ի մէջ քաղաքին» = κατὰ τὴν ἀγοράν = «ի հրապարակի»: Վարդանեանի հետ

պէտք է կարդալ “Մէջքաղաքին„ մէկ բառ “ἀγορά„ իմաստով (Վարդանեան, Բառաքննական Դիտողութիւններ, Բ, 1914, Թիւ 167)։ — Հ. 5. “զՍրբութիւնն անդրէն նորոգել„, փխ. սրբել զտաճարն = τὸν καθαρισμὸν γενέσθαι τοῦ ναοῦ։ — Հ. 8. “Հրաման տուաք ածել (! փխ. տանել, տես § 4, ժ, 8) զաւուրս զայս ի տօն տարեկանաց բարեկենդանութեան ցնծութեամբ եւ ուրախութեամբ ի հասարակաց համարուէ (ա՛ համարէ = ψήφισμα, քուէ) ազգին Երրայեցւոց + ածել զայս տօն տարեկանաց ի կարգի աւուրց իւրոց„։ Սկզբնագրին համեմատ է, բացատիպ ընդլայնումները նկատի չառնլով։ Խաչանշանէն ասդին եղած խօսքը աւելորդ կրկնում է, գուցէ նաեւ կրկնագրութիւն։ — Հ. 9. “Վասն մահուանն... այսչափ բանք„, փխ. “այս ինչ դիպէր = οὕτως εἶχεν, հմմտ. Գ, 40։ — Հ. 11 ի մէջ կը փախցնէ στρατηγὸν πρώταρχον = զօրավար վերին։ — Հ. 12. “Եւ զՊտղոմէոս„, այս ընթերցուածով՝ Պտողոմէոս խնդիր կ՚ըլլայ “կացոյց ի վերայ իւրաց„ եւն բային, հակառակ սկզբնագրին, որուն մէջ Հ. 12 նոր գաղափար մը կը սկսի. Եւ (= իսկ) Պտղոմէոս = Πτολομαίος γαρ։ — “Զիրաւունս հաստատուն պահէր առ Եբրայեցիս (Ἰουδαίους) + վասն ուխտիցն եդելոց„։ Հայուն այս յաւելուածը թերեւս ակնարկութիւն եւ ազդեցութիւն է Թ. 19—27 պատմուածին։ — Հ. 13. “Առ Անտիոքոս„,

յուն. Εὐπάτορα։ — «Թող զնա», պէտք է կարդալ զնոսա = զնա, այսինքն «զկողմանս Կիպրացւոց»։ — Համարիս մէջ դուրս թողուցած է սա սեթեւեթեալ խօսքը. μητ᾽ εὐγενῆ τὴν ἐξουσίαν ἔχων (ἐξουσίαν εὐγενίζειν!) = ազնիւ կալու զիշխանութիւնն։ — Հ. 14. «Զօրաժողով լինէր», փխ. «ունէր վարձու զօրս եւ մարտ մղէր ընդդէմ Հրէից = ἐξενοτρόφει καὶ παρ᾽ ἕκαστα πρὸς τοὺς Ἰουδαίους ἐπολεμοτρόφει։ — Հ. 15. «Հասանել հարկանել խուզել զամուր ամուր կողմանսն». ἐγκρατεῖς ἐπικαίρους ὀχυρωμάτων ὄντες = որոց կալեալ էր զլաւ ամուրսն։ — Հ. 17. «Զամուրսն փլուցին», փխ. «յետս մղեցին զամենեսին որք ի վերայ պարսպացն մարտնչէին = πάντας τε τοὺς ἐπὶ τῷ τείχει μαχομένους ἠμύναντο։ — Կը փախցնէ՝ οὐχ ἧττον τῶν δισμυρίων = ոչ նուազ քան զերկուս բիւրս (սատակեցին)։ — Հ. 18. «Փախստեայ գնացին + եկին ամրացան»։ — «Նոքա ընդ իւրեանս ունէին զամենայն կահ մեքենայից + շուրջ պահ եդին, եւ զմենքենայսն առ պարիսպն կանգնեցին»։ Հայը սխալ հասկցած է, կը կարծէ թէ պաշարողներու վրայ է խօսքը, մինչ հեղինակը կ'ըսէ, թէ բերդին մէջ ամրացողները պաշարման դիմանալու ամէն միջոց ունէին. πάντα τὰ πρὸς πολιορκίαν ἔχοντας = ունէին զամենայն, որ ինչ պիտոյ էր առ ի բաւել պաշարման։ — Հ. 20. «Իսկ Շիմոնեանք + որ զբերդաւն նստէին ի պատգամս անկանէին», յա-

ւելուած Թարգմանչի։ — "Ելանել սփռել յամրոցաց անտի", յուն. διαρρύηναι = ելանել արտաքս։ — Հ. 23. Զանց կ'առնու ἐν τοῖς δυσὶν ὀχυρώμασι = յերկուս ամուրսն։ — Հ. 24. "Դարձեալ զուարթանայր դարձեալ զօրաժողով լինէր" = συναγαγὼν... δυνάμεις։ — Հ. 28ով Հայ Թարգմանիչը գրաւիչ տեսարանով մը բանաստեղծօրէն կը Համեմէ իր գրիչը. "Այն ինչ վարդագոյն ծայրակարմիր արեգակն ընդ երկիր ծաւալել կամէր". այս խօսքին առիթ եղած կ'երեւայ διαχεμένης տարբերակը (A. 19, 44, 52, 55, 62, 71, 74, 106), մինչ ընդունուած բնագիրն ունի. ἄρτι δὲ τῆς ἀνατολῆς διαδεχομένης = իբրեւ արեգակն ծագէր։ — Բանաստեղծական աւիւնն է որ զինքը սկզբնագրէն Հեռացնելով անկախ խմբագրելու կը մղէ. "կիսոցն օր բարենշան զուարթութեամբ պատրաստեալ զյաղթութիւն զուարճացեալ մատուցանէր, զի փառքն զօրութեանց յերկնից օգնականութեան Տեառն իւրեանց լուսով իջեալ շուրջանակի պատեալ Հաստատեալ պաՀէին. կիսոցն սրտմտութիւն բարկութեան ըստ Հպարտութեան զօրավարացն ածեալ պնդեալ շտապ տագնապի ի տեղին Հուսուցանէին"։ Թէ Թարգմանիչն այս խօսքին մէջ — այն Հազուագիւտ խօսքերէն, որոնք Կորիւնեան ու Ագաթանգեղեան խրթնութիւն ունին — ինչ իմաստ դրած է, դժուար է ըսել, իսկ Հեղինակին ըսածը շատ պարզ է. կէսք (= Հրեայք)

գրաւական յաջողութեան եւ յաղթութեան ունէին բացի քաջութենէն իւրեանց, զվստահութիւն նոցա ի Տէրն, իսկ այլք (հեթանոսք) զկատաղի բարսն կարգէին յառաջնորդ պատերազմի = οἱ μὲν ἔγγυον ἔχοντες εὐημερίας καὶ νίκης μετ᾽ ἀρετῆς τὴν ἐπὶ τὸν κύριον καταφυγήν, οἱ δὲ καθηγεμόνα τῶν ἀγώνων ταττόμενοι τὸν θυμόν: — Հ. 29. «Այն ինչ լինէր նորա (ուղղ. նոցա), չարաչար զանողորմ ձեռն պատերազմի ի գործ արկանել» փխ. իբրեւ խառնուրդք լինէին մարտին = γενομένης δὲ κρατερᾶς μάχης: — Հ. 30. «Յառաջ խաղային իւրեանց զինուքն ծածուկ վառեալ. առաւել յառաջ տանէին քան նորա զինուն»: Կամ պակասաւոր է խօսքս եւ կամ «առաւել յառաջ տանէին», պէտք է սկիզբը դնել եւ ջնջել «յառաջ խաղային»: Կը տեսնուի որ թարգմանիչը շփոթութեան մէջ է եւ չէ հասկցած հեղինակին միտքը. σκεπάζοντες ταῖς ἑαυτῶν πανοπλίαις ἄτρωτον διεφύλαττον = ծածկեալ զնա զինուք իւրեանց արքն պահէին զնա անխոց: Զախող է նաեւ շարունակութիւնը. «զի յամենայն կողմանց նետք եւ տէգք որ գային ի վերայ՝ առ հասարակ ի բաց թօթափէին». εἰς δὲ τοὺς ὑπεναντίους τοξεύματα καὶ κεραυνοὺς ἐξεῤῥίπτουν = իսկ ի թշնամիս անդր արձակէին (արքն) նետս եւ տէգս: — Վերջապէս աւելախօսութեամբ կերպարանափոխ ըրած է համարիս նաեւ վերջին մասը. «եւ ինքեանք իւրեանց նետիւք

լի բարկութեամբ զաչս թշնամեացն բուռն դէպ (ուղղ. դէտ) կալեալ առհասարակ ի կուրութիւն դարձուցանէին, եւ խռովեալ զօրք թշնամեացն ընդ միմեանս խառնէին„. διὸ συγχυθέντες ἀορασίᾳ κατεκόπτεντο ταραχῆς πεπληρωμένοι = նմին իրի կուրութեամբ հարեալ եւ լցեալ խռովութեամբ կոտորեցան: — հ. 31. "Յայնժամ յայնմ աւուր անկեալ գտանէր ի գնդէ անտի թշնամեացն առաջի նոցա քսան հազար եւ հինգ հարիւր սպառազէն„, փխ. սպանան 20.500 հետեւակք եւ վեցհարիւր հեծեալք = κατεσφάγησαν δὲ δισμύριοι πρὸς τοῖς πεντακοσίοις, ἱππεῖς δὲ ἑξακόσιοι: — հ. 32. "Պրծեալ ընդ ամբոխն ի փախուստ դառնայր„ = συνέφυγεν: — հ. 34. "Այպն կատակ լինէին Եբրայեցւոցն„: Եթէ հարազատ ու սկզբնական է ընթերցուածս, — որուն վրայ կը տարակուսիմ, քանի որ շարունակութիւնը կը հակասէ ասոր, — անյաջող է թարգմանչին գերզգօնութիւնը, վասն զի հեղինակին համեմատ ընդհակառակն Եբրայեցւոց թշնամիները "հայհոյէին յանչափս„ = ὑπεράγαν ἐβλασφήμουν: — "Եւ բանս կսծալիս թշնամանաց առ իւրեանց չարի ի նոսա արձակէին„, փխ. բանս անպիտանս խօսէին: — հ. 35. "Արք ընտիրք„, փխ. երիտասարդք = νεανίαι: — "Ի նախանձու բարկութեամբ զէնս առեալ ընդ դուռն քաղաքին ի ներքս յարձակեցան„. πυρωθέντες τοῖς θυμοῖς διὰ τὰς βλασφη-

μίας, προσβάλοντες τῷ τείχει = բոլորքեալք բարկութեամբ վասն հայհոյութեանցն յարձակեցան զպարսպօքն։ — "Զօր առ դրանն գտին առ ոտս իւրեանց կոտորեցին", փխ. "որ ի ձեռս անկան կոտորեցին"։ — Հ. 36 Համարին մէջ ἐν τῶν περισπασμῷ ռազմագիտական բացատրութիւնը թարգմանչին անծանօթ ըլլալով վառ երեւակայութեամբ կը ստեղծէ խառնաշփոթ ու սաստիկ պատերազմի մը կենդանի պատկերը։ Հեղինակը կ'ըսէ. ἕτεροι δὲ ὁμοίως προσαναβάντες ἐν τῷ περισπασμῷ πρὸς τοὺς ἔνδον = Նոյնպէս եւ այլք թեքեալք յառաջ խաղային ընդդէմ պահակին։ Իսկ թարգմանիչը կը ստորագրէ այսպէս. "Եւ զօրքն առ հասարակ շուրջ զպարսպօքն յարձակեցան, եւ զայն աղմուկ եւ աղաղակ ի վերայ քաղաքին հասուցանէին, զի որ զօրք պարսպապահ ի վեր անդ կային, որ ի ներքս՝ որ արտաքս քան զտեղ քան զտարափ թանձր եւ արագ վերուստ ի վայր թօթափէին եւ ինքեանք առ հասարակ ի ներքս թափէին։ — Հեղինակը կ'ըսէ. ἐνεπίμπρων τοὺς πύργους = Հրձիգ առնէին զաշտարակս. Թարգմանիչը կ'ընդլայնէ. "զաշտարակս բերդին եւ զամենայն փայտակերտ քաղաքին հրձիգ առնէին. զդրունսն այրէին (սկզբնագրին մէջ քիչ մը վարը՝ οἵδε τὰς πύλας διέκοπτον) եւ զմեքենայս եւ զամենայն երեւելի [ե-] երեւելի գործի ի բաց ապականէին"։ — "Եւ զամենայն զինչս եւ զստացուածս եւ զօրէնս

եւ զկարգս քաղաքին՝ զայն ի ձեռն առնուին„: Տարակոյս չկայ որ բազմիմաստ τάξις ի վրայ կը յենու այս ընդլայնումը, փխ. եւ արձակեալ ի ներքս զմնացեալ զօրս՝ առնուին զքաղաքն = εἰςδεξάμενοι δὲ τὴν λοιπὴν τάξιν (= կարգ, կանոն, յօրինուածք, զօրք) προκατελάβοντο τὴν πόλιν: — Հ. 37. "Մինչեւ զՏիմոթէոս եկին գտին փախուցեալ թաքուցեալ ...զնա„ եւն, փխ. "եւ զՏ. զթագուցեալն = καὶ τὸν Τιμόθεον ἀποκεχρυμμένον: — Հ. 38. "Օրհնութեամբ ցծութեամբ գոհութեամբ ուրախութեամբ„: Բացատրականերն սկզբնագրի մէջ չկան: — "Որ մեծաւ քաջութեամբ քաջ անուամբ զյաղթութիւն պատրաստեաց ի ձեռն Իսրայելի„, փխ. "որ մեծապէս բարի արար Իսրայելի եւ շնորհեաց նմա զյաղթութիւն = τῷ μεγάλως εὐεργετοῦντι τὸν Ἰ. καὶ τὸ νῖκος αυτοῖς διδόντι:

## ԳԼՈՒԽ ԺԱ.

Հ. 2. "զամենայն զօրսն հեծելազօր + ութ բիւրուն հանդերձ ընդ իւր առեալ„: Խաչանիշէն ասդին թարգմանչին աւելորդ յաւելուածն է, բայց "ընդ իւր առեալ„ը կրնայ նաեւ կրկնագրութիւն ըլլալ եւ α չունի զայն: — Հ. 4. "եւ զփիղսն աղխաղխեալ տանէր„, փխ. եւ յութսունն փիղսն = καὶ τοῖς ἐλέφασι τοῖς ὀγδοήκοντα,

չեմ կրնար մեկնել թէ ինչպիսի՛ սխալ ընթերցում մը հեռացուցած է թարգմանիչն այս պարզ խօսքէն։ — Հ. 5. “Մերձ է„, յուն. ἀπέχοντι = հեռի է։ — “Պատէր բիւրուքն եւ ի նեղ մեծ զամուրն հասուցանէր„, փխ. պարզապէս՝ ἔθλιβεν = ի նեղ արկանէր։ — Հ. 8. “Եկն էջ„, փխ. երեւեցաւ = ἐφάνη։ — “Ճաւճէր զնիզակն + եւ պատրաստէր յարձակել.„ πανοπλίαν χρυσῆν κραδαίνων = ճօճէր զոսկի զէնսն։ — Հ. 9. խրախոյս բարձեալ օրհնէին = εὐλόγησαν — “Եւ այնպէս քաջալերեալք եւ զաւրացեալք էին + ի մտի եդեալ յարձակեալ երթային„. ἐπεῤῥώσθησαν ταῖς ψυχαῖς = քաջալերէին սրտիւք։ — “Իբր ոչ եթէ մարդկան ի դիմի հարկանել[ոց] երթային, այլ թէ եւ գազանք ինչ անհնարին(ք) պատահեսցեն, եւ կամ պարիսպք երկաթիք, հարկանել սատակել կործանել թափանցանել համարձակ„. οὐ μόνον ἀνθρώπους ἀλλὰ καὶ θῆρας τοὺς ἀγρωτάτους καὶ σιδῆρ τείχη τιτρώσκειν ὄντες ἕτοιμοι = պատրաստք յարկանել տապաստ ոչ միայն զմարդիկ, այլ եւ զվայրի գազանսն եւ զերկաթի պարիսպս. “համարձակ„ = ἕτοιμοι Zի մէջ սխալմամբ կցուած է հ. 10ի (համարձակ յարձակէին)։ — Հ. 11. “յար արձակեցան„. ջնջելու է “յար„, որ լոկ սխալագրութիւն է եւ զոր Zna կ'ուղղեն։ — Հ. 13. սխալ կիտադրութեամբ Zի սկզբնագրէն տարբեր՝ կերպարանք

առած է, մինչդեռ ուղիղ կիտադրութեամբ յունարէն մեզի ծանօթ բնագիրն իսկոյն կը նշմարուի: Ուստի կը կարդամ. “իբր ոչ եթէ անմիտ ինչ լինէր (οὐχ ἄνους δὲ ὑπάρχων), յանձն իւր (πρὸς ἑαυτὸν) վասն իւրոյ վատթարութեանն ի մտի եդեալ խօսէր (ἀντιβάλλων τὸ γεγονοτὸς περὶ ἑαυτὸν ἐλάσσωμα). անհնարին առ յաղթութիւն ասէր զեբրայեցիսն (καὶ συννοήσας ἀνικήτους εἶναι τοὺς Ἑβραίους) հզօրին Աստուծոյ օգնական լինել նոցա = τοῦ πάντα δυναμένου θεοῦ συμμαχοῦντος αὐτοῖς. — Հ. 17. “իբրեւ ի ձէնջ գիրն էր,, շատ անճարակ բացատրուած փխ. զգիրն, որ կրէր զձեռնագիր ձեր = τὸν ὑπογεγραμμένον χρηματισμόν. — Հ. 19 “ինչ որ գրեալ մեզ՝ ընդ ձեզ ինամ անկցի,, մթին, գուցէ նաեւ պակասաւոր խօսք մը, փխ. “եթէ բարի միտս առ արքունական իրս կալջիք = ἐὰν μὲν οὖν συντηρήσητε τὴν εἰς τὰ πράγματα εὔνοιαν. — Հ. 24. “զո՞ այլ զոք առաւել քան զՀրեայսդ,, ակներեւ է խօսքիս թերութիւնը. դժուար է լրացնել, քանի որ սկզբնագրի մէջ կռուան չունինք: Սա կ'ըսէ. ἀχηχοότες τοὺς Ἰουδαίους = լսեալ, եթէ Հրեայք՝ Թէեւ Հայը “զի նախ նոքա,, ով կը կապէ, սակայն ի զուր, ասոնք ալ բնագրէն վտարուելու են: — Հ. 27. “եւ առ զօրս եւ առ գունդս Հրէից ընտանի ողջոյն,, փխ. եւ առ այլ Հրեայս ողջոյն = τοῖς ἄλλοις Ἰουδαίοις χαίρειν. — Հ. 30. “գնաւ ունիցին,, անիմաստ, ab կը կարդան՝ “գնայուն

իցեն„ որմէ դիւրաւ կը ստանանք ուղիղ ձեւը "գնայցեն„ = καταπορευομένοις. — "Ահեկանի ամսեան„ = Ապրիլ/Մայիս. Նոյն իմաստն ունի սկզբնագրին Ξανθικοῦ։ — Հ. 32. "զԼիւսիաս եւ զՄենեղաւոս„, յուն. καὶ τὸν Μενέλαον. Հայը ապահով καὶ "եւ„ իմաստով (փխ. նաեւ) առած եւ սովորական անուն մը (Լիւսիաս) աւելցուցած է։ — Հ. 36. "զի գիցուք օրէնս մի„ փխ. զի դիցուք առաջի = ἵνα ἐχθῶμεν. — "որպէս արժան իցէ օգտել վասն ձեր,„ փխ. որպէս արժան իցէ ձեզ = ὡς καθήκει ὑμῖν.

## ԳԼՈՒԽ ԺԲ.

Այս գլուխը նախընթացին հետ խառնուած է։ ԺԱ. գլխու վերջին երեք բառերը "եղան դաշինքս այս„ պէտք է միացնել ԺԲ.ի իբր սկիզբը, աւելցնելով "իբրեւ„։ Ուստի կը կարդամ. Հ. 1. "իբրեւ եղեն դաշինքս այս„ = γενομένων τῶν συνθηκῶν τούτων. — Անդրէն զգործովք, զարաւրով, զարդեամբք պատաղեցան, փխ. զերկրագործութեամբ պատաղեցան = περὶ τὴν γεωργίαν ἐγίνοντο. — Հ. 3. "այնչափ ինչ համարձակեցան անօրէնութիւն գործել. եկին բարեխօսք ստիպէին„ փխ. "այսպիսի ինչ անօրէնութիւն գործէին, ստիպեալ = τηλικοῦτο συνετελέσαν τὸ δυσσέβημα παρακαλέσαντες. "ածել զնոսա

նաւուք,,. ἐμβῆναι εἰς τὰ παρασταθέντα ὑπ' αὐτῶν σχάφη = “մտանել ի նաւս պատրաստեալս ի նոցանէ,,, այս բացատիպ բառերը Ձ. 71ի մէջ կը պակսին, ուստի գուցէ նաեւ Հայուն սկզբնագրին մէջ։ — Հ. 4. “իբրեւ թէ ի խաղաղութիւն միաբանութեան ածել զնոսա. “փխ.,, զի նոքա (Հրեայք) հաշտութեան խորհուրդս ունէին = ὡς ἂν εἰρηνεύειν θελόντων. — “սոքա յանձն առին՝ իբր ոչինչ կասկած կամ կարծիս ի մտի ունել.,, նոսրատիպերը = μηδὲν ὕποπτον ἐχόντων. — Հ. 6. “յայն վայր վաղվաղակի հասանէր,, = παρεγένετο. — Հ. 7. “եւ զամուրսն ի պահ զգուշութեան փակեալ,,. յունարէն բառը ներգործական իմաստով առած կը թուի ինչպէս կ'ընեն նաեւ դէ Վետտէ, Շոլց. բայց կրաւորականը միայն ուղիղ կրնայ ըլլալ. τοῦ δὲ χωρίου συγκλεισθέντος = (գտեալ), զտեղին փակեալ։ — Հ. 9. “վտաւանք իբրեւ չորեքհարիւր ութսուն,,. յունարէնը ճիշդ կէսն ունի σταδίων ὄντων 240. Հոս ու հ. 10 (20 ունի հայը փխ. 9ի) կրկնապատկումը զարմանալի է, քանի որ հ. 16, 17, 29. ստադիոնին փոխարէն դրուած է վտաւան առանց թուի կրկնապատկութեան։ Ուրիշ մեկնութիւն չունիմ առ այժմ, բայց եթէ հայ չափի անուններու յեղյեղուկ գործածութիւնը։ — Հ. 11. Հայը դուրս կը թողու Ἄραβες եւ կը շատանայ “արօտականքն,, = Νόμαδες յորջորջանքով։ — “առաջի կացին գնդին յուդայեան եւ հնազանդեալ առաջի

անկեալ...խնդրէին„ փխ. խնդրէին ի Յուդայէ = ἠξίουν τὸν Ἰούδαν. — Հ. 13. “Սոքա ասպատակ եդին ի կողմն մի, զքաղաք մի... եւ զայն պատեալ պաշարեալ պահէին„ փխ. “յարձակէր ի վերայ քաղաքի միոյ„ = ἐπέβαλε δὲ καὶ ἐπί τινα πόλιν. — “լցեալ պէսպէս խառնիճաղանճ ազգաւն բնակեցեալ զօրօք.„ παμμιγέσιν ἔθνεσιν κατοικουμένην = յորում բնակէին ազգք խառնիճաղանճք։ — Հ. 15. “զամենազօրն զմեծն զհզօրն երկնից եւ երկրի„ փխ. զմեծազօրն աշխարհի = τὸν μέγαν τοῦ κόσμου δυνάστην։ — “Առանց մանգղոնից մենքենայից„. Թարգմանիչը կը սիրէ այս երկու փոխառեալ բառերը (տ. Հիւբշման I, էջ 363, 365) միասին կիրարկել. հմմտ. Մկ. Զ. 31, 51։ Հոս ‘մանգղոնից„ = ὀργανικῶν դրած է։ — Հ. 18. “լուծեալ եկեալ ի զօրութենէ իւրմէ„ փխ. ‘ի տեղւոջէն ի բաց գնացեալ„ = ἀπὸ τῶν τόπων ἐκλελυκότα. Սխալ հասկացողութիւնը դիւրաւ կը մեկնուի, վասն զի Հայուն սկզբնագիրը նման 19, 62, 71, 93ի զանց առած էր ἀπὸ τ. τ. — Հ. 22. “յառաջ զեռեալ (ուղղ. զեռալ) սկսան զօրքն թշնամւոյն„ փխ. ահ անկանէր ի վերայ թշնամեաց = γενομένου δέους ἐπὶ τοὺς πολεμίους. Որովհետեւ յառաջանալու (յառաջ զեռալ) գաղափարը կը գտնենք Հայուն քով թերեւս δέουςը ὅδους կարդացած ըլլայ. — “Սրտաթափս անդէն եւ անդ մրրկեալ ընդ միմեանս պողէր պղտորէր եւ

առհասարակ ընդ ամենայն կողմանս ի փախուստ դարձուցանէր․„ εἰς φυγὴν ὥρμησαν ἄλλος ἀλλαχῆ φερόμενος = ոմն յայս եւ ոմն յայն կոյս ի փախուստ դառնայրն։ — Հ. 24. "դիւբութեամբ„. Zn՝ դիւրողութեամբ. ZnboJ՝ թողութեամբ. a՝ ողորմութեամբ. Բագրատունի (Հրտ. Ա. Գրոց) կ՚առաջարկէ դիւթութեամբ կամ դիւթողութեամբ։ Ես կը բաղձամ "դ„ն փոխելով "թ„ի կարդալ թիւրութեամբ = μετὰ γοητείας. — "Զի ասէր նա, բազմաց ի ձէնջ են ընտանիք առ մեզ եւ եղբարք․„ διὰ τὸ πλειόνων μὲν γονεῖς ὧν δὲ ἀδελφοὺς ἔχειν = զի բազմաց զծնողսն ունել ընդ իւրեւ եւ զայլոց եղբարս։ — Հ. 24. "փոխանակ իւր զբազումս արձակելոյն,„ փխ. զնոսա անվնասս արձակել = ἀποκαταστήσειν τούτους ἀπημάντους. — Հ. 26. Անտեսելով Զի կիսադրութիւնը կը կարդամ. "Նա իբրեւ ել անկաւ յամուր անդր կշիռ ի բնի, ի շունչանան վերայ ած կոտորեաց,„ սկզբնագրին մէջ երկու բերդի վրայ է խօսքը. եկն ի վերայ Կառնիոնի (ἐπὶ τὸ Καρνίον, զոր Տ. 21 կը թարգմանէր "յամուր անդր Կառնացւոց„) եւ Ատարգատեայ (Ἀταργατεῖον)։ Ի՞նչպէս մեկնելու է աւանդուած տարօրինակ ձեւերն հայերէնի մէջ։ Բագրատունիի համեմատ՝ Հայ թարգմանիչն ուզած է Ատարգատէս դիցուհւոյն "կրկնեղջիւր„ = Καρνίον նկարագիրն արտայայտել։ Բայց չեմ գիտեր, հայերէն երկու բառերէն որուն մէջ "կրկնեղջիւր„ իմաստը կը գտնէ։ Ըստ իս "Կշիռ ի բնի„

իբր եղծուած առանց դժուարութեանց կարելի է վերածել նախնական ձեւին՝ “կառնիոնի„։ Իսկ գալով “շունչանան„ի՝ որով Հայը անշուշտ տանջանքի բոլորաձեւ մեքենայ մը կ'երեւայ — վասն զի՝ ի շուչանան վերայ ած կոտորեաց — ուրիշ հնարք չկայ, բայց եթէ Տաշեանի հետ ընդունիլ, որ Ἀταργάτις անունը յունարէն բառի մը հետ շփոթած է (Պտմ. Դասական հայ լեզուի, Վիեննա 1920, էջ 105)։ — Հ. 29. “Ի քաղաք մի Սկիւթացւոց„ ասոր վրայ կ'աւելցնէ թարգմանիչը՝ ‘որք զանձինս իւրեանց երախտաւորս համարէին առ ազգն Հրէից„։ — Հ. 31. “Նոքա, իբրեւ խաղաղութեան պատահար ի Մակաբայեցւոց գնդէ անտի աջողեցաւ, ձայն բարձեալ ի գունդ անդր՝ յայսմհետէ յառաջառաւել եւս յազգս նոցա հնազանդութիւն պահելոյ.„ εὐχαριστήσαντες αὐτοῖς καὶ προσκαλέσαντες, καὶ εἰς τὰ λοιπὰ πρὸς τὸ γένος εὐμενεῖς εἶναι = շնորհ ունէին եւ խրախոյս տային յայնմհետէ եւս բարեկամ առ ազգն լինել։ — Հ. 33. “երիւք բիւրուք վահանաւոր զօրու„ ինչպէս հ. 23, մինչդեռ սկզբնագիրը “երիւք հազարօք„ կ'ըսէ. բաց աստի թէ՛ հոս թէ՛ ԺԳ, 2 “վահանաւոր զօրք„ը կը համապատասխանէ հետեւակ զօրու = πεζῶν. — Հ. 34. “Իբրեւ յայսկոյս յայնկոյս միմեանց ընդդէմ ճակատեցան, դէպ եղեւ սակաւուց յԵբրայեցւոց գնդէ անտի անկանել ի մէջ երկուց ճակատուցն.„ καὶ παραταξομένων

συνέβη πεσεῖν ὀλίγους τῶν Ἰουδαίων = իբրեւ ընդդէմ միմեանց ճակատեցան, դէպ եղեւ սակաւուց ումանց անկանել ի Հրէից անտի։ — Հ. 35. “Այր հզօր սպառազէն պատերազմող յարձակեալ գայր ի վերայ Գէորգեայ.„ ἔφιππος ἀνὴρ καὶ παρτερὸς εἴχετο τοῦ Γοργίου = հեծեալ ումն եւ այր հզօր կալեալ ունէր զԳ. — Ապա դուրս կը թողու Հայը. καὶ λαβόμενος τῆς χλαμύδος ἦγεν αὐτὸν εὐρώστως = եւ բուռն հարեալ զվերարկուէն ձգէր զնա արութեամբ։ — “Եւ այն ինչ կամէր զանօրէնն ձերբակալ կալեալ կապեալ առաջի Մակաբայեցւոց գնդին պատարագ մատուցանել„. βουλόμενος τὸν κατάρατον λαβεῖν ζωγρίαν = կամէր կենդանւոյն զանօրէնն առնել ձերբակալ։ — “Եւ անտի վառեալ մի ի Թրակաց գնդէ անտի զուս հարկանէր, ի վայր քարշէր եւ զԳորգիան ի ձեռացն որա թափէր„. τῶν ἱππέων Θρακῶν τινὸς ἐπενεχθέντος αὐτῷ καὶ τὸν ὦμον καθέλοντος = եւ յարձակեալ ուրումն ի հեծելոց Թրակացւոցն եւ հատեալ զուս ի բաց։ — “Մազապուր ճողոպրեալ յամուրն Միմամէն (Z1՝ Միմարեան, bh՝ Մարէն, a՝ Մերկօրէն) փախստեայ անկանէր, փխ. փախստեայ անկանէր Գորգիաս ի Մարիսա„։ Հայ ձեռագիրներու ներկայացուցած ձեւերը վրիպագրութիւններ են “Մարիսա„ ձեւին։ — Հ. 36. “Եւ բազում կոտորածք ի միջի լինէին„, փխ. եւ խոնջեալ վաստակէին։ Հայը κατακόπων

(խոնջիլ) կարդացած է καταχόπτων (=կոտո-
րել)։ — Հ. 37. “Ձեռն ի գործ առնէին
եւ ի նմին ժամանակի...„, փխ. խուժէր
յեղակարծումն ի վերայ = ἐνσείσας ἀπροσδο-
χήτως. — Հ. 38. Սոդոմ՝ գրչասխալ, փխ. Ոդո-
լամ (Դուրեան 251)։ — Հ. 40. “Եւ իբրեւ
հասանէին ի ճակատուն տեղի, գտանէին
զիւրեանց եղբարց դիակունսն, եւ ի
ներքոյ հանդերձից նոցա յուռութուլունս եւ
բժժանս յա̃մ կռոց ուսընդանութ ու-
նէին + ուստի մանաւանդ գարշէին
օրէնքն„. εὗρον δὲ ἑκάστου τῶν τεθνηκότων ὑπὸ
τοὺς χιτῶνας ἱερώματα τῶν ἀπὸ Ἰαμνέας
εἰδώλων = գտանէին առ միոյ միոյ յանկելոցն
ի ներքոյ հանդերձից բժժանս Յամնեայն կռոց։
Յա̃մ = Յամնեայն շատ դիւրաւ կը վերածուի
սկզբնական հարազատ ձեւին՝ Յամնեայն (տես
նաեւ Դուրեան, էջ 245), փոխանակ այս պարզ
մեկնութեան, ՀԲ I, 487, կ՚ենթադրէ, որ Հայը
Ιαμνεια կարդացած է ἴαμα եւ ըստ այսմ
բժժանք թարգմանած, մինչդեռ սա եւ յու-
ռութուլունք դրուած են ἱερώματαի դիմաց։
Տեղւոյս հետաքրքրական է թարգմանչին “ու-
սընդանութ„ յաւելուածով, որ կը ցուցնէ թէ
իւր ժամանակ հայ զինուորներն հեթանոսական
սովորութեամբ թիկունքը պաշտպանելու համար
բժժանքը ուր կը պահէին։ — “Ապա իբրեւ
զայն գտին, ստուգեցին ի միտս
իւրեանց„, փխ. “յայտնի լինէր ամենեցուն„
= τοῖς δὲ πᾶσιν σαφὲς ἐγένετο. — Հ. 42.

"զպատուհասդ եղեալ վասն մեղացն եղելոց" փխ. զեղեալսն վասն մեղաց անկելոց = τὰ γεγονότα διὰ τὴν τῶν προπεπτωκότων ἁμαρτίαν. — Հ. 43. չորս. J2՝ չորս հազար. Zռ՝ ժքան հզր՝ Հայ ձեռագիրներն եղծուած կը թուին. սկզբնագիրն ունի՝ բռ (2000)։ — Հ. 45 "արութեամբ քաջութեամբ վասն մեռելոց զմտաւ ածէր" փխ. սուրբ եւ բարի են խորհուրդք = ὁσία καὶ εὐσεβὴς ἡ ἐπίνοια. — Ապա զանց կ'առնու Հայը τὸν ἐξιλασμὸν ἐποιήσατο = մատուցանէր զկոհ քաւութեան։

## ԳԼՈՒԽ ԺԳ.

Հ. 1. "առ ժամանակօքն Յուդայ" փխ. ինչպէս այլուր յաճախ կը թարգմանէր "Յուդայեանց" կամ "որոց զՅուդայիւն էին" = τοῖς περὶ τὸν Ἰούδαν. Այս տեղի բացառիկ կերպով սխալ թարգմանութիւնը προσέπεσεν սխալ հասկնալէն ծագած է (տ. § 4)։ — Հ. 3, 4, 7 սկզբնագրին Մենեղաւոս անուան տեղ Հայը սխալմամբ ունի "Շիմոն" կամ "Սիմոն" (Դուրեան, էջ 251)։ — Հ. 3. կը փախցնէ Հայը՝ παρεκάλει... τὸν Ἀντίοχον = խրախոյս կարդայր առ Անտ. — Հ. 5. "գործած բոլորշի յամենայն կողմանց, դուռն առ ի շեղ ի ներքսակողմ ի մոխիր անդ(ր) առ լեգ (այլք՝ առլեփ) շինեալ"։ Սկզբնագիրը բաւական մութ ըլլալով Հայ թարգմանիչն արդարա-

նալի է, զայն հասկանալի ընելու դիտաւորութեամբ՝ քանի մը յաւելուած ընելուն համար։ Սովորաբար այսպէս կը մեկնուի յունարէնը. “սա (աշտարակն) ունէր գործած մի, որ կարէր շրջշրջել, որպէս զի յամենայն կողմանց ի մոխիր անդր գահավէժ առնել„ = οὗτος δὲ ὄργανον εἶχε περιφερὲς πάντοθεν ἀπόκρημνον. — Հ. 6. “Հասարակ հաւանութեամբ շուրջ լինել մէն (ա՝ մին, ուղղ. թերեւս՝ մի) ձեռն մատուցեալ„։ Հետաքրքրական է այս խօսքը, վասն զի թարգմանչին կարծիքով — որ գուցէ իւր ժամանակ Հայաստանի մէջ տիրող սովորութեան մը վրայ կը յենու — չարագործ մը մոխրահեղձոյց մահուան դատապարտելու համար, հարկ էր որ հասարակութիւնը ձեռք վերցնելով իւր հաւանութիւնը յայտնէր։ Ուստի կը կարծենք, որ Դուրեան կը սխալի “անիմաստ նախադասութիւն„ կոչելով (էջ 251) “մէն ձեռն մատուցեալ„։ Սակայն ճիշդ է, որ հեղինակը բոլորովին ուրիշ բան կ՚ըսէ. ἅπαντες προσωθοῦσιν εἰς ὄλεθρον = ամենքին (= ծանր չարագործները) ի կորուստ մատնէին։ — Հ. 7. “այսպիսի օրհասաւ հրամայեցին զանօրէն Շիմոն ի միջոյ ջնջել, զի մի՛ հողոյ եւ մի՛ պատանաց յուրում բնակութեան աշխարհին արժանի լիցի„, փխ. “այսու օրինակաւ դէպ լինէր մեռանել անօրինին. եւ չընկալաւ Մենեղաւոս գերեզման երկրի. կարի յիրաւունս = τοιούτῳ τοπῳ τὸν παράνομον συνέβη θανεῖν, μηδὲ τῆς γῆς τυχόντα Μενέλαον πάνυ δικαίως։ —

Հ. 10. ‘‘ի Հարցն օրինաց,,, փխ. ‘‘յօրինաց եւ ի Հայրենեաց,, = τοῦ νόμου καὶ πατρίδος: — Հ. 11ի մէջ զանց կ՚առնու՝ τὸν ἄρτι βραχέως ἀνεψυχότα λαὸν = զժողովուրդն, որ դամ մի դեռ եւս ոգի առեալ էր: — Հ. 12. ‘‘Իբրեւ ամենեքին առհասարակ միաբանութեամբ յայսմ ուխտի կային.,, πάντων δὲ τὸ αὐτὸ ποιησάντων ὁμοῦ καὶ καταξιωσάντων τὸν ἐλεήμονα κύριον = իբրեւ ամենեքին միաբան զնոյն արարին եւ աղաչեցին զողորմած Տէրն: — Հ. 13. ‘‘Եւ ինքն առնոյր զծերակոյտ ժողովրդեանն առանձինն՝ ի խորհուրդ մտանէր,,. + Պնդեսցուք, ասէ, զքաղաքսդ,, = καθ’ ἑαυτὸν δὲ σὺν τοῖς πρεσβυτέροις γενόμενος ἐβουλεύσατο: Ուրեմն խաչանիշէ ասդին եղած բացատրիչ խօսքը Հայ.ն յաւելուածն է, զոր ապա այսպէս կ՚ամբողջացնէ Հ. 14. ‘‘Իբրեւ զայն ասէր, պնդէին վաղվաղակի ի կողմն Մովդդիիմ քաղաքի, զօրօքն հանդերձ բանակ հարկանէր,,, բացատրիչ բառերը միայն կը պարունակէ սկզբնագիրը. ἐποιήσατο περὶ Μωδεῒν τὴν στρατοπεδείαν: — Հ. 15. ‘‘Նշան բաշխէր, յանձն առնէր Աստուծոյ զանձն եւ զզօրն եւ զյաղթութիւն գնդին,,, փխ. ‘‘տուեալ իւրոցն նշան՝ Յաղթութիւն Աստուծոյ,, = δοὺς δὲ τοῖς περὶ αὐτὸν σύνθημα θεοῦ νίκης: Տարակոյս չկայ թէ հոս եւ թէ Ը, 23 պատերազմական նշանաբանի վրայ է խօսքը եւ հայերէն ‘‘նշան,, այս իմաստն ալ կու տայ (Դատ. ԺԲ, 6. — Դուրեան, էջ 250).

սակայն մեր թարգմանիչը տեղիքը լաւ չհասկ-
նալով նիւթական առումով գործածած է զայն.
Նշան բաշխեմ կը նշանակէ զինանշան, դրօշ
ներ բաժնել։ — "կոտորէր զգիշերապահ
դռնապանսն" փխ. "արս" = ἄνδρας։ —
"փղապետաւն հանդերձ անդէն սպանանէր"·
փխ. հանդերձ պահակաւն... = σὺν τῷ κατ'
οἰκίαν ὄχλῳ։ — Ապա կ'աւելցնէ Հայը. "եւ
այնպէս զդռնապահսն տապաստ ար-
կեալ այսրէն դիմէր"։ — Հ. 17. Հե-
ղինակը կ'ըսէ պարզապէս. այս լինէր մինչ-
դեռ օրն երեւէր = ὑποφοινούσης δὲ ἤδη
τῆς ἡμέρας τοῦτ' ἐγεγόνει. Իսկ Հայը՝ "եւ
ամենեքին լքեալք եւ լուծեալք
եւ սպառեալք եւ տարակուսեալք՝
յայն առաւօտն հասանէին"։ — Հ. 18.
"Քաջասրտութեան + քաջութեան զե-
բրայեցւոց գնդին" = εὐτολμίας։ —
"Խելօք միւսանգամ փորձ փորձէր + ի կորես
ելանէր"· տրամադրութեանս տակ եղող
ձեռագիրները՝ այս անհասկնալի "կորես"
ընթերցուածն ունին. ՀԲ I, 1119 կը դիտէ, որ
ընտրելագոյն ձեռագիրներ — զորոնք
Zի քով չենք գտներ — կը կարդան "ի կոր
եւս", որուն համեմատ ուրեմն՝ թագաւորին
այս փորձը "խայտառակ" արդիւնք ունեցաւ,
կ'ըսէ հայ թարգմանիչը, կանխելով հ. 19.
"յարձակեալ մարտուցեալ ի պարտութիւն
մատնէր"։ Քիչ մը այլազգ է հեղինակին հաղոր-
դած դէպքը. προσῆγεν καὶ ἐτροποῦτο, προσέ-

χρουεν, ἠλοττονοῦτο = դիմէր ի վերայ՝ եւ
յետս ընկրկէր, վերստին յարձակէր, եւ ի պար-
տութիւն մատնէր։ — Հ. 20. “Նետ եւ զէն
եւ համբարս ընդ աներեւոյթ կող-
մանս իներքս մատուցանէր„ փխ. “որ
ինչ պիտոյն էր առաքէր„ = τὰ δέοντα ἔπεμψε։ —
Հ. 21. “քննեցաւ, խնդրեցաւ, գտաւ, պատ-
ժեցաւ, ի սուրսպառեցաւ„ փխ. “խըն-
դրեցաւ, ի բուռն անկաւ եւ եդաւ ի բանտի„
= ἀνεζητήθη δὲ καὶ κατελήφθη καὶ κατε-
κλείσθη։ — Հ. 22. “եւ յերկոցունց կող-
մանց ի պարտութիւն մատնէր։ — Հ. 23.
“Մոլեգին գնացքն Փիլիպեայ, զի բռնու-
թեամբ տիրաբար ի վերայ իրացն արքունի
հասեալ շրջէր յաշխարհին.„ ἀπονε-
νοῆσθαι τὸν Φ. ἐν Ἀντιοχείᾳ τὸν ἀπολελειμμένον
ἐπὶ τῶν πραγμάτων = եթէ ապստամբեալ
իցէ յԱնտիոքացւոց քաղաքին Փիլիպ-
պոս՝ կարգեալն ի վերայ իրաց արքունի։ —
“Ի (ջնջելու է ըստ ai) գութ (a՝ եւ) սէր
քաղցրութեան (աւելցնելու է՝ ցուցա-
նէր), մարդասէր լինէր ընդ ամենայն տե-
ղիսնոցա.„ փխ. “մարդասէր լինէր ընդ տեղին
(= տաճարն) = τὸν τόπον ἐφιλανθρώπησε։ —
Հ. 24. “Փառաւորեաց զՄակաբէ, եւ
ճոխագոյն(ս) եւս կացոյց զնա ի վե-
րայ նոցա քան զառաջինն„, փխ. “ըն-
կալաւ զՄ. = τὸν Μ. ἀπεδέξατο։ — Այն հա-
մարիս մէջ բոլորովին եղծուած է Πτολεμαΐδος
(Հ. 25՝ Պտղոմայիս) անունը. Գովրա, a՝ Եգոմ։ —

Հ. 24. “Զհեգեմոնիդէս„: Դուրեան կը բաղձայ (էջ 251) սրբագրել “առաջնորդ„, սակայն Հայ թարգմանչին հոս սխալ մը վերագրել կարելի չէ, քանի որ ἡγεμονίδην յատուկ անուն է: ՀԲ. Բ. 79 դիտել կու տայ, որ յուն. ἡγεμώνι սեռականը կ՚ըլլայ ἡγεμονίδης. Հետեւաբար Հայը ἡγεμονίδην հայցական ձեւէն սխալմամբ կերտած է ուղղ. Հեգեմոնիդէս եւ հայց. կանոնաւոր՝ զՀեգեմոնիդէս: Կարելի է նաեւ որ Հայը առանց ուղղական ձեւին վրայ մտածելու նոյնութեամբ փոխ առած ըլլայ յուն. հայցական ձեւը, ինչ որ եզական չէ հայ մատենագրութեան մէջ: Սակայն այս վարկածները անհիմն են, վասն զի ՀԲ. կը սխալի: Յուն. ἡγέμωνι (առաջնորդ) սեռ.ը՝ կ՚ըլլայ ἡγ-ονος. այս ἡγεμον- արմատի վրայ -ιδης յատուկ անուններու ածանցն աւելցնելով կազմուած է Ἡγεμονίδης յատուկ անունը, զոր Հայը ուղիղ տառադարձած է Հեգեմոնիդէս, առանց յուն. հոլովներ շփոթելու կամ փոխ առնլու: — Հ. 25. “Ոչ հանդարտէին, այլ ի նմին խռովութեան կային, զի անդրէն լուծցէ զհաշտութիւն հաւանութեանն,„ փխ. “սրտմիտ լինէին ընդ որոշմունսն, զորս կամէին թէ լուծցին = ἐδείναζον γὰρ ὑπὲρ ὧν ἠθέλησαν ἀθετεῖν τὰς διαστάλσεις: — Հ. 26. “Մատեաւ ինքնին Լիւսիա, եկաց առաջի.„ προσῆλθεν ἐπὶ τὸ βῆμα Λ. = մատեաւ ի բեմն Լիւսիա: “Իմաստաբար հածեաց զմիտսն, մեղմացոյց.„ ἀπολογήσατο ἐνδεχομένως, συνέπεισε, κατεπράυνεν, εὐμενεῖς

ἐποιήσεν = ջատագով մտանէր որչափ ինչ հնարն էր, հաւանեցոյց, հաճեաց զմիտսն, մեղմացոյց։

## ԳԼՈՒԽ ԺԴ.

Հ. “Յաշխարհամիջի անդր արշաւել”, փխ. “եթէ տիրեալ իցէ աշխարհին” = κεκρατηκέναι τῆς χώρας։ — “Եղբայր” մինչ յուն. ἐπίτροπος, անշուշտ յիշելով ԺԱ, 11, 35։ — Հ. 3. “Խորհեցաւ ի միտս եւ ասէ”, փխ. “ի միտ առնոյր” = συννοήσας։ — Հ. 4. “Եւ ոստս թաւս ի պատիւ մեհենին”, փխ. “եւս եւ ոստս ինչ ձիթենւոյ՝ որ ի մեհենին էին” = πρὸς δὲ τούτοις τῶν νομιζομένων θαλλῶν τοῦ ἱεροῦ։ — Հ. 5. “Սպասէր... գտանելոյ. իբրեւ դէպ եղեւ օր մի”, փխ. “եգիտ պարապ” = καιρὸν δὲ λαβὼν։ — “Սկսաւ հարցանել զնա արքայն”, փխ. եւ հարցեալ = καὶ ἐπερωτηθείς։ — “Հեբրայեցիքդ որ ի Հրէաստանի են”, փխ. “Հրեայք”։ — Հ. 6. “Զօրաժողով են, ի մարտ պատերազմի պատրաստեալ են”, փխ. “տեւեն ի դնել մարտ = πολεμοτροφοῦσιν”, բառ մը, զոր միշտ (Ժ, 14, 15) անճիշդ կը թարգմանէ։ — “Յուզեն (= στασιάζουσιν) + հանապազ զժողովս նոցա։ — “Խաղաղութեամբ հնազանդել ձերում տէրութեանդ”, փխ. “գալ ի խաղաղութիւն տէրութեան” = τὴν βασιλείαν εὐσταθείας τύχειν։ — Հ. 8. “Եւ ապա վասն մեր,

զի մեծաւ ծփանօք մտախոհ հասի առ քեզ„, փխ. “երկրորդ՝ հոգացեալ զմերոց քաղաքացեաց = δεύτερον δὲ καὶ ἰδίων πολιτῶν στοχαζόμενος: — Որպէս (ամենայն ազգն մեր) յանպարտ անպարտ կան ի խռովութեան„, փխ. “ոչ նուազ վնասի = οὐ μικρῶς ἀκληρεῖ„. պէտք է ըստ իս երկրորդ “անպարտ„ը իբր կրկնագրութիւն ջնջել: — Հ. 9. “Այլ որպէս ընդ կողմանս կողմանս եւ ընդ աշխարհս ամենայն խորհուրդս խաղաղութեան եւ կամս մարդասէրս ունիք, զայն ամենայն տեղեկացեալ գիտեմ„. ἕκαστα δὲ τούτων ἐπεγνωκὼς σὺ βασιλεῦ καὶ τῆς χώρας καὶ τοῦ περιισταμένου γένους ἡμῶν προνοήθητι, καθ'ἣν ἔχεις πρὸς ἅπαντας εὐαπάντητον φιλανθρωπίαν = արդ, ա՛րքայ, ի միտ առեալ զայս ամենայն, խնամ կալջիր աշխարհին մերոյ եւ դժբախտ ազգիս ըստ բարերար մարդասիրութեան քո առ ամենեսին: — Հ. 12. “Անդրէն... հրամայեաց կոչել„, փխ. կոչեաց = προσκαλεσάμενος: — “Ետ զօրս ի ձեռն, եւ կացոյց սպարապետ կողմանցն Հրէաստանի, արձակեաց մեծ հանդերձաւ (ա՝ հանդերձեաց մեծաւ հանդերձաւ, ուղղելի՝ հանդերձանօք). Հ. 13. բազում պատուիրանաւ„, փխ. “կացոյց սպարապետ ի վերայ Հրէաստանի. Հ. 13. պատուէր ետ = καὶ στρατηγὸν ἀναδείξας τῆς Ἰουδαίας, 13. δοὺς ἐντολάς: — Հ. 14. “Պառակտեալք„, ուղղելի՝ “պառակեալք„ = ἀγεληδόν: — Հ. 18. “Քաջութեան„, փխ. քաջութիւն: —

“ճգնութեան„, փխ. ճգնութեամբ։ — հ. 19. “Յղեաց + կոչեաց„: — հ. 20. “Եւ ի բազում եւս զօրագլուխն զխորհուրդն սփռէր„. καὶ τοῦ ἡγεμόνος τοῖς πλήθεσιν ἀνακοινωσαμένου = եւ զօրագլուխն եւս զօրացն յայտ առնէր։ — “Եւ զօրքն եւս միաբանութեամբ միով հաւանութեամբ զհաշտութիւն յանձն առնուին. եդին զուխտն առաջի եւ դաշինս կռեցին„, փխ. “եւ իբրեւ լինէր միաբանութիւն, յանձն առնուին զդաշինսն„ = καὶ φανείσης ὁμοψήφου γνώμης, ἐπένευσαν ταῖς συνθήκαις։ — հ. 21. “...զուխտսն հաստատեսցեն... խորհուրդ խորհեցան, դաշինս կռեցին„: Թարգմանչին յաւելուածներն են։ — հ. 22. “Յուդա հրաման ետ իւրեանց գնդին վառել պատրաստել դարանամուտ լինել„, փխ. “կարգեալ էր Յուդայի վառեալս պատրաստեալս ի դիպող տեղիս„ = διέταξεν Ἰούδας ἐνόπλους ἑτοίμους ἐν τοῖς ἐπικαίροις τόποις։ — “Եւ այնպէս զգուշութեամբ զյօրինի դաշինս ընդ միմեանս հաստատէին„, փխ. “ըստ օրինի կատարէին զհասարակաց խօսսն„ = τὴν ἁρμόζουσαν ἐποιήσαντο κοινολογίαν։ — հ. 24. “Եւ ունէր Նիկանովր(այ) զՅուդայ գրգանօք փափկութեամբ եւ մտադիւր սիրով„. καὶ εἶχε τὸν Ἰούδαν διὰ παντὸς ἐν προσώπῳ, ψυχικῶς τῷ ἀνδρὶ προσεκέκλιτο = եւ ունէր նա զՅուդա հանապազ առաջի իւր, եւ ի սրտէ մէտ առնն զանձն ցուցանէր։ — հ. 25. “Զի գութ

անկցի„, յուն. չունի: — “Ցանձն առ Յուդա, հաւանեցաւ„, փխ. “ած կին„ = ἐγάμησεν: — հ. 26. “Ամբաստան լինէր զՆիկանովրայ, եւ ցուցանէր՝ օտարաձայն այլամիտ խորհուրդս ունել նմա ընդ օրէնս արքունիս„ = ἔλεγε τὸν Νικάνορα ἀλλότρια φρονεῖν τῶν πραγμάτων: — “Զի զվնասակարն իրաց արքունի յորդեգիրս առեալ՝ ժառանգ իւր անձին փոխանակ կացուցանէ„, փխ. զի զվնասակար արքայութեանն՝ զՅուդա՝ փոխանակ իւր կացոյց = τὸν γὰρ ἐπίβουλον τῆς βασιλείας Ἰούδαν διάδοχον ἀναδέδειχεν ἑαυτοῦ: — հ. 27. “Հրաման ետ Թագաւորն հրովարտակս տալ„, փխ. գրեաց = ἔγραφε: — “Ի նմին հրովարտակի հրաման տայր կապեալ ոտիւք եւ կապեալ ձեռօք տալ ածել զՄակաբէ ի քաղաքն Անտիոքացւոց„: Բացատիպները դուրս առնլով մնացածը համաձայն է սկզբնագրին. κελεύων δὲ τὸν Μακκαβαῖον δέσμιον ἐξαποστέλλειν ταχέως (վաղվաղակի) εἰς Ἀντιόχειαν: — հ. 28. “Յոչինչ վնասու ի վերայ առն արդարոյ„. կը բաղձայի ուղղել. “ոչինչ վնասու առնն արարեալ„ = μηδὲν τἀνδρὸς ἠδικηκότος: — հ. 30. Եւ ինքն եւ գնաց յերեսաց„. συνεκρύπτετο = Թաքեաւ: — հ. 31. “Թէ այնպէս զձեռօք ոչ կարաց ածել զայրն, որպէս կամէր. “ὅτι γενναίως ὑπὸ τοῦ ἀνδρὸς ἐσρατήγητα = եթէ քաջ իսկ յառնէն խաբեցաւ: — հ. 32. “Թէ ամենեւին զայն այր եւ տեսեալ չիք մեր„,

փխ. «չգիտել, ուր արդեւք իցէ որ խնդրէրն = μὴ γινώσκειν ποῦ ποτ' ἐστὶν ὁ ζητούμενος։ — Հ. 33. «կապեալ ոտիւք եւ ձեռօք»։ Համմտ. Հ. 27։ — «Որգմդական դից», յուն. Διονύσῳ. Անտարակոյս անուանս առաջին մասը (Διο) պատճառ եղած է «Որմկդական» թարգմանութեան։ — Հ. 37. «Ի ծերակոյտ ժողովրդենէ անտի, ի զօրացն Երուսաղէմի, այր ընկերասէր մարդասէր յոյժ, բարենշան բարեհամբաւ, ըստ խնամոտ մտաց՝ հայր կարդացեալ Երրայեցւոց», խօսքս կիսատ կը մնայ, վասն զի Հայր Հռաքսի դրուատիքը յօրինած ժամանակ կը մոռնայ ἐμηνύθη τῷ Νικάνορι = «յանձն լինէր Նիկանովրայ» էական պարագան, զոր հեղինակը դրուատիքէն յառաջ յիշած էր։ — Հ. 38. «Ամենայն ազատութեան (-թեամբ)», ուղղելի է Իի համեմատ՝ «ամենայն զօրութեամբ», որ աւելի կը մերձենայ սկզբնագրին. μετὰ πάσης ἐκτενίας։ — Հ. 39. «Հատոյց», ուղղելի Օի համեմատ՝ «հասոյց»։ — Հ. 40. «Թէ այդք եւս ամաչեցեալք դարձցին. գործ մեծ գործեցից ի վերայ քաղաքիդ». ἐκεῖνον συλλαβὼν τούτοις ἐργάσασθαι συμφοράν = զնա ի բուռն ձգեալ հարուած սաստիկ նոցա հասուցանել։ Զարմանալի է հայուն թարգմանութիւնը. արդեւք շփոթած կամ չէ՞ հասկցած συλλαβὼν, զոր սակայն Հ. 39 ուղիղ կը թարգմանէ։ — Հ. 41. «Իբրեւ այնչափ ի տագնապ վարանի մտանէր այրն, ուշ առնէր անձին, հրամայէր

դնէր սուսեր ընդ պորտով„․ περικατάληπτος γενόμενος ὑπέθηκεν ἑαυτῷ ξίφος = իբրեւ գամ մի անդէն ի ձեռս անկանէր, դնէր սուսեր ընդ անձն։ — Հ. 43. “Ուղղորդ„․ դուրս ինկած կը թուի “ոչ„ = μή։ — “կամէր ելանել ի վեր եւ զանձն ի բարձուէ ընդ պարիսպն հոսել„․ ἀναδραμὼν γενναίως ἐπὶ τὸ τεῖχος κατεκρήμνισεν ἑαυτὸν = ելեալ քաջութեամբ ի վերայ պարսպին հոսեաց զանձն ի վայր։ — Հ. 44. Հայուն յաւելուածն է՝ “եւ ի նմանէ ամբոխն փարատեցաւ„, նոյնպէս Հ. 48՝ “եկն յայտ անդր զայրագին„։ Այս համարիս մէջ անգամ մըն ալ կը կրկնէ վերոյիշեալ յաւելուածը․ “եւ ամբոխն առաջի անդ յայսկոյս յայնկոյս փարատէր„։ — “Ցանդիման կողմանցն երկոցուն„, փխ. “սեպ„ (վէմ) = ἀποῤῥωγάδος։ — Հ. 46. “Խոնարհեցաւ, առ ի գիրկս իւր զաղիսն արեամբն հանդերձ, եւ ցոյց ի վեր յերկինս„․ προλαβὼν τὰ ἔντερα καὶ λαβὼν ἑκατέραις ταῖς χερσὶν ἐνέσεισε τοῖς ὄχλοις = խլեաց զաղիսն արտաքս եւ առեալ կալեալ երկոքումբք ձեռօք հոսեաց՝ ի մէջ ամբոխին։ — “կարդաց զտէր կենդանութեան զոգւոց եւ զմարմնոց եւ ասէ„․ ἐπικαλεσάμενος τὸν δεσπόζοντα τῆς ζωῆς καὶ τοῦ πνεύματος = Հայցեալ ի Տեառնէն կենաց եւ ոգւոյ։

## ԳԼՈՒԽ ԺԸ.

Հ. 1. «Խորհեցաւ (= ἐβουλεύσατο) + պատրաստեցաւ»: — Հ. 2. «Սկսան աղաչել եւ ասել. քաւ քեզ Տէր, մի՛ այդպէս». λεγόντων μηδαμῶς = ասէին մի: — «Տուր փառս եւ դիր պատիւ աւուրս, որ պատուեցաւ ի պատիւ հանգստեան յամենակալ սրբոյդ». δόξαν δὲ ἀπομέρισον τῇ προτετιμημένῃ ὑπὸ τοῦ πάντα ἐφορῶντος μεθ' ἁγιότητος ἡμέρᾳ = տուր փառս աւուրս, որ պատուեցաւ սրբութեամբ ի Նմանէ, որ զամենայն տեսանէ: — Հ. 3. «Սկսաւ հարցանել... եւ ասէ», փխ. «եհարց» = ἐπηρώτησεν: — Հ. 5. «Եւ ժանտաժուտն (= τρισαλιτήριος, զոր Հ. 3 «անօրէնն» կը թարգմանէ) ասէ արհամարհանօք», փխ. «իսկ միւսն» = ὁ δὲ ἕτερος: — «Եւ սակայն ոչ մեղմացաւ անօրէնն ի հպարտութենէ անտի». ὅμως οὐ κατέσχεν ἐπιτελέσαι τὸ σχέτλιον αὐτοῦ βούλημα = սակայն ոչ յաջողէր նմա, կատարել զչար խորհուրդ իւր: — Հ. 7. «որ հանապազ զօգնութիւն իւր ոչ առնէր պակաս ի Նմանէ». ἀντιλήψεως τεύξασθαι παρὰ τοῦ κυρίου = եթէ հասցէ օգնութիւն ի Տեառնէ: — Հ. 8. «Դնել ի մտի զգործսն քաջութեան զառաջինս եւ որ օգնականութիւնք ձեզ յերկնից գտան» = τὰ προγεγονότα αὐτοῖς ἀπ' οὐρανοῦ βοηθήματα = աւգնութիւնքն եղեալք նոցա յառաջա-

գոյն յերկնից։ — Հ. 10. Եւ զուխտիցն անցանել + եւ զերդմանցն անարգել„ = καὶ τὴν τῶν ὅρκων παράβασιν։ — Հ. 11. Եւ երագ եւս սկսաւ պատմել Նոցա արժանի ժամանակին„ փխ. ...պատմէր արժանի հաւատալոյ (ἀξιόπιστον)։ — Հ. 12. “Գեղեցիկ հայելով, շքեղ տեսանելով„ փխ. “զայր գեղեցիկ եւ քաջ„ = ἄνδρα καλὸν καὶ ἀγαθόν։ — “Եկեալ խօսս արկանէր գեղեցիկ„, փխ. “ի բանս իւր վայելուչ„ = καὶ λαλιὰν προϊέμενον πρεπόντως։ — Հ. 14. “Անդուստ խօսել սկսաւ Ոնիա եւ ասէր„ փխ. պատասխանի տուեալ ասէր. — “աղօթս անպակաս յաճախ մատուցանէ„ = προστυχόμενος։ — Հ. 15. “Տայր + ձեռն ի ձեռն„։ — “Սուսեր մի ոսկի հանդերձ„ փխ. ոսկի = χρυσῆν։ — Հ. 17. “Ի զօրեղ եւ ի գեղեցիկ„ = καλοῖς։ — “Հաստատել ի վերայ իրաց ուխտին հաւասարութեան„, փխ. վճիռ բերել զիրացն = κρῖναι τὰ πράγματα։ — Հ. 18. “Ի վերայ եղբարց հարազատաց, ի վերայ դայեկաց բնակաց տոհմային քաղաքացւոց„, փխ. եղբարց եւ ազգակցաց = ἀδελφῶν καὶ συγγενῶν։ — Հ. 19. “Կարծիք վշտագին դատաստանին„. ταρασσομένοις τῆς ἐν ὑπαίθρῳ προσβολῆς = զի խռովեալ էին վասն ճակատուն ի վերայ դաշտին։ — Հ. 20. “Այլ իբրեւ կողմանք զօրացն երկոցունց ի միմեանս հասանէին, փող հարկանէր, պատրաստութիւն լինէր, ճակատ յարդա-

բէր„. καὶ ἤδη συμμιξάντων τῶν πολεμίων καὶ τῆς στρατιᾶς ἐκταγείτης = իբրեւ թշնամիք առ միմեանս հասանէին (երբ թշնամեաց ցիրուցան գունդերը հաւաքուեցան. ուստի սխալ է "կողմանք զօրացն երկոցունց) եւ զբանակն կազմէին„. — Հ. 21. "Ձայն ահեղ տեսիլ Յուդա հայեցեալ տեսանէր, զգնդացն դրօշու դրօշու պատրաստութիւն զզինուցն զպէսպէս սըրբութիւն, զնշանացն փողփողել„, փխ. իբրեւ ետես Մակաբէ զյառաջ խաղալ ամբոխին եւ զզինուցն պէսպէս պատրաստութիւնն = συνιδὼν ὁ Μακκαβαῖος τὴν τῶν πληθῶν παρουσίαν καὶ τῶν ὅπλων τὴν ποικίλην παρασκευήν: — "Զմեծամեծ գազանացն զանհնարին գազանութիւն = "τήν τε τῶν θηρίων ἀγριότητα„. — "Ո՛չ թէ ըստ կամս մարդկան„, փխ. "ոչ եթէ զինուք = οὐκ ἔστι δι' ὅπλων: — "Հարիւր ութսուն եւ հինգ հազար + հեծեալ սպառազէն: — Հ. 25. "Իսկ Նիկանովր մեծաշուք... բազում արուեստականաց ձայնիւ զճակատն յառաջ մատուցանէր„ փխ. իսկ որք զՆիկանովրաւն էին... յառաջ խաղային = οἱ δὲ περὶ τὸν Νικάνορα... προσῆγον. — Հ. 26. "Առքա„ փխ. Որք զՅուդայիւն էին = οἱ δὲ περὶ τὸν Ἰ: Հ. 27. "Ձեռն ի գործ արարեալ„, փխ. ձեռօքն մարտ եդեալ = ταῖς μὲν χερσὶ ἀγωνιζόμενοι. — "Հասանէին հարկանէին + գունդն Մակաբեան Յուդայ ի զօրացն հեթանոսաց„. κατέστρωσαν = հարկանէին: — Հ. 28. "Ընդ գտանէին անկեալ

զՆիկանովր առաջի գնդին կոտորելոց (յ)՝ զինուն զարդուն նշանօք հանդերձ ի մէջ երկուց ճակատո(ւ)ցն„. ἐπέγνωσαν προπεπτωκότα N. σὺν τῇ πανοπλίᾳ = տեսին զն. անկեալ զինու զարդու։ — հ. 30. “Որ զօրութեամբ հաստատութեամբ առհասարակ քաջութեամբ նահատակութեամբ մտադիւր հաւանութեամբ ի վերայ ազգին նահատակեալ (էր) ὁ καθ' ἅπαν σώματι καὶ ψυχῇ πρωταγωνιστὴς ὑπὲρ τῶν πολιτῶν = որ ամենայնիւ հոգւով եւ մարմնով նահատակեալ էր ի վերայ քաղաքակցաց իւրոց։ — հ. 32. “Զանօրէն զհայհոյիչ„ = μιαροῦ։ — “Իշխեաց ձգել„, փխ. ձգեաց = ἐκτείνας։ — հ. 33. “Մանր մանր կոտորեալ զայս թռչնոց գէշագէշ ջամբեցից„ = κατὰ μέρος δώσειν τοῖς ὀρνέοις։ — հ. 35. “Զբարձրամուր աշտարակէն, յայտ յանդիման ամենեցուն, եւ յայտնապէս օգնականութեան Տեառն՝ նշան յաղթութեան կանգնեցաւ„, փխ. “զբերդէն՝ նշան յայտնի եւ երեւելի ամենեցուն = ἐκ τῆς ἄκρας ἐπίδηλον πᾶσι καὶ φανερὸν... σημεῖον։ — հ. 36. “Ուխտ եդին առհասարակ, հրաման ետուն ընդ ամենայն ազգն„, փխ. “եդին օրէնս ամենքին = ἐδογμάτισαν πάντες„։ Հայը կը յաւելու օրէնքին առարկան՝ “առնել զօրն զայն՝ որ տօնից տարեկանաց„։ — 37. “Հասու եղեն„ Ասութեանս իմաստը ծանօթ է, հոս սակայն գործածուած է տիրել, գրաւել իմաստով = κρατη-

θείοις: — 38. “Եթէ իցեն ի կարգի„, յոյնը կը յաւելու՝ “գեղեցիկ եւ ճարտար„ = καλῶς καὶ εὐθίκτως. իսկ Հայը կ'աւելցնէ. “գովեցայց ի կարգել անդ„ — “ապա եթէ հետեւակս ինչ եւ տկարս ինչ խաւսեալ իցէ„, իսկ յոյնը՝ εἰδὲ εὐτελῶς καὶ μετρίως = “ապա եթէ անպաճոյճ ինչ եւ համեստ„:

## § 8. Հայերէն թարգմանութեան լեզուն:

Նախընթաց ուսումնասիրութեանս մէջ խոյս տուինք լեզուի եւ ոճի հարցերէ, զորոնք այժմ միահամուռ պիտի քրքրենք: Մակաբայեցւոց թարգմանութեան մէջ առատ են այնպիսի տեղիքներ, որոնք թէեւ առաջին ակնարկին բնագրէն օտար կը թուին, բայց մտադիր ընթերցողին իսկոյն կը յայտնուին իբր էապէս, իրապէս ու առարկայապէս նոյն՝ բնագրին հետ, եւ միայն ձեւով տարբեր: Այսպիսի տարբերութիւններ կը կոչենք կերպական ընդլայնումներ, վասն զի զուտ լեզուական տարր մը եւ մեր հեղինակին բնորոշ ծանուցիչը կը կազմեն: Առաջիկայ հատուածը կը լրացնէ նախընթացի պակասը, վասն զի այժմ պիտի կենդրոնանանք հոն զանց առնուածին վրայ: Մենք զուտ մասնագիտական քննութեամբ պիտի ջանանք վեր հանել Դասական հայերէնի յատուկ նկարագիրը Մակաբայեցւոց գրքին մէջ, ինչ որ յընդհանուրն կը տեսնուի նաեւ Ե. դարու բոլոր

արտադրութիւններու մէջ, առաւել կամ նուազ չափով:

Դասական հայերէնի նիւթէ եւ հեղինակէ կախում ունեցող ոճերու այլեւայլ խմբերէն մեր գրքերը կը պատկանին այն խմբին, որուն արտադրութիւնը առաւելապէս պատմագրական է: Միեւնոյն խմբին վերաբերող հեղինակներու քով՝ իրենց անհատական յատկութիւններուն հանդերձ դիւրաւ կը նշմարուին հասարակաց գծեր, որոնցմով իրարու կը կապուին անոնք եւ միւս հեղինակներէն կը բաժնուին: Մեր գրքերը երեւան կը բերեն պատմող, ստորագրող, մտքէն աւելի երեւակայութեան խօսող ոճ մը, որ իւր այս նպատակին պատճառաւ յորդաբան է, աւելախօս, ինչպէս առարկայական նոյնպէս լեզուական զարդերով պճնուած: Դասական կատարելութիւն ունի, բայց չի յարգեր այն ամէն կապանք, որոնցմով ուրիշ հեղինակներ կը պարծին, կարծես իր անկախութեան, վեհութեան եւ կորովին իբր ապացոյց սիրով կ'ընդգրկէ ձեւեր, դարձուածներ, կը ստեղծէ համաձայնութիւն մը, որոնցմով միւս հեղինակներն իրենց յստակութիւնն ու փայլը նսեմացած պիտի համարէին: Պատմութիւն կը գրեն այս խումբին հեղինակները, բայց զայն կ'ուղղեն ոչ միայն ազատորեարին, այլ նաեւ, մանաւանդ թէ յատկապէս ժողովրդեան, ռամկին, եւ այս պատճառաւ չեն խոտեր բոլորովին իրենց ընթերցող հասարակ ժողովուրդին լեզուն, բառերը, քերականական ձեւերը: Յորդա-

բանութիւնն է ուրեմն մեր գրքերու լեզուին կարկառուն գիծը, որուն հետ միաժամանակ աչքի կը զարնէ քերականական անկանոնութիւն: Այս երկու տեսակէտները պիտի ապացուցանենք այժմ:

1. Յորդաբանութիւն: Թէ ինչ կ'ուզենք մատնանշել, պարզ է: Մեր Թարգմանիչը գոհ չ'ըլլար իր յունարէն բնագրին մէկ բառին հանդէպ մէկ բառ դնելով: Իր տրամադրութեան տակ եղող ճոխ բառամթերքը կ'օգտագործէ ճոռոմաբանութեան երանգ տալու համար իր պատմագրութեան: Երբեմն յորդաբանութիւնը զուտ աւելաբանութիւն է, սակայն ոչ ցանցառ կուտակուած բառերը արտայայտուած գաղափարին վրայ կ'ազդեն, տեղւոյն համեմատ սաստկացնելով, տկարացնելով, բայերու մէջ գործողութեան աստիճանական զարգացումը, զանազան մասերն ու փուլերը բացատրելով: Ամէն մասն բանի ատակ է այս կերպով ընդլայնուելու, եւ մեր Թարգմանիչը առատօրէն օրինակներ կ'ընծայէ առ այս: 1. Գոյականներ՝ Սովորաբար թուով երկու, քիչ անգամ երեք նոյնանիշ գոյականներ միանգամայն կը կիրարկուին նոյնահոլով, «եւ» շաղկապով կամ առանց շաղկապի. Այսպէս՝ Գ, 2 պատարագաւք եւ տրովք. 13 իսպաս եւ իպէտս. 17 ահ եւ երկիւղ (տես նաեւ ԺԵ 23). 30 խնդութեամբ եւ ուրախութեամբ. Դ, 16 ընդ բարս եւ ընդ կնացս Դ, 41 դաւ եւ նենգութիւն. 50 վասն ... ոժգութեան եւ ագահութեան. Է, 3 բարկութեամբ եւ սրտմտութեամբ. Ը, 35 տառա-

պանաւք Թշուառութեամբ. Ժ, 6 ցնծութեամբ եւ ուրախութեամբ... յայրս եւ ի քարածերպս. 38 աւրհնութեամբ, ցնծութեամբ եւ գոհութեամբ. ԺԲ, 40 յուռութուլունս եւ բժժանս. ԺԳ, 18 քաջասրտութեան քաջութեան։ — Յական գոյականներու աւելադրութեան սովորական կերպն է զանոնք իրարու սերտիւ կապել իբր յատկացուցիչ յատկացեալ, որով իրարու հետ կը ձուլուին եւ գաղափարի միութիւնն աւելի լաւ կը ցոլացնեն. Ա, 18 պատարագ ողջակիզաց (յաճախ). Գ, 3 սպաս պաշտաման. 14 ջան վտանգի խռովութեան. 24 պարտութիւն վատթարութեան. Դ, 3 հեռ եւ նախանձ Թշուառութեան. 14 ողջակէզք պատարագաց. 25 սրտմտութիւն դառնութեան, Ե, 8 կատարած վախճանի. 11 ի սուր սայր սուսերի եւ ի տէգ նիզակաց. Զ, 9 շտապ տագնապի. Է, 15 ի տանջանս չարչարանացն. 24 ի մեծութիւն աւագութեան. 38 սրտմտութիւն բարկութեան (նաեւ Ը, 5 եւն) Ը, 4 հպարտութիւն ամբարտաւանութեան. 9 ի նեխոյն հոտոյ (նաեւ 12). 24 զմիաբանութիւն հաւանութեան. ԺԲ, 4 խաղաղութիւն միաբանութեան. 36 մարտ պատերազմի (ԺԴ, 6 եւն). ԺԳ, 23 զխաղաղութիւն հաշտութեան... գութ եւ սէր քաղցրութեան. 25 զյաշտութիւն հաւանութեանն. ԺԵ 12 տեսիլ երազոյն։

2. Ածականներ։ Ասոնց մէջ յորդաբանութիւնը ստէպ իմաստը կը սաստկացնէ, երբեմն դիւրալուր հեշտին բառախաղեր կը կազմէ։

Հոս ալ զօդաւորումը կա՛մ “եւ„ ով է եւ կամ առանց “եւ„ ի։ Ա, 13 անթիւ եւ անհամար. 20 դանդաղամած թանձրացեալ. Բ 2 ամուրս անտառախիտս. 22 զհոյակապ շքեղ. 31. զհամառօտ կարճառօտ (քանիցս). Գ, 15 ողջ անարատ. 29 անմռունչ անբարբառ. Դ 2 զնախանձայոյզ վրէժխնդիր. Ե 16 պիղծ եւ անաւրէն. Է, 9 սէգ, հպարտ եւ ամբարտաւան (Նաեւ 27). 34 անաւրէն եւ ապստամբ, պիղծ եւ վատարանց. Ը, 6 զամուր ամուր. Մեծամեծ եւ սաստիկ. 9 տեղեակ ամենայնի հմուտ. 14 յանաւրէն եւ յանարժան. 21. մխիթար քաջալեր բանք. 24 խոցս, խեղս, վիրաւորս (Նաեւ ԺԱ 12). Թ, 5 սաստիկ եւ անհնարին. 21. յանհնարին եւ ի դժուարին. Ժ 28 վարդագոյն ծայրակարմիր. ԺԴ, 23 անկարգ անաւրէն. 26 աւտարաձայն այլամիտ։

Ածականներու կը կցենք իսկոյն մակբայները, որոնց աւելադրութիւնը բովանդակութեան եւ տարածութեան կողմանէ ածականներու գրեթէ կը համընթանայ։ Բնականաբար տեղւոյս կը հայէն ոչ միայն խիստ մտօք մակբայներ, այլ ոեւէ իբր մակբայ գործածուած մասն բանի. Ա, 11 որպէս զիարդ (Նաեւ Բ 15, Գ 37) 14 իբրեւ ի պատճառս վարձկանաց համարի. Գ, 9 ո՞ կամ ընդէ՞ր կամ ո՞րպէս. 35 անդրէն ի նոյն չափ յառաջինն... Մեծապատիւ մեծապարգեւ մեծարէր. Դ, 10 հետ ընդ հետ վաղվաղակի. 36 վասն առն զոր մեռանելոյ տարապարտուց կորուսելոյ. 46 իբրեւ զբաւսանաց պատճառաւ.

Ե, 21 արագարագ (Զ, 16, 23)· Զ, 6 ոչ բնաւ ամենեւին. 16 մաւտ առ մաւտ… արագարագ. 24 ոչ արժան, ոչ պատշաճ. 28 յաւժարութեամբ քաջութեամբ. Է, 40. անարատութեամբ եւ սրբութեամբ. Ը, 16 ի զուր տարապարտուց. 36 ողջանդամ եւ առանց խոցոտելոյ. Թ, 4 ստէպ տագնապաւ անդադար. 12. պարտ եւ պատշաճ. աստուածակերպ աւրինակ. 16 կապուտ կողոպուտ. 27 քաղցրագոյն եւ մարդասիրագոյն. Ժ, 5 ի նմին աւուր ի նմին ժամանակի. 31 յայնժամ յայնմ աւուր. ԺԱ, 7 նախ յառաջագոյն. 11 վարազախառն առիւծանման. անդէն ի նմին տեղւոջ. 26 լաւ եւ բարւոք. ԺԲ. 16 անդ ի նմա. ԺԴ, 20 միաբան միով հաւանութեամբ 24 գրգանաւք, փափկութեամբ, մտադիւրութեամբ եւ սիրով։

Նախադրութիւններն ալ ունին յաւելուածոյ գործածութիւն մը, եւ հոս աւելի զգալի է զարդարելու նպատակը. Քանի մը օրինակով կը շատանանք. Ա, 2 ընդ Աբրահամու եւ ընդ Ս. եւ ընդ Յ., ընդ հաւատարիմ ծառայս իւր. Դ, 11 զպարգեւսն զառաջինս զարքունի. 12 ի ներքս ընդ բերդաւն. 25 զհրաման զիշխանութեան զարքունի. 38 զկառափն հարկանել զանաւրէն մահապարտին. Է, 22. զկերպարանսդ ձեր զիւրաքանչիւր. Ը, 14 յանաւրէն եւ յանարժան ի ձեռանէն. 19 զմիոյ զմիոյ զառաջնոցն զքաջութիւնս եւ զաւգնականութիւնս։ ԺԴ, 27 զբանս անաւրէնս զբանսարկուին. —

Դերանուններու մէջ սիրելի կ'երեւան “անտի յայնմանէ„ (Բ, 1 ճ) ինքնին գլխովին (Բ, 13. Դ, 1 եւն) սովորական աւելադրութիւնները։

Ճարտասանական տպաւորութիւն կը գործէ ամէնէն աւելի բայերու կուտակումը։ Այսպիսի կուտակում կը տեսնուի նաեւ յոյն բնագրին մէջ (ԺԳ, 19, 22, 26. ԺԴ, 21, 24), բայց հայերէնի հետ համեմատութեան դնել անգամ կարելի չէ։ Հոս է որ հայ թարգմանիչը կը սրէ գրիչը եւ երբեմն չափազանց սանձարձակ կը սուրայ։ Բայերն ընդհանրապէս առանց շաղկապի իրարու կը յաջորդեն։ Նիւթն այնքան առատ է, որ կրնանք դասաւորել։ Ամենայաճախ կը պատահին երկու դիմաւոր բայեր. Ա, 13 անկան կործանեցան. 32 վառեցաւ բորբոքեցաւ. Բ, 5 եկն եհաս. (75 եւ յաճախ). 75 եկն եկաց (ԺԴ, 4) Դ, 19 եկին բերին. 22 խաղաց գնաց. 34 գնաց եւ եկն. Ե, 11 փութացաւ գնաց. Զ, 7 վարէին ածէին. Է, 17 կաց մնա. Ը. 21 վառէր պատրաստէր. 23 յարձակէր ի դիմի հարկանէր. 24 հասանէին հարկանէին (ԺԵ 27). Ժ. 18 գնացին եւ եկին ամրացան. 22 ածին սատակեցին. 29 գային խառնէին. ԺԲ, 16 հասին առին. 19 եկին դիպեցան. ԺԳ, 25 եկն եմուտ. ԺԴ, 30 ել գնաց. ԺԵ, 24 զահի հարցեն եւ պակիցեն. 31 եկն ինքն եհաս. — Երկու վախճանական աներեւոյթ բայեր (Infin. final.). Ա, 5 գալ մտանել. 21 առնուլ եւ բերել. Գ, 7 հանել բերել. Զ, 1 ստիպել տագնապել. 20

թքանել անարգել. Է, 38 ջնջել եւ ի բաց ան-
ցուցանել. Ը, 2 այց առնել հայել. 16 կալ եւ
մարտնչել. 21 մտադիւր մարտնչել համարձակ
մեռանել. Ժ, 20 ելանել սփռել։ — Դիմաւոր
բայ մը՝ ընդունելութիւն ներկայի հետ, առանց
շաղկապի. Բ, 13. զիւրեաւ եդեալ... ժողովէր.
14 բովանդակեալ պահի. Գ, 15 անկեալ թա-
ւալէին. 28 մտեալ ձեմէր, Դ 50 հաստատեալ
կայր. Ե 4 անկեալ աղաչէին. 21 բարձեալ
բերէր. 23 հասեալ դատէր. 26 սուր ի վերայ
եդեալ կոտորեաց. վառեալ ընթանային. տարա-
ծեալ դիաթաւալ կացուցանէին. Զ, 2 բնակեալ
նստէին. 25 կեղծաւորեալ գայթակղեցին. 30
ընկալեալ համբերեմ. Ը, 1 գաղտագողացեալ
մտանէին. Թ, 25 չու արարեալ գնայի. 29 առ-
եալ տանէր. ԺԳ, 12 անկեալ թաւալէին։ —
Երկու ընդունելութիւն ներկայ մէկ դիմաւորով՝
առանց շաղկապի. Ա, 31. վառեալ բորբոքեալ
այրէին. Դ, 16 հասեալ պաշարեալ պահէին.
Է, 5 ելեալ դիզացեալ ծառանայր. Թ, 6 զնո-
վաւ անկեալ պաշարեալ պահէին. 23 չու առ-
եալ գնացեալ երթայր. 28 անկեալ կործանեալ
սատակամահ լինէր. Ժ 4 անկեալ տարածեալ...
աղաչէին. ԺԲ, 13 պատեալ պաշարեալ պահ-
էին ԺԳ, 19 յարձակեալ մարտուցեալ ի պար-
տութիւն մատնէր. 22 ի պարտութիւն մատնեալ
վատթարեալ գտանէր։ — Երեք դիմաւոր բայեր
առանց շաղկապի. Գ, 8 չու առնէր խաղայր
գնայր. 35 չու արար խաղաց գնաց. Ժ 27. կար-
գեցան կազմեցան... ճակատեցան. 33 ելն փա-

կեաց պաշարեաց. ԺԲ. 19 հարին սպանին կոտորեցին. — Երեք ընդունելութիւն ներկայ եւ մէկ դիմաւոր առանց շաղկապի. Ա, 12 եկեալ պատեալ պաշարեալ պահեն. Գ., 17 իջեալ մածեալ պատեալ պաշարէր. Դ, 16 հասեալ պատեալ պաշարեալ պահէին. Ժ, 28 իջեալ պատեալ պաշարեալ պահէին: — Երեք փախճանական աներեւոյթներ. Դ, 31 չու առնել հասանել ցածուցանել. ԺԱ, 7 վառել կազմել պատրաստել. ԺԴ, 22 վառել պատրաստել դարանամուտ լինել. ԺԵ, 6 հասանել սատակել եւ նշան յաղթութեան կանգնել: — Չորս դիմաւորներ առանց շաղկապի. Գ, 24 լուծան, լքան, ընդարմացան, ի պարտութիւն վատթարութեան մատնեցան. Ը, 30 հասանէին բախէին հարկանէին սպանանէին. Ժ, 27 ի զէնսն դարձան վառեցան կազմեցան պատրաստեցան: Հինգ դիմաւորներ. ԺԳ, 21. քննեցաւ, խնդրեցաւ, գտաւ, պատժեցաւ, ի սուր սպառեցաւ: — Չորս փախճանական աներեւոյթներ. ԺԱ, 9. հարկանել սատակել կործանել թափ անցանել: — Չորս ընդունելութիւն ներկայ. ԺԳ, 17 լքեալք եւ լուծեալք եւ սպառեալք եւ տարակուսեալք: Ըննման է, Ժ, 17 եկին, հասին պատեցին խումբ արարին առ հասարակ. ի վերայ յարձակեցան զամուրսն փլուզին հարին կոտորեցին զոր ի ձեռն առին առհասարակ կոտորեցին:

Փակելէ յառաջ այս հատուածը յառաջ բերենք քանի մը ուրիշ աւելադրութիւններ, որոնք մեր թարգմանչին սիրելի կը թուին: Ա.

Գրքէն տեղիքներ մատնանշեցինք § 3, Բ. գիրքը տեղւոյս վերապահելով։ Մեր Թարգմանիչը կը սիրէ բայերու առջեւ «սկսաւ» աւելցնել, կարծես ջանալով տեղ տեղ յուն. aoristը ըստ կարի բացատրել, աւելորդ ջանք մը, քանի որ մեր կատարեալ կոչածն բայերու մեծ մասին մէջ արդէն aoristէ բուն եւ ոչ perfectum. Ա, 16 սկսան հոսել վիրգս. 23. սկսան աւրհնել. Բ, 7 պատուհասել սկսաւ. Գ, 37 սկսաւ հարցանել. Դ, 24 սկսաւ կորզել. 40 սկսան... տագնապել. Է, 27 սկսաւ ծաղր առնել. Ը, 19 սկսաւ յուշ առնել. Թ, 11 սկսաւ բեկանել. ԺԴ, 5 սկսաւ հարցանել. ԺԵ, 11 սկսաւ պատմել։ — Ամենէն աւելի բազմաթիւ եւ աչառու է այս յաւելուածը «սկսաւ խօսել եւ ասէ» անփոփոխ կրկնուող ասութեան մէջ (Զ, 30. Է, 2, 5, 9, 14, 16, 30. Թ, 12. ԺԴ, 11. ԺԵ, 2, 3, 22)։ — Թարգմանչին սիրելի յաւելուածներ են դարձեալ «վաղվաղակի» եւ նոյնիմաստ մակբայներ (Գ, 25, 33, 35. Դ, 10, 41, 48. Ե, 18. Զ, 10. Է, 3, 10. Ը, 9, 26. ԺԲ, 6, 21. ԺԴ, 2, 26, 31). «առ հասարակ, ամենեքեան» (Դ, 42. Ե, 13, 26. Թ. 7. ԺԲ, 15, 22, 41. ԺԳ, 12. ԺԵ, 36)։

2. Անկանոնութիւնը երկրորդ նկարագրական գիծն է մեր Թարգմանչին, թէեւ ոչ այն աստիճան ինչպէս ուրիշ քանի մը հեղինակներու քով։ Մանաւանդ ձեւախօսութեան մէջ Մակաբայեցւոց Թարգմանիչն անսայթաք կը գրէ, դուրս առնլով միշտ յետսամուտ եղծումներ,

որոնք ձեռագրական համեմատութիւններով ի նպաստ թարգմանչին կը մաքրուին։ Համաձայնութեան մէջ է որ երբեմն կը գայթէ, եւ ինչպէս վերն ըսինք, տիպար դասականներէ չսիրուած ձեւեր կը կիրարկէ։

Դասական լեզուի վայելչութեան օրէնքը կը նախընտրէ յատկացուցիչ սեռականը յատկուցեալէ առջ դնել եւ երկուքին միջեւ չհանդուրժել ուրիշ մասն բանի, ըստ ամենայնի նման դասական Լատիներէնի։ Իսկ մեր թարգմանիչը կ՚ըսէ նաեւ Ա, 15 "Համարձակ զդրունսն առին զարտաքին պարսպացն", ուր "զ" նախադրի կրկնումով միջանկեալին անհաճոյ տպաւորութիւնը չեզոքացնել կը ջանայ (հմմտ. Այտընեան, — Զալըխեան 1883, 250, ը). Գ, 31 "յոտս հասին Նեմեայ". — Ը, 20 "աւգնականութեամբ լցեալ բարձրելոյն". — ԺԲ, 44 "զի թէ յարութեան ակն ոչ ունէր անկելոցն ի պատերազմէ...։"

Բոլորովին կանոնաւոր կ՚ընթանայ ածականի (ոեւէ տեսակ) համաձայնութիւնը, անտեսելով ԺԲ, 42 "զմեղսն զայն", որուն փոխարէն կը սպասուէր "զայնոսիկ"։ Թէ՛ ցուցական ածականի եւ թէ՛ նախադրութեան կողմանէ սխալ կը պարունակէ Գ, 5. "որ ըստ (a ընդ) այնմ (b յայնմ) ժամանակաց... սպարապետ էր"։ "Ըստ" ի ժամանակական գործածութիւնն անծանօթ է ինձ, իսկ "ընդ" անորոշ հայցական կը պահանջէ։ Խօսքին մերձաւոր ուղիղ ձեւը պիտի ըլլար. "ընդ այն ժամանակս"։ Անհնար չեմ նկա-

տեր այս ձեւին սկզբնականութիւնը նաեւ հոս, եւ ձեռագրաց տուածը՝ յետամուտ եղծուած։ Ածականաց համաձայնութեան կը հայի — թէեւ ոչ իբր անկանոնութիւն, այլ իբր առանձնայատկութիւն — վերացական գոյականներու գործածութիւնն սեռական հոլովով իբր պարզ ածական (Այտընեան, անդ, 260)։ Այս ձեւը չափազանց սիրուած է մեր Թարգմանչէն։ Ա, 29 Տեղի սրբութեան (Գ, 30. Ե, 17. Ը, 17). Գ, 15 Նովին սրբութեան պատմուճանաւն. 23 զյայտնութեան (յայտնի) վճիռսն. Դ, 11 անաւրէնութեան նոր կրաւնս. 34 յիրաւանցն արդարութեան. 48 զանաւրէնութեան պատիժսն. Զ, 4 սրբութեան սրահ. 30 սրբութեան խորհրդոց. Թ, 5 դառնութեան խիժք. 6 սաստկութեան ցաւք. ԺԱ, 3 զտաճարն սրբութեան. ԺԳ, 8 հուրն սրբութեան. ԺԴ, 3 սեղանն սրբութեան. 31 տաճարն սրբութեան. ԺԵ, 8 գործք քաջութեան։

Բայերու մէջ աչառու է ժամանակներու գործածութիւնը, որովհետեւ ընդհանրապէս կրնանք ըսել, որ կրցած է զերծ մնալ սխալներէ։ Ամենայաճախ պատահած ժամանակներն են Անկատար եւ Կատարեալ։ Թարգմանիչը յունարէն ժամանակներու խստիւ չի կապուիր։ "Անկատարը,, ոչ լոկ imperfectum, այլ նաեւ plusquamperfectum, նոյն իսկ aoristը կը փոխարինէ (օ. հ. Ա, 14, 18, 19), իսկ Կատարեալը կը գործածէ թէ aoristի եւ թէ per-

fectի փոխարէն (օ. Ա, 7—9, 12, 15—17, 19—21 եւն)։ Թէեւ հայերէնը յունական կամ լատինական իմաստով consecutio temporum չունի, սակայն լաւ կը զանազանէ անկատար եւ կատարեալ եւ ասով յառաջ կու գայ անոնց յաջորդական գործածութեան մէջ կանոնաւորութիւն։ Կատարեալը կը պատմէ, անկատարը կը ստորագրէ, առաջինը գործողութիւն, երկրորդը վիճակ կը բացատրէ։ Ասով հասկնալի կ'ըլլայ բնագրին մէջ կատարեալէ անկատարի ներդաշնակ անցքը, որուն մէջ մեր հեղինակը մեծաւ մասամբ շատ հետեւական ընթացք մը ունի եւ իրապէս դասական ճշդութիւն (օ. Հ. Ա, 13—14, 18, 23, 36. Բ, 2—3. Գ, 8, 13)։ Մեծաւ մասամբ կ'ըսենք, որովհետեւ կան նաեւ աններդաշնակ ոստումներ, որոնց մէջ կատարեալը տեղի կու տայ անկատարին առանց իմաստով պահանջուած պայմանի մը գոյութեան (օ. Հ. Ա, 19. Բ, 5 եւն)։ Գիտեմ որ “անկատա՛ր„ն ալ ունի պատմական գործածութիւն եւ այս երբեմն շատ յաճախեալ է դասական մատենագրութեան մէջ, սակայն մեր գրքին մէջ, ուր գրեթէ վարժութիւն կը դառնայ երկու ժամանակներուն վերը պարզուած տեսակէտէ կիրարկումը, օտարոտի կը հնչէ, երբ “անկատար„ն ալ կը սկսի պատմել “կատարեալ„ի կողքին։ — Անկատարի տեղ երբեմն գործածուած կը գտնենք գերակատարը, զոր հայ լեզուն թէեւ թոյլ կու տայ (Այտընեան, 367), բայց մեր թարգմանիչը չէ կրցած

ամէնուրեք այս թոյլտուութիւնը լեզուի վայելչութեան հետ հաշտեցնել. վերջինը տուժած է (օ. Հ. Ա, 22. Է, 12. Ը, 32)։ Աւելի յաջող է յարակատարի գործածութիւնը՝ փոխանակ ներկայի (Ա, 7, 11. Գ, 34 եւն)։

Քերականական կոչուած ձեւերէն (Այտընեան, 401) մեր թարգմանչին յատուկ է նախ Զեղչումը, Ellipse։ կապանքներէ խորշող յորդամիտ մատենագիրներու քով սովորական են թերի խօսքեր, զորոնք ամբողջացնելու պէտքը չեն զգացած գաղափարներու հոսանքէն տարուելով։ Այսպէս երբ մեր թարգմանիչը բնագրէն անկախ կը գրէ. Բ, 27 “Որպէս ոք, զի պատրաստեցի առնել ուրախութիւն կոչնոց ընկերաց, մեծահաց գործիցէ զընկերացն ուրախութիւն, եւ ոչ զիւր դիւրութիւն խորհիցի, սակայն վասն բազմաց հաճութեան զջան յանձն առաք„ — իսկոյն կը զգանք պակասը. համեմատութեան միւս եզրը լռուած է, հարկ է մտածել. “Նոյնպէս եւ մեք (հմմտ. Հ. 29) պատրաստիմք ուրախութիւն առնել ընկերաց, զի առաջի կայ մեզ պատմել. եւ այդ չէ գործ դիւրութեան, սակայն...„։ Համ. 31. “որ այժմիկ պատմելոյ (ուղղելի՝ պատմել) յանձն առեալ իցէ„ պէտք է լրացնել՝ “իմ„ կամ “մեր„։ Գ, 4. “Սիմոն ումն անուն... առաջնորդէր տոհմին իւրոյ, ընդ հակառակս ել եւն„։ Յարաբերական դերանուան (որ) պակասը զգալի է միջանկեալ խօսքէն յառաջ. “որ առաջնորդէր„։ ԺԵ. 19. “Սակայն եւ ի ներքոյ քաղաքացւոցն ոչինչ թեթեւ վիճո

պատերազմի, կարծէք վշտագին դատաստանին„ լռուած է "լինէին„:

Քերականական ձեւ մըն է նաեւ "արտուղութիւնը„ որուն մէջ ժամանակները, դէմքերը կը խառնակուին, անուղղակի խօսքը յեղակարծօրէն ուղղակիի փոխելով: Թ. 16 "եւ զտաճարն սուրբ, որ յառաջ սպառնայր կապուտ կողոպուտ թողուլ, գեղեցիկ պատարագաւք զարդարեցից„ փոխանակ աներեւոյթի, ինչպէս են հետեւորդները: Ժ, 4 "աղաչէին, զի մի կրկնեսցին ի վերայ նոցա նոյն չարիք... եւ մի ի ձեռն հայհոյիչ խուժդուժ հեթանոսաց մատնել զմեզ„ փոխանակ "մատնեսցէ զնոսա„ համաձայն նախընթացին:

Կը գտնուին նաեւ անկանոնութիւններ, զորոնք Այտընեանի հետ, էջ 400, այսպէս կը բացատրենք: Երբեմն մատենագրին առջեւ գաղափար մը արտայայտելու մէկէ աւելի կերպեր կը ծօճան, ասոնցմէ առաջին կերպով կը սկսի երբեմն եւ երկրորդով մը կը վերջացնէ, ընտանեկան բերանացի յաճախադէպ անկանոն խօսուածքի նման, եւ ասով արտադրուածը խառնուրդ մը կ՚ըլլայ եւ սխալ: Բ, 19է սկսեալ կը ծանուցուի երկրորդ գրքին բովանդակութիւնը: Հայրենիւթերը "այլ վասն„ով սկսած էր թուել, ուստի Հ. 20 կ՚ըսէ "եւ վասն ընդ երեւեալ (ուղղելի՝ երեւելի) Անտիոքայ կամ ընդ Քաջահայր որդի (ուղղել՝ որդւոյ) նորա ճակատամարտս„. խօսքս յայտնապէս պակասաւոր է եւ կը կաղայ: Եթէ թարգմանիչը ուզէր պահել

“վասն„, պէտք էինք աւելցնել “թէ զիարդ... ճակատամարտս ետուն„. սակայն նա կը մոռնայ խօսքին սկիզբը, եւ կը վերջացնէ պարզ հայցականով, ինչպէս ունի նաեւ յունարէն բնագիրը (πολέμους), ուր նա կը յարմարի. վասն զի բովանդակութեան բոլոր մասերը հայցական դրուած են: Ուստի Հայը իւր կերպով սկսած եւ յունարէնի համեմատ վերջացուցած է: Այսպիսի խառնաշփոթութիւն կը տիրէ նաեւ 20—22 համարներու մէջ: — Գ, 21 “Եւ անդ էր ողորմ| տեսիլ տեսանել, զի առ հասարակ անկեալ մարդկան զաղաւթս թաւալելով յերկինս մատուցանել„. փոխ. մատուցանէին: Նորայր խօսած է այս մասին Կորիւն, 206—209, ուր նման օրինակներ կու տայ դասական ուրիշ հեղինակներէ: Նա կը միտի Բագրատունւոյ կարծիքին (Քեր. 477), որուն համեմատ “կարելի է փոխադրութիւն համարել„: Չեմ հաւնար զայս: Այտընեանի մեկնութիւնը սովորաբար ընդունուած է եւրոպացի քերականներէ լատին եւ յոյն նման զարտուղութեանց նկատմամբ, որոնցմէ մեր հեղինակն ալ ունի (Hendyadis): — Ժ, 2 “Եւ զբագինսն, որ ի մէջ քաղաքին էին, որ յայլազգեաց արարեալ էր„. Մերձաւոր ‘քաղաք,էն շփոթելով եզակի կը դնէ յարաբերական եւ բայ, սակայն հեղինակի համեմատ չէ թէ քաղաքը, այլ բագինները “յայլազգեացն արարեալ էին„: — ԺԲ, 13 “Զքաղաք մի... եւ զայն պատեալ պաշարեալ պահէին„: Անշուշտ ուշադիր չէ եղած որ ‘զքաղաք մի, ըսածէր վերը

իբր սեռի խնդիր վերջադիր բային, որով աւելորդ կ'ըլլար “եւ պայն„։ Եթէ պարզ “քաղաք մի„ ըսած ըլլար իբր բացայայտիչ նախընթաց “ի կողմն մի„ անորոշ ասութեան, “եւ զայն„ հարկաւոր կը դառնար։ Այսպէս ենթադրած է Նա։

Ասոնք են մեր նկատած լեզուական պայմանները Մակաբայեցւոց Բ. գրքին։ Օրինակները չուզեցինք երկարաձգել մանաւանդ որ շատ բան արդէն ուսումնասիրութեանս ընթացքին զանազան առիթներով ի վեր հանեցինք եւ ուղղեցինք։ Գրչագրական վրիպակներ, ցորչափ որ մենք կրցած էինք որոշել, նոյն կերպով գտած են իրենց լուծումը։ Աւելի մանր ուղղելիքներ՝ բնագրին քննական հրատարակութեան մէջ կը գտնեն իրենց պատշաճագոյն տեղը։

Լեզուի խնդրոյն հետ կապուած է հարկաւ Բ. Մակաբայեցւոց ընծայած բառամթերքը։ Այս պահանջին ալ սակայն ըստ կարի գոհացում տուած ենք այլ եւ այլ տեղեր։ Եւ արդէն մեր գիրքը ոչ այնքան նոր բառեր կը ներկայացնէ, որքան ծանօթ բառերու եզական, ինքնուրոյն առումներ, զորոնք յունարէն բնագրով ու ուրիշ թարգմանիչներով ջանացինք ճշդել։



# ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹԻՒՆ

*(Բացի § 1 յիշուածներէ եւ հայերէն հանրածանօթ գրուածներէ։)*


1. **A b e g h i a n A.**: Vorfragen zur Entstehungsgeschichte der altarm. Bibelübersetzungen, Marburg i. H. 1906.
2. **B r ü l l N.**: Das Sendschreiben der Palästinenser an die Alexandriner, ի Jahrb. f. Judengesch. VIII (1887).
3. **B ü c h l e r A.**: Das Sendschreiben der Jerusalemer an die Juden in Ägypten, ի Monatsschrift für Geschichte und Wissenschaft des Judentums 1897, 529—554.
4. **C e r i a n i A. M.**: Translatio syra Peschitto Veteris Testamenti, Mediolani 1876—1883.
5. **C i g o i A.**: Historisch-chronologische Schwierigkeiten im 2. Makkabäerbuche, Klagenfurt-Rom 1856.
6. **E l h o r s t**: Die beiden Makkabäerbücher, ի Vierteljahrsschrift für Bibelkunde, 1905, էջ 367 յջ.։
7. **E w a l d H.**: Geschichte des V. J., 3 հատ., Göttingen 1852, Գ. տպ., Գ., 372—422.
8. **F i e l d Fr. A. M.**: Originis Hexaplarum quae supersunt, Հատ. I, Oxonii MDCCCLXXV.
9. **F r i t s c h e**: Libri apocryphi V. T. Graece, Lips. 1871.

10. Geiger A.: Urschrift und Übersetzungen der Bibel, Breslau 1857.

11. Giguet P.: La Sainte Bible. Traduction de l'ancien Testament d'après les Septantes, IV, Paris 1872.

12. Grätz H.: Das Sendschreiben der Palästinenser an die ägyptisch-jüdischen Gemeinden wegen der Feier der Tempelweihe, ի Monatsschrift für Gesch. und Wiss. des Judentums 1877, 1—16, 49—60.

13. Grimm C. L. W.: Kurzgefasstes Handbuch zu den Apokryphen des Alten Testamentes, Leipzig 1853.

14. Herkenne H.: Die Briefe zu Beginn des 2. Makkabäerbuches, Freiburg 1904.

15. Herzfeld L.: Gesch. d. V. J., I, Nordhausen 1855, 443—456, II, 219—296.

16. Kasten E.: Der historische Wert des 2. Buches der Makkabäer, Stolp 1879.

17. Kaulen Fr.: Einleitung in die heiligen Schriften des Alten und des Neuen Testamentes, Freiburg 1872.

18. Kautsch E.: Die Apokryphen und Pseudoepigraphen des Alten Testamentes, I, Tübingen 1900, 81—119.

19. Keil C. Fr.: Kommentar über die Bücher der Makkabäer, Leipzig 1875.

20. Kittel Rud.: Gesch. d. V. J.[2], Gotta 1909/12, 1, 2 Հտր.։

21. Knabenbauer J.: Comm. in duos ll. Machabaeorum, Parisiis 1907.

22. Kosters H.: Die polemik van het tweede boek der Makkabëen, ի Theologische Tijdschrift, 1878, 491.

23. **Laqueur R.**: Kritische Untersuchungen zum 2. Makkabäerbuche, 1904.

24. **Niese**: Kritik der beiden Makkabäerbücher, Berlin 1900.

25. **Risberg Dr. B.**: Textkritische und exegetische Anmerkungen zu den Makkabäerbüchern, ի Beiträge zur Religionswissenschaft, Stockholm, II, 1914/15, 6—35.

26. **Schlatter**: Jason von Cyrene, 1891.

27. **Schnedermann**: Über das Judentum der beiden ersten Makkabäerbücher, ի Zeitschrift f. kirchl. Wiss. und kirchl. Leben, 1884, 78 յլ.։

28. **Scholz J. M.**: Einleitung in die heiligen Schriften des Alten und Neuen Testamentes, Köln 1845—1848.

29. **Schürer E.**: Gesch. d. jüd. V.[3], Leipzig 1898, I, 179—221, III, 359—364.

30. **Sluys M.**: De Maccab. libris I et II quaestiones, 1904.

31. **Steuernagel C.**: Lehrbuch d. Einl. in das A. T., Tübingen 1912.

32. **Unger F.**: Die Seleucidenära der Makkabäerbücher, ի Sitzungsber. d. Bayr. Ak. d. Wiss. philos.-philol. Kl., 1895, 236—316.

33. **Vigouroux F.**: Dictionnaire de la Bible, I.

34. **Weber S.**: Zur Geltung der Heiligen Schrift bei den alten Armeniern, Tübingen 1806, 463—489, Թրգմ. ՀԱ. ԺԱ, 129։

35. **Wellhausen**: Über den geschichtlichen Wert des 2. Makkabäerbuches im Verhältnis zum ersten, ի Nachr. d. G. G. W., phil.-hist. Kl. 1905, 117 յլ.։

---

# ԲԱՌԱՑԱՆԿ